# ՇԲԻՑՊԵՐԿԻ

## ՆԱԽԱԿՐԹԵԱԼՆԵՐԸ

ԿԱՄ

## ԱՍՏՈՒԾՈՅ ՎԱՍՏԱՀԵԼՈՒՆ

## ՈՒ ԳՈՐԾՈՒՆԵԱՅ ԿԵՆԱՑ ՕԳՈՒՏԸ

248 p.



ՎԻԷՆՆԱ

ՊԱՇՏՊԱՆ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՎԱՆՔԸ

1854. ՌՅԳ.

# ՇՐԻՑՊԵՐԿԻ

# ՆԱՒԱԿՈԾԵԱԼՆԵՐԸ

---

## ԳԼՈՒԽ Ա.

Գէորգ Օշարով, էր Ալեքսի որդին ու Իվանի եղբօրորդին։

ՄԱՐԴ ռուսական Եւրոպայի տախտակին առջեւը բացած ատեն, դէպ ի Հիւսիսային արեւելեան կողմը կը գտնէ Արխանկէլ գաւառը, որն որ Ճերմակ ու Հիւսիսային ծովով սահմանաւորած է։ Այս գաւառին դիրքն իսկ կը ցուցընէ որ Եւրոպայի ամենացուրտ երկիրներէն մէկն է եւ գետինը քիչ բերրի։ Հոն ձմեռն երկայն ու խիստ է, ամենէն կարճ օրերը՝ միայն երեք ժամ են, որոնց կը յաջորդեն մութ գիշերներ, եւ հազիւ Մայիս ամսոյն մէջ գետերը կ'ազատին զիրենք Սեպտեմբեր ամսէն վեր ծածկող սառոյցներէն։

Առանց այն պատուական արագոտն եղջերուին օգնականութեան, զորն որ Նախախնամութիւնը նոյն կողմերուն պարգեւած է, բնակիչներն այնպիսի երկայն ձմեռուան ատեն հազիւ քիչ մ'ուտելու-բան կը գտնէին։ Իսկ իրենց վայելած կարճ ամառուան ատեն բռնած ձկերնին ու վայրենի կենդանիներուն մուշտակին վաճառ-

ւականութիւնը՝ երկրին ամենամեծ օգնութիւններն են։ Արդ այնպիսի անյաջող պարագաներով զարմանալի բան չէ որ աս շուրջ 16,226 քառակուսի մղոն երկրին բնակիչները՝ 260,000 հոգիէն աւելի չեն, որոնց մէջ 3000 ընտանեաց չափ Լատինացի ու Սամոյէտ կը գտնուին։

Գաւառին գլխաւոր տեղը՝ որն որ նոյնպէս Արխանկէլ կամ Սուրբ Միքայէլ կ'անուանուի, Տվինայի գետին վրայ՝ ցած ու ճախնային տեղ մը շինուած է, եւ բնակիչները 15,000 հոգի կը սեպուին. բոլոր քաղաքը փայտէ շինուած է։ Աս քաղաքը Սիպերիայի հետ եղած մեծ վաճառականութեան մթերանոց մըն է. իր նաւահանգիստը, որն որ Ռուսիայի ծովական զօրութեան երկրորդ կայարանն է, շատ հոլանտացի, անգղիացի ու գերմանացի նաւեր կու գան, մուշտակի, մետաղաց ու նաւափայտի առուտուր ընելու համար. Շբիցպէրկ ու Նոր-Զեմլա կիտորսութեան գացող նաւերը հոս խարիսխ կը նետեն, Հոս նաւու պատերազմի ու վաճառականութեան նաւերու շինութեան ու հանդերձանաց ատաղձարան մըն է։ Աս պարագաները մէկտեղ գալով՝ պատճառ եղած են ան աստիճանի անբեր երկրի մէջ ասանկ քաղաք մը շինուելուն, որուն բնակիչները, մինչեւ իրենց կերակրոյն ծառայած ցորենն օտար երկրէ բերել տալով ալ, մեծ հարըստութիւն ստացած են։

Քաղաքացուն տարիէ մը, բարի ու աստուածավախ վաճառական մը կ'ապրէր նոյն քաղաքին մէջ, որն որ ամենուն առջեւը մեծ համարում ստացած եւ ընդարձակ վաճառականութեան մէջ իր խոհեմութեանը ու արդարասիրութեանը մեծ ստացուածոց տէր եղած էր։ Անիկա Գէորգ Օղարով կ'անուանուէր, եւ Ալեքսի անուանով միակ որդի մ'ունէր, որն որ իր բոլոր միխիթարութիւնն ու յոյսն էր։ Նոյն երիտասարդը՝ բարձրահասակ ու փայլուն կերպարանքէր, զօրաւոր ալ կազմած մ'ունէր, որն որ նաեւ ծնողացն իրեն տուած այլական եւ իր ծննդեան տեղւոյն օդաբաժնին խառնութեան համաձայն կրթութեանքն աւելի զօրացած էր։

Հօրն իրեն սորվեցուցած ուսմանց մէջ նաեւ վաճառականի մը հարկաւոր գիտութիւնք ալ կային. վասն զի թէպէտ ինք հարուստ ըլլալով, կրնար իր որդին՝ եթէ աւելի պատուաւոր չէ նէ, գէթ ուամկաց առջեւ աւելի բարձր վիճակի մէջ դնել, բայց իմաստութեամբ ուզեց որ իր որդին՝ վաճառականութեան մէջ իրեն յաջորդէ, նոյնին յառաջ տանի ու աւելի ընդարձակէ, ինչպէս ինքն ալ իր հօրմէն առած վաճառականութեան տունը մեծցուցած ու յառաջ տարած էր։ Աս բարի հայրը տղան Աստուծոյ երկիւղին, մերձաւորաց սիրոյն եւ երկրին օրինաց յարգութեան մէջ աղէկ կրթելու մեծ փոյթ տարած էր։

Ալեքսի շուտով իր հայրենի տան մէջ ընկեր մ'ունեցաւ : Օղարօվ փոքր եղբայր մ'ունէր, որն որ Իվան անուանով անչափահաս տղայի մը թողլով՝ վախճանեցաւ : Ասոր մահէն՝ անով աւելի ցաւալի եղաւ, որ խեղճ տղան քիչ մը յառաջ մայրն ալ կորսնցուցած էր :

Օղարօվ եղբօրը վրայ ունեցած սէրն անոր տղուն անցուց : Անոր բարերարն ըլլալ ուզելով՝ իր տունն առաւ, որպէս զի Ալեքսիին հետ մէկտեղ մեծցընէ : Աս բարերարութիւնը չէ թէ եղբօրորդիէն երախտագիտութիւն մ'ընդունելու համար էր, այլ պարզապէս բարեպաշտութեան գործք մ'ընելու եւ Աստուծոյ մեզի մասնաւորաբար այրեաց ու որբոց հոգ տանելու տուած հրամանին համար :

Իվան բարի ու մշտազուարթ պատանի մըն էր, եռանդեամբ ինք զինքն աշխատութեան տալով եւ նոյնը փութով կատարող ու լմնցընող. իր ամէն գործոցը մէջ ալ այնպիսի ճարտարութիւն կը ցուցընէր, որ իր հասակին նայելով՝ չէր յուսացուեր : Բայց մէյ մ'որ գործքը լմնցընելու ըլլար, ալ բան մը չէր կրնար զինքը հանդարտ ու հաստատուն բռնել. մտացը մէջ ամենեւին տպաւորութիւն մը տեւական չէր, եւ ամէնէն ցաւալի դիպուածն ալ իր մտքէն շուտով անհետ կ'ըլլար կը կորսուէր : Ընդունած յանդիմանութիւնները զինքը շատ անգամ մինչեւ յարտա-

տուս կը շարժէին, որովհետեւ բուն ի ներքուստ բարի էր եւ մտադրութեամբ ու խորհրդածութեամբ չարութիւն մը չէր ըներ. բայց այն յանդիմանութեան տպաւորութիւնը՝ շուտով մը աներեւոյթ կ'ըլլար. անանկ որ թեթեւամիտ քիչ մը եռաքը նորէն այնպիսի գործքեր կը գործէր, տուանց մտածելու թէ ուրիշներուն եւ թէ իրեն համար գալու դժբախտ հետեւութիւնները: Իր վառվռուն բնութիւնը զինքը անխորհրդածեալ ձեռնարկութեանց մէջ կը ձգէր, որոնք իրեն շատ անգամ մեծ տրտմութեան առիթ կ'ըլլային. բայց տար հետքն ալ՝ ծնողքէն ընդունած յանդիմանութեանց համար ունեցած ցաւէն աւելի չէին տեւեր: Բայց սա ալ ստոյգ է՝ որ իր զուարթութիւնն ու վառվռունութիւնը պատճառ կ'ըլլար որ ծնողքն ու ծանօթք իրեն դիւրաւ կը ներէին: Արդտօրով իր բնութեան մէջ եղած թեթեւամտութիւնն երթալով անհետացաւ եւ զԱլբերտ ալ իր եռանդէն ձգեց:

Ընթերցողք պատմութեան ընթացքին մէջ պիտի տեսնեն թէ սա թեթեւամտութիւնը եւ անոր հետեւութիւնն եղող անհնազանդութիւնը՝ ինչ դժբախտութեան անդունդի մէջ գահավէժ ձգեցին սա երկու երիտասարդները:

Ինչպէս տեսանք, Օղարով որոշած էր որ իր որդին վաճառական ընէ, եւ անոր տուած կրթութիւնն ալ նպատակին կ'ուղ-

ղէր ։ Իվան ալ նոյն կերպով կը կրթուէր ․ բայց ինք նաւահանգիստը հօրեղբօրը գրատնէն աւելի կը սիրէր ․ նաւավարաց հետ խօսակցիլն իր ամենամեծ զուարճութիւնն էր ․ անոնց երկայն ու վտանգաւոր ճամբորդութեան պատմութիւնը, անցած ծովերուն, գացած տեղերուն եւ գլուխնին եկած վտանգներուն նկարագրութիւնը՝ մեծ մտադրութեամբ մտիկ կ'ընէր ։ Շատ անգամ նաւերու մէջ կը մտնէր եւ անոնց ամէն կողմերը մանրամասն մեկնել կու տար ․ նաւաստեաց, նաւապետին եւ անոր տեղակալին ու ղեկավարին պարտքերը մէկիկ մէկիկ կը հարցընէր կը սորվէր, եւ երկայն ճամբորդութիւններ ընելու բաղձանքը կը յայտնէր ։ Աս թեթեւամիտը կը ջանար իր ծովային ճանապարհորդութեան բաղձանքը Ալեքսիին ալ հաղորդելու ․ օտար երկիրներու բարուց ու սովորութեանց եւ նաւարկութենէ յառաջ եկած օգուտներուն վրայ· յաճախ հետը կը խօսէր ․ այնպէս որ Ալեքսի կամաց կամաց կորսընցուց իր հօրը վաճառականութիւնը յառաջ տանելու բաղձանքը եւ իր բախտախնդիր հօրեղբօրորդւոյն երեւակայութեան մէջ ծնած գաղափարներուն տուաւ ինք զինքը ։ Այսպէս մեծ ազդեցութիւն կ'ընէ երիտասարդաց վրայ օրինակը ․ ամէն բանին՝ միայն աղէկ երեւցած կողմը կը տեսնեն, եւ անոնց վտանգները կամ դժուարութիւնները մտածելու՝ մէկէն կը բորբոքին, մինչեւ որ փորձառու-

թիւնն իրենց աչքը կը բանայ եւ իմաստուն անձանց խորհրդեան չգտնալնուն համար սրտերնուն մէջ ցաւ կը պատճառէ. բայց ան ատեն հասարակօրէն ալ մտածելու ժամանակին անցած ու չարիքն անդարմանելի կ՚ըլլայ։

Օգտակար շուտով հասկըցաւ իր որդւոյն վաճառականութեան սէր չունենալը. եւ ուզեց իմանալ որ ինչ վիճակի կը բաղձայ։ Որովհետեւ Ալեքսի հօրմէն ամենեւին բան մը ծածուկ չէր պահեր, իր սրտին անոր բացաւ ու խոստովանեցաւ որ երկայն ճամբորդութիւններ ընելու եւ հեռու տեղեր պտըտելու համար նաւարկութեան գիտութիւն սորվիլն իր միակ բաղձանքն է։ Հայրն ալ յայտարարութեան վրայ խիստ զարմացաւ. բայց խոհեմութեամբ զգուշացաւ իր որդւոյն կամացը մէկէն դէմ կենալէն։ Միայն անոր առջեւը դրաւ այն անթիւ վտանգները՝ որոնց մէջ կ՚իյնար, մէկիկ մէկիկ նկարագրեց այն ազնուական բայց վտանգալից վիճակին հետ միացած դժուարութիւնները. ատոնց դիմացը ցուցուց իր պապերուն եւ իր հանդարտ ու շահաւոր վիճակն ալ, ուր պատուաւոր ու դիւրին կերպով իրենց քաղաքակցաց համարումն ու մեծ հարստութիւն ստացած էին։

Եթէ Ալեքսիին մայրը կենդանի ըլլար, ստուգիւ պատանին անոր քաղցր ազդարարութեանց դէմ չէր կենար. որովհետեւ բարի որդւոյ մը վրայ մօր ազդեցութիւնը շատ

զօրաւոր է։ Բայց իր հօրեղբօրորդւոյն իրենց տունը գալէն քիչ մը ետքը՝ Ալեքսի գժբախտութեամբ իր մայրը կորսնցուցած էր. ուստի եւ Իվանին գգուութեամբն երկայն ժամանակէ վեր նաւուղղութիւն սորվելու առաջադրութիւնը մտքին մէջ հաստատած ըլլալով, իր հօրն ազգարարութիւններուն խուլ եղաւ։ Անոր համար Օգարով առիթուեցաւ զիրենք Պետրոբուրգի նաւուղղութեան դպրոցը դնելու։

Նոյն հոյակապ ուսումնարանը Ռուս պատանիները նաւական գիտութեան ամէն ճիւղերուն մէջ մեծ փութով կը կրթուին. անկէ զատ՝ նաեւ ուսումնական ու քաղաքական աշխարհագրութիւն, ուսողութիւն, ստորագրաչափութիւն ու նաւական ճարտարապետութիւն ալ կը սորվին. հոն նաեւ մեքենականութիւն, բնապատմութիւն եւ օտար լեզուներ ալ կը սորվեցընեն։ Օգարով մտածեց որ աս զանազան գիտութիւններն իր որդւոյն շատ օգտակար կրնան ըլլալ՝ նաեւ անիկայ իր միտքը փոխելու ալ ըլլայ. մանաւանդ, որովհետեւ մէկ հատիկ որդւոյն հետ իրենց հայրենի տան մէջ հասարակօրէն մեծ ներողամտութեամբ կը վարուէր, անոր համար ալ կողմանէ ալ մտածեց որ Ալեքսիին շատ օգուտ կրնայ ընել քիչ մը ժամանակ օտարականներու հոգացողութեան տակ կըրթուիլ եւ ուրիշներու հետ ապրիլ, ուր որ ուրիշները մեծարելու, իր պիտոյքն ան-

ձամբ հօգալու եւ իր ընթացքին վրայ մտադրութեամբ հսկելու հարկաւորութիւնը՝ անոր հաստատուն կրթութիւն մը կրնային տալ։

## ԳԼՈՒԽ Բ.

Երկու հօրեղբօրորդւոց մայրաքաղաքը կերթան ժամանակը։

ՕՁԱՐՈՎ երկու երիտասարդներն առաւ անձամբ Պետրոբուրգ տարաւ։ Անիկա իրենց առաջին մեծկակ ճամբորդութիւններ, որմէ զգացած հաճութիւններին՝ իրենց աշխարհք պտըտելու ցանկութիւնն աւելի եւս բորբոքեց։

Մայրաքաղաքն անոնց առջեւն այնչափ հետաքրքրական տեսարաններ բացաւ՝ որ ապշելէն ուրիշ բան չէին կրնար ընել։ Նոյն քաղաքը ԺԸ. դարուն սկիզբը Մեծին Պետրոսի ձեռքովը շինուած է Նեւայի եզերքը։ Աս գետին վրայ մինչեւ կայսերական պալատին առջեւը կը յառաջանան վաճառականութեան համար եկող անթիւ նաւերը։ Քաղքին մէջ շատ ջրանցքներ բացուած են, որոնց վրայ միշտ բազմութիւն նաւակներ կը պտըտին։ Այս ամենայն եւ մանաւանդ քարէ, աղիւսէ ու նաեւ մարմարէ շինուած անհամար մեծամեծ պալատները շատ զարմացուցին մեր երիտասարդները՝ որոնք իրենց քաղքին աղքատին փայտէ տներէն զատ շէնք չէին տեսած։

Օղարդէն առաջնորդութեամբը՝ քաղ-
քին հետաքըքրական տեղերը մէկիկ մէկիկ
պտըտեցան, ամենէն յառաջ՝ ծովապետու-
թեան հոյակապ պալատէն սկսելով, որուն
ոսկեզօծ սրածայր գագաթը մայրաքաղ-
քին ամէն կողմէն կ'երեւայ, որուն ընդար-
ձակ մթերանոցներն ու գեղեցիկ նաւարան-
ները՝ ուսկից որ գրեթէ · կայսեր պատու-
հաններուն առջեւը նաւերը ծով կ'իջեցը-
նեն, ամենուն զարմանքը կը պատճառեն։
Անկէ ետքը կարգաւ տեսան Հռոմայի Ս.
Պետրոսի եկեղեցւոյն ձեւովը շինուած Գա-
զանի եկեղեցին. Միխայլովեանի պալատը,
որն որ Կատարինա կայսրուհւոյն սիրական
բնակութիւնն էր, եւ որուն մէկ սենեկին
մէջ իրենց ցուցուցին ծանրագին ադամանդ-
ներու հաւաքումը եւ ի մէջ այլոց՝ աղաւ-
նւոյ հաւկըթի մեծութեամբ ադամանդ մը,
կայսերական թագն ու գաւազանը։ Նոյն
պալատին ուրիշ մէկ կողմը շքեղ դրամոց
հաւաքումն ու կայսեր անձնական գրքա-
տունը տեսան։ Ետքէն ամարուան փառաւոր
պարտէզը գացին, որուն միայն վանդակը
սքանչելի վարպետական գործուածք մըն է։
Տեսան Սահակայ եկեղեցին իր 52 ոտնա-
չափ բարձր եւ չորս ու կէս ոտնաչափ տրա-
մագծով մէկ կտոր կրանիդէ շինուած սիւ-
ներովը, եւ Պետրոս Մեծին պղնձէ արձա-
նը՝ որուն պատուանդանն ահագին ժայռի
զանգուած մըն է։ Պտըտեցան նաեւ Կոս-
դինօփոմոր ըսուած երկու դարիկանով մեծ

շուկան կամ վաճառատունը, որուն մէջ ամէն մէկ ճամբան իր սեպհական վաճառականութեան առարկաներն ունի: Տեսան նաեւ արծըթէ, ոսկիէ ու թղթէ դրամ շինելու ամրոցը: Ս. Պետրոսի եւ Ս. Պօղոսի եկեղեցին՝ որուն մէջ Մեծին Պետրոսի ու Կատարինայի փառաւոր շիրիմները կան եւ որուն մէջ պահուած են նաեւ Ռուսաց իրենց թշնամիներէն առած ան զինուորական յաղթանակները՝ որոնց որ Գազանի եկեղեցւոյն մէջ տեղ մնացած չէ:

Ամրոցէն ելլելով՝ Նաւով ամառուան պտըտիլին ըստ ամենայնի դիմացը, Նեւայի աջ եզերքը գացին, ուր որ մարդու հասակի բարձրութեամբ պատով մը շրջապատած փայտէ տնակ մը տեսան՝ աղքատ գեղացւոց խրճիթի նման, զոր որ 1703ին Պետրոս Մեծ ինք անձամբ շինեց, երբ որ այսօրուան ձմերուան հոյակապ պալատին տեղն՝ անբեր ու ճախճախուտ երկիր մըն էր: Մեծն Պետրոս նոյն տեղէն իր նոր քաղքին շինութեան հոգ կը տանէր. նոյն տան դաւթին մէջ՝ նաւակ մ՚ալ կայ, զոր որ մեծ ինքնակալն իր ձեռօք շինած է: Ասկէ ետքը ակըմբանոցը, ծերակուտի պալատն ու կայսերական անձնապահաց զօրանոցը պտըտելէն ետեւ, Անգղիական կոչուած շքեղ գետեզերքէն անցնելով, որն որ հին Հռոմայ արժանի գործուածք մըն է, դիտութեանց ու արուեստից ճեմարանը գացին, ուր ամբողջ օր մը հաղիւ բաւեց

բնապատմութեան ու արուեստից Թանգարաններուն մէջ եղած անբաւ գանձերը վեր ի վերոյ մը տեսնելու։ Այս ամենայն զբանչելիք մեր երիտասարդներն այնպէս ապշեցուցին, որ իրենց ծննդեան տեղը շուտով մոռնալով, իրենց հասակին բնական թեթեւութեամբն ու անհոգութեամբն՝ ուրիշ բան չէին մտածեր, բայց եթէ իրենց աչքին տակ ունեցած զբանչելիքներով զմայլիլ։

Բայց աս ամենայն ուրախութիւնը շուտ տրտմութեան փոխուեցաւ, երբ որ Ալեքսի ու Իվան Նաւական դպրոցը մտնելէն ետեւ՝ Օզարով ուզեց իրենց հրաժարական ողջոյն տալով, ճամբայ ելլել իր տեղը դառնալու։ Իրենցմէ չբաժնուած՝ հոգած հայրը զիրենք սրտաշարժ խօսքերով յորդորեց իրենց պարտքերը ճշդիւ կատարելու, եւ մասնաւորապէս յանձնեց անոնց Աստուծոյ երկիւղն ու աստուածպաշտութիւնը։ Իմաստութեան սկիզբըն՝ Աստուծոյ երկիւղն է, ըսաւ. հոս ձեր մեծ փութով սորվելու ամէն գիտութիւններն ալ՝ ձեր կրօնի ու բարոյականի մէջ ըրած յառաջադիմութեամբն արժէք կրնան ունենալ։ Իմաստութիւնն անարատ հոգիներու մէջ կը բնակի, եւ ան ատեն միայն ճշմարիտ գիտուն կրնաք սեպուիլ, երբ որ ձեր գործոց հիմունքն աստուածպաշտութիւնն ու առաքինութիւնը կ'ըլլան։ Ճարտարութիւնն ու գիտութիւնն օգուտ մը չեն ունենար,

թէ որ Աստուծոյ երկիւղն ու իր օրինաց սէրն անոնց հետ միանալու չըլլան. գիտութիւնն ու ճարտարութիւնը՝ նոյն երկու առաքինութիւններէն բաժնուելու որ ըլլան, աւելի վնասակար կ'ըլլան՝ քան թէ օգտակար. եւ կը նմանին տղու մը ձեռք տրուած սուր դանակին։ Հսկեցէք ուրեմն ձեր մտաց ու գործոց վրայ, որպէս զի ձեր սրտին մաքրութիւնը պահէք։ ԶԱստուած միշտ ձեր աչքին առջեւն ունեցէք եւ իր պատուիրանները զգուշութեամբ պահեցէք. ան ատեն իր օրհնութիւնն ալ ձեր վրայ կ'իջնայ։

Աս խօսքերը լսած ժամանակնին՝ երիտասարդներն առատ արցունք կը թափէին. մեծ յարգութեամբ իրենց հօրն օրհնութիւնն առին, եւ խօսք տուին որ անոր իմաստուն ազդարարութիւնները միշտ իրենց մտքին մէջ պահեն։

Օղարով առանձինն զԻվան խրատեց որ իր բնական թեթեւամտութիւնը սանձէ եւ միայն օգտակար բաներու զբաղի, որպէս զի չիյնայ այնպիսի յանցանքներու մէջ՝ որոնք զինքը կրնային ի կորուստ տանել։ Յանձնեց նաեւ որ միշտ փոխադարձ իրարու օգնեն։ Ետքէն սիրուն ելած՝ զիրենք Աստուծոյ հովանաւորութեան յանձնելով բաժնուեցաւ։

Իվան բոլորովին անձնատուր եղաւ իրեն սիրելի վիճակին վերաբերեալ գիտութեանց. թէպէտ ընթացքին մէջ փոյթը քիչ մը

պաղեցաւ, ինչպէս որ իրեն պէս Թեթեւամիտ տղոց սովորաբար կը հանդիպի, ի վերայ այսր ամենայնի իր սքանչելի հանճարովը՝ միշտ կը գերազանցէր իր աշակերտակիցները, որոնք զինքն իր աղէկ բնաւորութիւններուն համար շատ կը սիրէին։ Թեթեւամտութիւնն ու տաքգլխութիւնն իր գլուխը շատ բաներ կը բանային. բայց ընկերները շուտով իրեն կը ներէին, եւ նոյն իսկ վարպետներն ալ զինքը խստիւ չէին պատժեր, որովհետեւ ըրածները չէ Թէ չարութեան, հապա Թեթեւամտութեան գործքեր էին եւ ուրիշ ամէն կողմանէ սքանչելի աշակերտ մըն էր։ Ասանկով Իվան շատ գոհ էր նոյն դպրոցին մէջ ըլլալուն վրայ, ուր որ մեծ հաճութեամբ կ՚անցընէր ժամանակն իր ընկերակիցներուն հետ, որոնք ամէնն ալ իրեն բարեկամ էին։

Ստոյգ է Ալեքսին յառաջադիմութիւնն իր հօրեղբօրորդւոյն յառաջադիմութեան չափ չէր, բայց որովհետեւ խիստ աշխատասէր էր եւ ազնուական բնութիւն ունէր, անոր համար ինքն ալ ընդհանրապէս ամենուն սիրելի եղաւ։ Երեւելի տաղանդ եւ մնայուն աշխուժութիւն ունեցող մարդիկ հասարակօրէն իրենց հաւասարակիցներուն վրայ մեծ ազդեցութիւն կ՚ընեն, մանաւանդ տղոց մէջ, որոնք դիւրաւ ուրիշին կը հետեւին։ Ասանկով Ալեքսի ալ շատ մը սկսաւ բոլորովին իր հօրեղբօրորդւոյն հետեւիլ.

ակամայ եւ դրեթէ առանց իմանալու՝ Իվանին կամքն իր կամքը կ'ըլլար, եւ միշտ անոր կամքը կ'առաջնորդուէր: Թէպէտ Իվան բնութեամբ բարի ըլլալով՝ Ալեքսիին վրայ ստացած իշխանութիւնը գէշի երբեք չէր գործածեր, բայց իր թեթեւամտութիւնը՝ հօրեղբօրորդւոյն համար առանց վնասակար հետեւութեան չնայեց. վասն զի տա վերջինը կամաց կամաց վարժեցաւ առանց վերջը մտածելու ամէն առթի մէջ Իվանին խորհրդեան հետեւիլ: Հոս միտ դնելու է թէ ինչպէս հարկաւոր է երիտասարդի մը որ ուրիշի հետ կապուելու ատեն՝ աղէկ ընտրութիւն ընէ. որովհետեւ նոյն հասակին բնական եղած բարուց դիւրաթեքութիւնն ու նմանելու բաղձանքը զինքը մեծամեծ վտանգներու մէջ կը ձգեն՝ երբ որ յաճախ կը տեսնուի թեթեւամիտ երիտասարդներու կամ այնպիսիներու հետ՝ որոնց վրայ առաքինութեան սկզբունքն աղէկ մը հաստատուած չեն:

Ալեքսի եւ Իվան Պետերբուրգի նաւական դպրոցին մէջ երեք տարի մնալով, նաւուղղութեան մէջ բաւական ընդարձակ տեղեկութիւն ստացած էին, այնպէս որ հմուտ նաւապետի մը քով կրնային դրուիլ՝ արդէն ստացած գիտութիւննին փորձով ալ կատարելագործելու համար: Ուստի եւ դպրոցին վերատեսուչներէն պատուաւոր վկայականներ առած՝ Արխանկէլ դարձան:

Խիստ մեծ ուրախութիւն եղաւ Օգոստոսին իր բաղկաց մէջ ընդունիլը մեծցած եւ գեղեցիկ երիտասարդ եղած որդին ու եղբօրորդին, որոնց միտքն ալ զանազան օգտակար գիտութիւններով զարգացուած էր։ Երկու երիտասարդք ալ իրենց հայրը կամ հօրեղբայրն ու բարերարը տեսնելով՝ շատ ուրախացան։ Որպէս զի ուսմանց ընթացքին վերջը քննութեան պատրաստուելու համար անոնց կրած մեծ ու տաժանելի աշխատութեննէն զիրենք հանգչեցընէ, Օգոստոս քանի մը շաբաթ իրենց հանգիստ շնորհեց։

## ԳԼՈՒԽ Գ.

### Անհնազանդութիւն։

ԱՅՍ հանգստի ժամանակը Ալեքսի եւ Իվան ամէն օր քանի մը ժամ նաւահանգիստը նաւերու քով կ'անցընէին եւ միշտ մտադիր ըլլալու նոր նիւթ մը կը գտնէին։ Արխանկելի առջեւ խարիսխ նետող նաւերը, իրենց տէրանց ազգին զանազանութեան պատճառաւ, թէ՛ ներքին կարգաւորութեան, թէ՛ նաւաստեաց կառավարութեան եւ թէ՛ մէջի վաճառներուն կողմանէ իրարմէ տարբեր նորութիւն մ'ունէին։ Բայց Անգղիացւոց նաւերուն գեղեցկութիւնն ու շինուածքին հաստատութիւնը, անոնց ընթացքին արագութիւնը, ամէն կողմ տիրող կարգն ու կանոնը, նաւաստեաց ճարտարութիւնը՝ Ալեքսիին եւ

Իվանին մտադրութիւնն իրենց կը յա-փշտակէին։ Ուստի զարմանալի բան չէ որ իրենց ծովական ընթացքն անդադրական նա-ւով սկսելու բաղձանք ունեցած ըլլան։

Իվան յոյս ունէր քիչ ժամանակէ առաջ նաւու մը մէջ մտնելու, բայց մինչեւ որ ամէն բան կարգի դրուէր նէ՝ պէտք էր սպասել։ Ալէքսիին գալով՝ հայրը կ'ուզէր որ սորված ուսմունքը վաճառականութեան մէջ գործածէ. ուստի եւ սրտնեղութեամբ կը տեսնէր անոր ծովական ընթացքի մէջ մտնելու յանձնառութիւնը։ Երբեմն այն-պէս կ'երեւար որ պատանին իր հօրն ազդ-արարութիւններուն զիջանելու վրայ է. բայց Իվանին ազդեցութիւնը շուտով վրան կը հանէր։ Պատմութեանս ընթացքին մէջ կը տեսնենք որ ինչպէս աղէկ կ'ըլ-լար՝ եթէ աւելի հօրը խրատներուն հե-տեւէր, քան թեթեւամիտ եւ անզգոյշ բարեկամի մը։

Նոյն միջոցին երկու երիտասարդք ճան-չուորութիւն ըրին անգղիացի նաւապետի մը հետ, որուն նաւն Արխանկելի նաւա-հանգիստը խարիսխ նետած էր։ Աս մար-դը գրեթէ ամէն ծովերու վրայ նաւար-կած ու օգտակար գիտելիք ըրած էր։ Իր նաւն ալ չէ թէ միայն հաստատուն շի-նուած էր, այլ նաեւ բեւեռի կողմերը ճամբորդութիւն ընելու համար ամէն տե-սակ հարկաւոր պաշար ու պատրաստու-թիւն ալ ունէր։

Հիւսիսային բեւեռը շրջապատող՝ սառուցով ծածկուած ծովն ու ցամաքը դեռ խոր խաւարով ծածկուած էր։ Դեռ ճըշդիւ չէին ճանչնար, ինչպէս նաեւ հիմակ ալ տակաւին չեն ճանչնար, Ասիոյ ու Ամերիկայի Հիւսիսային ծայրը. եւ գիտնոց մէջ խնդիր էր թէ արդեօք բեւեռին քով կա՞յ մի ընդարձակ երկիր մը՝ որ արեւմտեան կողմանէ՝ Հիւսիսային Ամերիկայի, արեւելեան կողմանէ ալ Նոր-Սիպերիայի հետ միացեալ ըլլայ. չէ՞ նէ՝ Ամերիկան նոյն երկիրներէն բոլորովին զատուած է մի։ Կը կարծուէր որ Հիւսիսային ծովն երբեմն ըստ բաւականին կ'ազատի զինքը ծածկող սառոյցներէն՝ որոնք մինչեւ բեւեռ երթալու արգելք կ'ըլլան. անոր համար կը ջանային Հիւսիսային արեւմտեան դիէն՝ Ատլանդեան ծովէն Խաղաղական' ծով տանելու անցք մը գտնել, կամ աւելի աղէկ ըսելու համար՝ Ասիոյ Հիւսիսային կողման չորս կողմը Պերինկի ծովուն մէջ նաւելի ճամբայ մը գտնել։

Այս խնդիրներուն լուծումը թէ՛ գիտութեան եւ թէ՛ նաւարկութեան համար այնպէս օգտակար է, որ Անգղիոյ տէրութիւնը նոյն ճամբով Խաղաղական ծով հասնող առաջին նաւուն 20,000 փունդ ստերլին խոստացած էր, եւ 5000 ալ՝ Հիւսիսային բեւեռին հասնողին կամ անկէ ալ անդին անցնողին։ Նոյն ժամանակէն վեր՝ ամէն ազգաց նաւորդներն աս անց-

քը գտնելու փորձն ըրին. բայց ոչ ոք իր նպատակին հասաւ: Միայն վերջին փորձերէն ետ հաւանականութիւնը յառաջ կուգայ որ եթէ ան անցքն ըլլայ նէ ալ, ի վերայ այժմ ամենայնի սառուցներն անգործածելի կ'ընեն:

Արդ՝ անգղիացի նաւապետը մեծ փորձքին հրապարակէն գրգռեալ, միտքը դրած էր որ նոյն գործքը փորձէ. մեր երիտասարդներուն հետ ալ սուէտ սուէպ ատոր վրայ կը խօսակցէր: Ան մարդը քաղցր բնութիւն ունեցող, գիտուն ու փորձառու մէկն էր: Աւելի. աւելի բան հարկաւոր չէր զԱլբերտն եւ մանաւանդ զիժլան իրեն քաշելու եւ անոնց մտքին մէջ իր վրայ մեծ համարում մը տալու: Անոր համար առանք ալ միտքերնին դրին որ նոյն ճամբորդութիւնը մէկտեղ ընեն; Յարմար առիթ մը գտնելով՝ իրենց միտքը յայտնեցին նաւապետին, որն որ զիրենք յանձղակ ու իր ծովական գործողութեանց օգնելու եւ նաւական յիշատակագիրը բռնելու յարմար գտնելով. իրենց առաջարկութիւնը շատ սիրով ընդունեցաւ. մանաւանդ որ հարկաւորութեան տանէն՝ այսպիսի քաջ ու բոլորովին անձնատուր ընկերներ կ'ունենար իր իշխանութեան տակ:

Երիտասարդներուն միտքը դրածը յառաջ տանելու համար՝ միայն մէկ արգելք կար, որն որ զիրենք կը նեղէր: Օդարովին հաւանութիւնն անհրաժեշտ հարկաւոր էր.

բայց ինք նոյն ատեն իր վաճառականու-
թեան գործոցը համար երկընկէկ ճամբոր-
դութիւն մը կ'ընէր ։ Սակայն ժամանակը կը
անցնէր, ինչու որ նաւատէրը ճամբայ
ելլելու համար միայն յաջող հովի մը կը
սպասէր ։ Որովհետեւ շատ կը բաղձար մէկ-
տեղ տանիլ երկու երիտասարդները, մա-
նաւանդ զԻվան՝ որուն համարձակ, ամէն
բանի ձեռք զարնող, քաջասիրտ ու ճար-
տար բնութիւնն իրեն մեծ օգուտ կրնար
ընել, անոր համար ամենայն ինչ ի գործ
դրաւ զիրենք համոզելու որ Օզարալին պա-
տասխանին կամ դարձին չսպասեն ։ Ցե՛ռ,
անձնասիրութիւնն ու անձնական շահը՝ նոյն
իսկ զգաստ ու կրթուած մարդու մը ինչ-
չե՛ր ընել կու տայ ։ Նաւապետն ամենեւին
միջոց մը թող չտուաւ համոզելու համար ա
տղայութեան հասակէն հազիւ ելած երի-
տասարդները, որ յանցաւոր ընթացքի մը
ձեռք զարնեն, իրենց հօրը կամ իրենց բա-
րերարին կամացը դէմ գործեն ։ Ճամբոր-
դութիւնը հազիւ երեք ամիս կը քշէ, կ'ը-
սէր անոնց. սատանկ կարճ ժամանակին մէջ
չէ թէ միայն մեծ անուն կը հանէք՝ այս-
պիսի փառք բերող գործքի մը ձեռք զար-
նելնուդ համար, այն որ ստուգիւ պիտի
յաջողի, այլ նաեւ Անգղիոյ տէրութե-
նէն խոստացուած վարձքէն ալ ձեզի ա-
ռատ մաս կ'ելլէ ։ Ի՛նչ հաճութիւն կ'ու-
նենայ ան ատեն Պր. Օզարալ. նոյն ժա-
մանակուան գոհութիւնը՝ հազարապատիկ

տեղը կը մերժէ իրեն պատճառուած թե-թեւ նեղութեան։

Զիվան վատորակներու համար ատկէ աւելի բան հարկաւոր չէր. արդէն անիկա ինք զինքն որոշած էր։ Ալեքսի դեռ դէմ կը կենար. խիղճը կը վկայէր որ ատ բանը դէշ է եւ թէ առանց հօրը հրամանին այսպիսի ծանրակշիռ բանի մը ձեռք զարնելը՝ անոր սիրոյն անհամեմատ ապերախտութիւն է։ Բայց Իվանին ու Նաստասիային խօսքերն առանց դժուարութեան յաղթեցին անոր խղճին անձկութեան. իր հօրեղբօրորդւոյն ամէն թելադրութեանց անսալու անկարողութիւնն ալ աս առթին մէջ ալ վրայ եկաւ։ Ասանկով մեր երկու թեթեւամիտները կուրօրէն իրենք զիրենք օտարական բախտախնդրի մը ձեռք տուին։ Ճամբայ ելան՝ Օղարովին նամակ մը գրեցին, որուն մէջ անգղիացի նաւաստեային իրենց առջեւը դրած զանազան պատճառները մանրամասն մէջ կը բերէին։ Չկրցանք, կ՚ըսէին, մեր առաջին ընթացքը՝ Հերայի հրամանատարին պէս երեւելի մարդու մը առաջնորդութեամբ սկսելը թող տալ. թէպէտ եւ շատ կը բաղձայինք հրամանոցմէ հրաման առնել, բայց հօրը չէր ներեր։ Սակայն քիչ ժամանակէն անշուշտ ետ կը դառնանք եւ ան ատեն անձամբ թողութիւն կը խնդրենք ատ պակասութեան համար։ Այսպէս առանց հրամանի, յայտնի զրուցենք՝ իրենց հօրն ու բարերարին կամացը դէմ՝ Ճամբայ

ելան։ Աստուած տայ որ իրենց անհնազանդութեան վրայ շուտով զղջալու պատճառ չունենան։

## ԳԼՈՒԽ Դ.

### Ճամբորդութեան սկզբնաւորութիւնը։

ԽԱՐԻՍԽԸ կը վերցուի, յաջող հով մը առագաստներն ուռեցընելով՝ հանդարտութեամբ նաւը յառաջ կը մղէ։ Մեր երկու բախտախնդիրներն իրենց աչքին առջեւ միայն համատարած ծով մ'ունէին, իրենց հօրիզոնն առանց ամպի երկինք մըն էր։ Իրենց ծննդեան տեղւոյն տուած վերջին հրաժարականն առանց այլայլութեան չէր. ի վերայ այսր ամենայնի բնակութեան նորութիւնք, նաւին մէջ առջեւնին ելած զանազան առարկաները, եւ մեծ նաւարկութեան մը սկիզբը հասարակօրէն տիրող խառնակութիւնները մէկտեղ գալով, իրենց մտածմունքը կը գրաւէր եւ միտքերնին կը դարձընէր թող տուած տեղերնէն. մանաւանդ որ նոյն վայրկենէն կը սկսէին ի գործ դնել նաւական դպրոցին մէջ սորվածնին։

Նաւաստեաց խումբն երեսունուչորս զօրաւոր ու աշխոյժ անձինքներէ կը բաղկանար. կարգն ու մաքրութիւնը նաւին ամէն կողմը կը տիրէր. ամէն հրաման շուտով ու մտադրութեամբ կը կատարուէր։ Նաւապետն ալ իր անձին ամենեւին չէր խնայեր. իր

բոլոր ճարտարութիւնն ու գործունէութիւնն ի գործ կը դնէր ։ Բարեսիրտ էր, բայց միանգամայն ճիշդ ու կարգասէր. իր ստորակարգեալներուն հետ արդարութեամբ կը վարուէր. իրենց կերակուրն ու առողջութեան հարկաւոր եղածները շատ փութով կը հոգար ։ Բայց նաեւ կը պահանջէր որ անոնք ալ իրենց պարտքերն ամենայն ճշդութեամբ կատարեն, իր տեղակալէն սկսեալ՝ մինչեւ վերջին նաւավարը նոյն ճշդութեան ենթակայ էին. Եւ որովհետեւ բոլոր իր մարդիկն իր ծովական գիտութեան վրայ մեծ վստահութիւն ունէին, անոր համար ամենեւին նաեւ թեթեւ տրտունջ մ'ալ չէր լսուէր իրեն դէմ ։

Մեր երիտասարդներուն հետ քաղցրութեամբ վարուելով, իրենց ծովական կըրթութիւնը կատարելագործելու համար բան մ'ալ զանց չէր ըներ. աղէկ չհասկցածներն կը մեկնէր, զիրենք կը 'կրթէր ծովական տախտակներ գծագրելու եւ աստղաբաշխական հաշիւներ ընելու մէջ, որոնք նաւավարներու շատ հարկաւոր են, ծովական տախտակներն անոնց առջեւ բանալով՝ իր պատահած անթիւ վտանգաւոր տեղերն ու անոնցմէ ազատելու համար գործածած միջոցներն իրենց կը ցուցընէր. նաեւ նաւին ամենէն ստորին նաւավարներուն պաշտօնէն սկսեալ՝ մինչեւ նաւապետութեան գործքերը յաջորդաբար իրենց կատարել կուտար ։ Մէկ խօսքով ըսելու համար, կար-

ծես թէ անոնց կրթութեան համար ունե-ցած հոգածը՝ կ'ուզէր առանց Օգարովին հա-ւանութեան զիրենք աս ճամբորդութիւնն ընելու համոզելով գործած ու անոնց գոր-ծել տուած յանցանքին տեղը լեցնել։

Ի վերայ այսր ամենայնի երկու երիտա-սարդք աս իրենց հաճոյական վիճակին մէջ բոլորովին գոհ չէին. մանաւանդ Ալեքսի, որն որ մտածելով՝ թէ հայրն աս ճամբոր-դութեան վրայ պիտի չհաճի, շատ կը նե-ղուէր։ Ինք իրեն կ'ըսէր որ պէտք էր հօրը դարձին եւ կամ գոնէ հաւանութեան նա-մակին սպասել. իր հայրը որտանց սիրելուն համար՝ անոր անհաճոյ գործք մը գործե-լուն վրայ խիստ կը տրտմէր։ Աս կերպով սկսուած ճամբորդութիւնը, կ'ըսէր մտքին մէջ, յաջող վախճան չիկրնար ունենալ։

Աս ճշմարիտ, բայց շատ ուշ եկող խոր-հրդածութիւնն իր խղճմտանաց ձայնն էր. Նոյն անաչառ դատաւորն՝ Աստուած ի մեզ անկած է՝ ուղիղ ճամբան մեզի ցուցը-նելու համար. մարդս երբեմն խուլ կ'ըլլայ իր ազդարարութեան, բայց անկէ բոլորո-վին փախչիլն անկարելի է. Ինքն է որ մեր գործած չար գործքերը հայելւոյ մը պէս մեր առջեւը կը դնէ, ինքն է որ զմեզ կը յանդիմանէ, ի մեզ խայթ ու ամօթ կը ծնանի։ Երանի՜ անոր՝ որն որ իր խիստ, բայց բարեկամական ձայնին կը լսէ եւ նոյնը խղդելու չինայիր. այնպիսին առոյգ է՝ կրնայ յանցանք գործել, բայց զեղջն ու անով

նաեւ թողութիւնն ալ իրեն չիզլացուիր։ Արդեայ իմացուիլ որ այսպիսի խորհրդածութիւններով Ալեքսիին աս ճամբորդութենէն յուսացած զուարճութիւնները որչափ դառնութեամբ կը լեցուէին։ Ուր որ խղճմտանաց հանդարտութիւն չկայ՝ հոն ճշմարիտ հաճութիւն չիկրնար գտնուիլ։

Փիլան ալ իր կողմանէ, Օզարոսին բարութեան յիշատակը մտքէն բոլորովին հանելու չափ ապերախտ չէր. ինքն ալ Ալեքսիին ըրած յանդիմանութիւնները մտքին մէջ իրեն դէմ կ'ընէր. երբեմն նաեւ աչքէն արցունք ալ կու գար։ Բայց իր անհաստատ միտքը շուտ մ'ուրիշ բաներու կ'ուղղուէր, այնպէս՝ ինչպէս որ վայրկեան մը արեւը խաւարցընող բարակ ամպերը թեթեւ հովէ մը կը ցրուին։

Իրենք աս վիճակի մէջ եղած ատեն՝ նաւն անընդհատ ու յաջող ընթացքով յառաջ երթալով, առանց պատահարի մը Նոր-Զէմլա հասաւ։ Ան երկիրը՝ որն որ Սառուցեալ ծովուն մէջ երկու մեծ կղզիէ կը բաղկանայ, Արխանկէլի կառավարութեան տակն է, եւ 4255 քառակուսի մղոն տարածութիւն ունի. ցամաք երկրէն Վայկացի նեղուցով զատուած է, իսկ բուն կղզիք իրարմէ՝ Մաթաշնէի անուն նեղուցով։ Ռուսք նոյն անբեր ու անբնակ կղզիները միայն երկքամսեայ ամառուան ատեն կու գան, հոնկէ ճերմակ աղուէս, ճերմակ արջ, ծովու հորթ ու կարապ որսալու հա-

մար։ Երկիրը գրեթէ միշտ ձիւնով ծածկուած է, որուն տակ մնմուռ ու քիչ մ'ալ խոտ կը գտնուի։ Այս աշխարհ կողմերը՝ արեւը տարուան երեք ամիսն ամենեւին չիծագիր. եւ բոլոր նոյն ժամանակ ամէն կողմ պատող խոր մութը՝ միայն երբեմն երբեմն հիւսիսայգով քիչ մը կը փարատի։ Իսկ ամառուան օրն անոր հակառակ՝ նոյնպէս ամբողջ երեք ամիս կը տեւէ։

Մինչեւ հիմակ աս կղզեաց միայն եզերքը ծանօթ է. որովհետեւ ան գարհուրելի երկրին ներսի կողմերն երթալու ոչ ոք կը համարձակի։ Հիւսիսային կողմը լեռներով լեցուն է, իսկ հարաւայինը՝ որն որ նուազ ամայի է, ձկնաշատ գետակներ, որոց կենդանիներ ու տատա թռչուն կը մատակարարէ։

Հոս քիչ մը զԱլեքսի եւ զԻվան թողտալով, տեսնենք թէ Օղարով իրենց ճամբորդութեան վրայ ինչ կը մտածէ։ Վերը յիշուած նաւակին աւածին պէս՝ աս բարի հայրն անճապարելով Արխանկէլ դարձաւ, յուսալով որ իր խօսքերովն ու աղաչաւորութիւններովը երիտասարդաց միտքը կրնայ լուծել, մանաւանդ Ալեքսիոսը՝ զորն որ կ'ուզէր բացարձակապէս վաճառականութեան վաճակին մէջ դնել։ Իսկ Իվան, որովհետեւ շատոնցուընէ իր միտքը յայտնած էր եւ հօրեղբայրն ալ կը տեսնէր որ ծովական արուեստին անընդդիմանալի կոչում մ'ունի, չէր յուսար որ անոր միտքը կա-

ընեայ փոխել տալ եւ ինքն ալ չէր ուզեր բռնադատել կամացը դէմ ընելու. միայն կ'ուզէր գոնէ իմանալ որ ինչպիսի մարդու ձեռք կ'իյնայ։

Արնայ դիւրաւ իմացուիլ թէ տուն հասած ատեն՝ որչափ մեծ եղաւ զարմացումը, երբոր իր որդւոյն ու եղբօրորդւոյն տեղ՝ գտաւ անոնց նամակը՝ որուն մէջ իրենց ճամբայ ելլելն անոր կը յայտնէին։ Իմացաւ որ Ալեքսին գլխէ հանած էին. եւ թէպէտ Իվանին՝ իր հօրեղբօրորդւոյն վրայ ըրած բոլոր ազդեցութիւնը կը ճանչնար, սակայն եւ այնպէս զիրենք իր նաւուն վրայ առնող նաւապետին ալ աս բանիս մէջ ունեցած գործակցութիւնը մակաբերելով, անոր վրայ աղէկ համարում մը չէր կրնար ունենալ, որուն համար ալ կը վախնար որ չըլլայ թէ երկու երիտասարդք անպիտան մէկու մը ձեռք ինկած ըլլան։ Բայց չարիքն անդարմանելի էր, եւ աս խեղճ հայրն ուրիշ բան չէր կրնար ընել՝ բայց եթէ իր ամէն օրուան աղօթքին մէջ աս երկու անխորհուրդներուն համար Աստուծոյ աղաչել որ անոնց վրայ գթայ, ու Պատուեա զհայր քո եւ զմայր պատուիրանը չպահողներուն սպառնացածը՝ ամենայն խստութեամբ իրենց վրայ չկատարէ։

# ԳԼՈՒԽ Ե.

## Նախախնամութիւն ։

ՕԶԱՐՈՎ իր որդւոյն ու երկրորդականին անհնազանդութեան վրայ վշտացած ատեն՝ անոնց նաւն իր ճամբան յառաջ կը տանէր, եւ օրէ օր կը յառաջանար Ատլանտեան ծովուն մէջ, որն որ Յունիս եւ Յուլիս ամիսները նոյն անուան արժանի չէ, որովհետեւ արեւն ան ժամանակը հորիզոնին վրայէն ամենեւին չբաժնուելով՝ ջերմութիւնն անտանելի կ'ըլլայ։ Ուստի երիտասարդք՝ որոնք իրենց ուսման մէջ աս երեւութին գոյութիւնն ու պատճառն իմացած էին, անձամբ ալ տեսնելով կ'ապշէին։ Ստուգիւ գիտէին որ բեւեռի կողմերը՝ ամառնային արեւադարձին ատենը օրը երկու ամիսէն աւելի կը տեւէ, նոյնպէս ալ ձմեռնային արեւադարձին ատենը երկրիս նոյն կողմերը թանձր մութ մը կը պատէ։ Աս բանս անկէ յառաջ կու գայ որ օրուան տեւողութիւնը, ամէն մէկ տեղւոյն՝ հասարակածէն ունեցած հեռաւորութենէն կախում ունենալով, որչափ որ թէ մէկ եւ թէ մէկալ կողմանէ հասարակածէն հեռացուելու ըլլայ, այնչափ ալ ամառուան ատեն օրերն երկայն կ'ըլլան, ձմեռուան ատեն ալ՝ գիշերները. եւ աս փոփոխ երկայնութիւնն ամենէն աւելի մեծ է բեւեռի կողմը՝ որն որ ամենէն հեռաւոր ծայրն է։

Նաւապետը Արխանկելէն ելած ատեն՝

ռա կողմերուն տեղեակ նաւուղիղ մ՚առած էր ։ Նոյն մարդը փորձառու նաւավար մըն էր, որն որ իր արուեստին աւելի գործնական՝ քան թէ տեսական մասին ծանօթ էր, բայց միանգամայն երկայնժամանակեայ փորձառութեամբ շատ ճարտար էր ։ Մեր երկու երիտասարդներն անոր հետ հայրենակից ըլլալով՝ հետը շուտով կապուեցան եւ անոր հինօրեայ փորձառութենէն շատ բան շահեցան ։

Նոյն միջոցին արեւը կը սկսէր հորիզոնէն վար իջնալ ։ Նաւապետը ճանչցաւ որ ձմեռը մօտեցած ըլլալով՝ իր ճամբորդութեան նպատակին հասնիլն անկարելի էր ուստի եւ մտածեց որ կամ Արխանկէլ դառնայ եւ կամ ապահով նաւահանգիստ մը մտնէ, ուր որ իր նաւովը կարող ըլլայ ձմեռն անցընել ։ Երբոր իր միտքը յայտնեց նաւուղղին, որն որ արդէն նոյն նաւարկութիւնը շատ անգամ ըրած էր, անիկա չէ թէ միայն հաւանեցաւ, հապա նաեւ խրատ տուաւ որ առանց յապաղելու շուտով կանարէ ․ որովհետեւ ձմերուան մօտենալու ատեն նոյն կողմերը տիրող մրրիկները՝ ա՛լ երկայն ատեն չէին ուշանար ։

Թէպէտ իր խորհուրդը շուտով ի գործ դրուեցաւ, բայց իր վախցածն ալ չուշացաւ ։ Հարաւային արեւելեան կողմանէ մէկէն մրրիկ մը բրդելով նաւը միշտ դէպ ի յառաջ կը քշէր ։ Փուչ տեղ ամէն ջանքն ի գործ կը դնէին առագաստներն ամփո-

փելու. Հովը Նաւուն տուած՝ խաղալիկ մը պէս կը տանէր, կայմերուն մէկ մասն ալ կոտրեց: Նաւը երբեմն փրփրացող ալեաց վրայ յեցած՝ ահագին բարձրութեամբ վեր կ'ելլէր, երբեմն իր առջեւն ահռելի անդունդ մը կը բացուէր եւ անանկ կ'երեւար թէ նաւն իր յատակը պիտ'որ իջեցընէ: Երկինքն ամպերով ծածկուած էր, եւ թանձր խաւար մը գրեթէ բոլոր սա գազան դարձած ծովը կը պատէր: Նաւաստիք ամենայն ճիգն ի գործ կը դնէին մրրկին դէմ դնելու. բայց զուր տեղ: Հերա կայմերն ու կազմածքը կորսնցուցած ըլլալով՝ սա անծանօթ ծովուն վրայ չէր կրնար կառավարուիլ. եւ ամէն վայրկեան կրնային խութի մը կամ նոյն Հիւրաստեաց կողմերը շրջապատող սառուցէ ժայռի մը զարնուիլ: Իրենց առաջնորդելու համար աստղ մ'ալ չէր երեւար: Օրերը հազիւ երկու երեք ժամ կը տեւէին, եւ այն ժամերն ալ աղէկ գործածելն անկարելի էր, որովհետեւ հովը դարձած ըլլալով՝ մի եւ նոյն կատաղութեամբ կը փչէր. Հետը միանգամայն սառեցընող պաղ մ'ալ բերած էր, որն որ զամէնքը կը ստիպէր Նաւուն ծածկը թող տալով՝ վար իջնալու եւ անձկութեամբ սպասելու սա զարհուրելի մրրկին վախճանին:

Ալեքսի եւ Իվան Նաւուն խցին մէջ անկիւն մը նստած՝ վախէն անշարժ կը կենային, այնչափ զարհուրելի էր սա մրրիկը:

Պարապ տեղ նաւաստեաց կերպարանքէն
բան մը գուշակել կ'ուզէին, իրենց նայ-
ուածքն ի զուր անոր կը հարցընէր թէ
արդեօք ազատելու յոյս կա՞յ ։ Նաւաստեաց
լուռ ու տրտում կը կենար ։ Ամէն վայր-
կեան վտանգը կը մեծնար, եւ արդէն ե-
րեք օր էր՝ որ մրրիկը նոյն կատաղութեամբ
կը շարունակէր ։ Երկու հօրեղբօրորդիք ալ
մեծ վտանգն իրենց անհնազանդութեան
եւ Օգոստոսին պատճառած տրտմութեան
արդար պատիժը կը համարէին. զղջումը
սրտերնին մտաւ, բայց շատ ուշ էր ։
Ո՛հ, կ'ըսէր Ակերոփ, ինչո՞ւ մեր պարտ-
քը մոռցանք. առանց հօրս հրամանին ու
ճամբորդութեան ձեռք զարնելնուս համար
է՝ որ Աստուած այս վտանգին մէջ ձգեց
զմեզ, որուն մէջ դուցէ պիտի կորսուինք ։
Ո՛հ, ինչ վշտաց մէջ կ'իյնար հայրս՝ եթէ
հիմակուան մեր գտնուած վիճակը ճանչ-
նար ։ Եւ եթէ հոս կորսուելու ըլլանք, ոչ
մեր ինչ եղածը, ոչ ալ մեր զղջումը կրնայ
իմանալ ։

Իվան ալ դառն յանդիմանութիւններ
կու տար ինք իրեն. կը զգար թէ ինչ ա-
պերախտութիւն հատոյց հօրեղբօրը բարու-
թիւններուն, չէ թէ միայն առանց հրա-
մանի իրմէ բաժնուելով, այլ նաեւ գըր-
խաւորաբար անոր որդին ալ իր ետեւէն
ձգելով ։ Ինք զինքը Ակերոփին մահուան
պատճառ կը կանչէր, եւ կ'իմանար որ իր
թեթեւամիտ ընթացքովը Աստուծոյ բար-

կութիւնն իրենց դէմ գրգռեց: Նաւապետն անոնց մէջէն անցածները դիւրաւ կը գուշակէր. եւ հաւանական է որ ինքն ալ իր խղճմտանաց յանդիմանութիւնը կը կրէր:

Այս տխուր մտածմունքներէն արթընցան նաւին սաստիկ բախումքը, որով կարծեցին թէ նաւը հազար կտոր եղած է: Ամենուն երեսին գոյնը մէկէն նետեց, եւ նաւապետը պոռաց. Աստուած օգնէ մեզի. վասն զի ինք օգնութեան հասնելու որ չըլլայ՝ ամէնքս ալ կորսուած ենք: Նոյն ատեն Ալեքսիին ու Իվանին խղճի խայթը կրկնապատկեցաւ. հազիւ կը համարձակէին աստուածային ողորմութիւնը օգնութեան կանչելու: Ի վերայ այսր ամենայնի իրենց եռանդը բորբոքելով, ծնկան վրայ եկան եւ սկսան Աստուծոյ աղօթել որ իրենց ներէ, ողորմի ու սա մեծ վտանգէն ազատէ:

Նաւին մէջ խոր խաւար մը կը տիրէր. չէին կրնար ո՛չ պատուհան եւ ո՛չ թընդանօթի ծակ բանալ. ապա թէ ո՛չ նաւին վրայ յարձակող կատաղի ալիքները մուտք գտնելով՝ նաւն անմիջապէս ծովուն տակ կը սուզէին: Հովին ուժը, ալեաց մունչիւնն ու մթութեան թանձրութիւնը՝ կ'աւելցնէին նաւաստեաց սարսափը, որոնք ամէն րոպէ մահուան կը սպասէին:

Այն սաստիկ հարուածէն ետեւ՝ միօրինակ նաւին կողն ուրիշ հարուածներ կ'ընդունէր, որն որ նաւապետին մակաբերել տուաւ թէ ալիքները նաւուն դէմ ահա-

դին տառաղյններու կատրներ կը զարնէին. ա-նոր համար ալ խրատուածք կը վախնար որ չկորսուսակի։ Իր կասկածները նաւուղղին հաղորդած վայրկեանը, առաջինէն աւելի սաստիկ բախում մը երկուքին ալ հաւատարակչութիւնը կործանեցնել տալով՝ գետինը ձգեց։ Հերա ահագին բարձրութեամբ մը վեր ելլելէն ետքը՝ այնպիսի զարհուրելի շառաչմամբ մը վար ինկաւ, որ կարծես թէ բոլոր տախտակամածները քակուելու վրայ էին. ետքէն սաստիկ ցնցելով, քիչ մ'ալ դէպ ի յառաջ շարժում ըրաւ, վերջապէս անշարժ մնաց։ Իսկ մրրիկն իր զարհուրելի մռնչիւնը յառաջ կը տանէր, ալիքներն ալ ահագին մեծութեամբ սաւոյցներ նաւուն կողը կը մղէին։

Նաւապետէն ու նաւուղղէն զատ՝ ամէնքն իրենք զիրենք կորսնցուցած էին, ամէն մարդ այնպէս կը կարծէր թէ ժայռի մը զարնուած ըլլալով՝ ծովուն տակ պիտի սուզին։ Նաւապետն ալ նոյն վախն ունէր, բայց իր խոհեմութիւնն ու հանդարտութիւնը զինքը թող չտուին, եւ միտքը դրաւ որ աս յուսահատական վիճակէն ազատելու համար ամէն կարելի միջոցն ի գործ դնէ։

Նաւուղղին հետ մէկտեղ նաւուն յատակն աճապարեց, իմանալու համար թէ արդեօք նաւին ողնափայտը ճեղք մը կրա՞ծ է եւ ջուր կ'առնէ՞։ Ուրախութեամբ տեսաւ որ աս ամէն կողմերն անվնաս մնացած

էին, միանգամայն դիտելով ալ որ ալիքներուն մռնչիւնը քիչ մը նուազած է, մտածեցին որ մրրիկը քիչ մը հանդարտած է։ Անմիջապէս ծածկին վրայ ելլելով՝ տե-սան որ երկինքն աստղներով զարդարուած, մրրիկն ալ դադրած էր․ միայն ծովը դեռ անհանդարտութեան մէջ էր։

Աստղներուն լուսովը աղէկ մը դիտե-լով՝ համոզուեցան որ նաւը ժայռի զար-նուած չէ, հապա ծովուն տակէն դէպ ի վեր բարձրացած ահագին սառուցի մը վրայ խրած է։ Սառուցի մեծ կտորներ նաւը մէկ կողմանէ կը շօշափէին, իսկ մէկալ կողմը ծովը բաց էր, բայց ամէն րոպէ ա-հագին սառոյցներ կը բերէր նաւին դէմ։

Երբոր նաւապետը վար իջնալով՝ իրենց գտնուած դիրքը նաւաստիներուն իմացուց, ամէնքն ալ խոր վհատութեան մէջ ինկան, իրենց յուսահատական վիճակին իմանալով։ Սառոյցներու մէջ խարխափ նետուածի պէս կեցած նաւը՝ միշտ չորս կողմանէ աւելի եւս կը գոցուէր․ մրրիկը կայմերը կոտրած, առագաստներն ալ պատռած էր․ յառաջ երթալ կարելի չէր, եւ եթէ կարելի ալ ըլլար, շուտ մը դարձեալ սառոյցները նա-ւին բոլորտիքը պիտի պատէին։ Անկէ զատ՝ բոլորովին չբնակուելու տեղ մըն էին․ աշ-խարհագրական տախտակները կը ցուցընէին որ մօտ են Շբիցպէրկին, ուր որ նոյն եղա-նակին մէջ օրը քանի մը ժամ միայն կը տեւէ։ Պաղն երթալով կը սաստկանար։

կարծես թէ նաւաստիները յուսահատութեան մէջ ձգելու համար ամենայն ինչ կը միանար։ Ոմանք կը ցուցէին թէ ինչու նաւը ծովուն տակ թաղուած չէ, որով կանխատես եղած չարիքներնէն շուտ մահուամբ մ՚ազատած կ՚ըլլային. ուրիշներն ալ թէպէտ նոյնպէս յոյսերնին կտրած, բայց աւելի կրօնական հոգի ունենալով՝ ձեռուընին երկինք կը վերցընէին եւ Աստուծմէ քաղցրութիւն ու յուսոյ նշոյլ մ՚ընդունել կը ջանային։

Նաւապետն ալ ան վերջիններէն էր։ Թէպէտ եւ զԱլէքսի ու զիվան առանց Օգսփորդին հաւանութեան՝ իրեն հետեւելու յորդորելովը՝ խիստ գէշ գործք մը գործած էր, ի վերայ այսր ամենայնի ամէն կրօնական սկզբունքը կորսընցուցած չէր. բրած յանցանքը կը ճանչնար, բայց իր վստահութիւնն Աստուծոյ անչափ բարութեան վրայ դրած էր, որն որ չէ թէ յանցաւորին մահը՝ այլ անոր դարձը կ՚ուզէ։ Աս աստուածային ողորմութեան վրայ ունեցած վստահութիւնն իր զօրութիւնն ու քաջարութիւնը նոյնէն արծարծելով, սկսաւ հնարք մտածել որ նաւաստիներն ու զինքը նոյն զարհուրելի վիճակէն ազատէ։ Այսպէս կրօնը բարեպաշտ մարդուն՝ դժբախտութեան ատեն քաջալերութիւն կուտայ, իրեն սորվեցընելով որ մարդիկներուն բախտն Ամենակարողին ձեռքն է, թէ առանց Անոր հրամանին՝ իրենց գլխէն մազ

մ'ալ չ'իյնար, եւ թէ իրենց բոլոր վստահութիւնն Անոր վրայ դնողները ձեռքէ չի թողուր:

Ալեքսի եւ Իվան ալ՝ որոնք մանկութենէ ի վեր Աստուծոյ երկիւղին մէջ մեծցած էին, կը ջանային այսպիսի մտածմունքներով քաջալերուիլ: Նաւապետը նախ խօսքն իրենց ուղղելով, ըսաւ թէ Աստուծոյ օգնութեամբն ալ վտանգաւոր վիճակէն ազատելու համար դեռ հնարք կայ: Ասով երիտասարդներուն իրենց հասակէն վեր քաջարութիւն մը ստանալով, նաւապետն իմացուց որ հասարակաց փրկութեան համար ամէն ձեռք զարկած բանին մէջ՝ ատոնցմէ կրնայ մեծ օգնութիւն գտնել:

Իսկ նաւաստիք խոր տրտմութեան մէջ իյնալով՝ վրանին ամենեւին զօրութիւն մնացած չէր. անկից զատ՝ աշխատութենէ եւ կերակրոյ ու քնոյ պակասութենէն ալ սաստիկ տկարացած էին: Անոր համար ծովը խաղաղցած եւ նոյն ժամանակ ալ վախնալու բան մնացած չըլլալով, նաւապետն աղէկ կերակուր մ'եփել եւ ամենուն սովորականէն աւելի օղի բաժնել տալէն ետեւ, հրամայեց որ երթան հանգչին՝ մինչեւ ինք ճար մը մտածէ զիրենք ալ վտանգէն ազատելու համար:

Օրը ծագելու կը սկսէր. նաւապետը դիտակով գննեց թէ արդեօք մօտ են ան կղզիներէն մէկուն՝ զորոնք նոր ատենները իրմէ յառաջ գտած էին ալ վտանգաւոր ճամբոր-

դութեան ձեռք զարնող նաւապետները եւ հոն ամէն տեսակ աշխատութեանց ու զըրկմանց մէջ ձմեռն անցուցած էին։ Երբոր գիշերուան մթութիւնը բոլորովին ցրուեցաւ, կը կարծէր որ հեռուէն ժայռի սեպացեալ գագաթներ կը տեսնէ, զորոնք սառուցի լեռներէն որոշելը դիւրին է։ Ասով սիրտը յուսով լեցուեցաւ, եւ միտքը դրաւ որ իր նախորդացը պէս ձմեռը հոն կրնայ անցընել, որովհետեւ բոլոր բազմութիւնը ձմեռն ի բուն պահելու համար բաւական պաշար ալ ունէր։ Ուստի Աստուծոյ շնորհակալ ըլլալով՝ իր կարծիքը նաւուղղին իմացընելու աճապարեց։ Անիկայ նաւապետին իրաւունք տալով որ մօտ տեղերը հաւանականաբար կղզի կամ ցամաք երկիր մը կայ, որոշեցին որ նաւաստիներէն քանի մը հոգի խրկեն չորս կողմը դիտելու-թէ արդեօք բնակութեան հետք մը կամ ձմեռը պատսպարուելու այր մը կը գտնուի։

Նաւապետն անմիջապէս ժողվելով բոլոր բազմութիւնը, որոնք կերակրով ու քնով քիչ մը վրայ եկած էին, իրենց այսպէս խօսեցաւ. Մեր գտնուած վտանգաւոր վիճակը դուք ալ աղէկ կը ճանչնաք։ Բայց ոմանց կարծածին չափ յուսահատական վիճակի մէջ չենք։ Ես իմ ձեռքէս եկածին չափ մեր փրկութեան համար ամէն կարելի միջոցն ի գործ՝ կը դնեմ. բայց նաեւ ձեր օգնութեան ալ կարօտութիւն ունիմ, եւ ճիշդ հնազանդութիւն կը պա-

հանգչիմ։ Հոս ուրիշ բոլոր մարդկային օգնականութենէ զուրկ՝ միայն մեր զօրութեան մնացած ենք. բայց զԱմենակարողը մեզի օգնական ունինք, որն որ զմեզ թող չիտար՝ եթէ մեր բոլոր վստահութիւնն իր վրայ դնենք ու չվհատինք։ Բաւական հաստատուն պատճառ ունիմ կարծելու որ ասկէ քիչ մը հեռու՝ ձմեռն անցընելու կղզի մը կը գտնենք։ Մինչեւ ամառ ապրելու չափ նաւին մէջ բաւական ուտելիք կայ, եթէ չափաւորութեամբ վարուինք եւ հարկաւոր զրկումները կրենք։ Ձմեռն անցնելու որ ըլլայ, ասոր տեղերէն ելլելու ապահով միջոց կը գտնենք։ Հիմա բնակութեան տեղ գտնելու համար մարդ պիտի խրկեմ. եւ կը յուսամ որ մինչեւ անոնց դարձը՝ համբերութեամբ ու վստահութեամբ կը սպասէք հասարակաց փրկութեան համար ըրած փորձիս ելքին։

Նաւաստիք՝ որոնք նաւապետին վրայ մեծ վստահութիւն ունէին, որոնց հնազանդութիւն խոստացան. հոգի առին ու կը յուսային որ անիկայ զիրենք աս դըժբախտ վիճակէն կ'ազատէ։ Ալեքսի ու Իվան ալ նոյն վստահութիւնը ցուցուցին. մանաւանդ որ իրենք ուրիշներէն աւելի պատճառ մ'ունէին համբերութեան, որովհետեւ իրենց բախտն ու կեանքն Աստուծոյ ձեռքը յանձնած էին, որն որ ամէն վտանգներու մէջ մարդս կը զօրացնէ։ Ուստի երբոր նաւուղիղն ամէն բան կարգի

դնելէն ետեւ՝ կ՚ուզէր ճամբայ ելլել երթա-
լու կղզին գտնելու, ուր որ կը կարծէին
թէ ձմեռը պիտի անցընեն, մտածեց որ նոյն
սառուցեալ դաշտերն անցնելու համար ի-
րեն ամենէն ապահով ընկեր կրնան ըլլալ
այս երկու երիտասարդները, որովհետեւ ա-
ղէկ ալ կը ճանչնար իրենց հնազանդու-
թիւնն ու քաջասրտութիւնը։ Ալեքսի ու
Իվան ալ իրենց կողմանէ նոյն վտանգաւոր
գործքը սիրով յանձն առին. ոչ սառոյց-
ներուն վրայէն քալելու վտանգը, ոչ աշխա-
տութիւնը, ոչ ցուրտը կարող եղան իրենց
քաջութիւնն եւ իրենց դժբախտութեան
ընկերացը օգտակար ըլլալու բաղձանքը
նուազցընել։ Մանաւանդ որ ընկերներին՝
ողորմածութեան գործք մըն էր, եւ աղէկ
գիտէին որ Աստուած իրենց օգնական կ՚ըլլա-
լայ եւ զիրենք կը պաշտպանէ։

## ԳԼՈՒԽ Զ.

Դեփելու ճամբորդներուն առաջին օրը։

ՆԱՒԱՊԵՏՆ երիտասարդներուն դի-
տաւորութեան վրայ շատ ուրախացաւ, եւ
անոնց ճամբորդութենէն աղէկ հետեւու-
թիւն կը գուշակէր։ Երեք ճամբորդներն
աղէկ մը հագուեցան. կօշիկներնուն տակ՝
սառոյցներուն վրայ չսահելու համար՝ սուր
երկաթներ զամեցին. ամէն մէկը մէյ մէկ
աղէկ մուշտակ ու երկաթապատ գաւազան
մ՚առաւ. նաեւ հրացանով ու սրով զի-

Նեցան, գօտիններնէն կացին մը կախեցին, կապարի ու վառօդի աղէկ պաշար առին. այս ամենայն կ'ընէին՝ չէ թէ իրենց նման թշնամիէ մը վախ ունենալնուն համար, հապա նոյն կողմերը շատ յաճախ գտնուող առասալէկ կատաղի ճերմակ արջերուն դէմ իրենք զիրենք պաշտպանելու համար: Ուտելեաց պաշարնին երեք օրուան պաքսիմաթ եւ աղած միս էր, չէր մ'ալ օղի: Վերջապէս հետերնին դիտակ մը եւ շատ մը ռետինէ ջահեր ալ առին:

Նաւապետին հետ խօսք ըրին որ կղզին համնելու ըլլան նէ, ժայռին ծայրն աղէկ կրակ մը վառեն, նաւէն ալ նոյն եղանակաւ պատասխան տրուի: Իսկ եթէ գտնուած տեղը՝ ձմեռուն անցընելու յարմար ըլլայ կամ նոյն տեղը բնակելու այր մը գտնելու ըլլան, երեք հրալից փամփուշտ արձակեն: Աս նշաններուն համեմատ՝ նաւապետն իրենց ետեւէն պաշարով մարդիկներ պիտի խրկէր եւ նաւուն բեռը փոխադրելու պատշաճ միջոցները բանեցընէր:

Այսպէս պատրաստուելէն ու ջերմ աղօթք մ'ընելէն ետքը, Ալեքսի եւ Իվան նաւուղղին առաջնորդութեամբը, առաւօտ ըլլալէն հինգ ժամ յառաջ ճամբայ ելան: Օդը հանդարտ էր, լուսինն իրենց ճամբան կը լուսաւորէր, որուն կ'օգնէր նաեւ աստեղաց լոյսը՝ որն որ նոյն կողմերը շատ պայծառ է: Պաղը շատ կծու էր, անոր համար ընթացքնին շուտցընելու պարտաւորեցան:

Ինչպէս ինք իրմէ կ'իմացուի՝ շատ մեծ դժուարութեամբ կապուած էր աս ճամբորդութիւնը։ Ստիպուած էին միշտ ուռուցի անհարթ դաշտերուն վրայէն քալելու. եւ կատարեալ չսառած ճախիններու հանդիպած ժամանակնին ալ՝ մեծ շրջաններ պէտք էին ընել. միօրինակ վախի մէջ էին որ ճերմակ արջերու չհանդիպին, անոր համար որպէս զի հարկաւորութեան ատեն իրարու կարենան օգնել՝ քովէ քով կ'երթային։ Առանկով չորս ժամ ճամբայ ընելէն ետքը՝ արշալոյսը ծագելու ատեն ուր ժայռերու զանգուած մը տեսան, եւ քիչ մը ետքը կղզին հասան, որուն այնչափ հեռու ըլլալը նաւէն չէր երեւար, վասն զի չէր կարծուեր որ ճամբան այնչափ դժուար ըլլայ։

Ալեքսիին եւ Իվանին ուրախութիւնն այնչափ մեծ եղաւ, որ ծնկան վրայ գալով՝ երկիրը պագին եւ եռանդեամբ շնորհակալ եղան Նախախնամութեան աս ապաստանարանը գտնել տալուն համար, ուր որ իրենց վշտաց վերջին եկած կը համարէին. չէին տեսներ թէ գլուխնին դեռ ինչ չարիքներ կրնայ գալ։

Բայց ինչ երկիր էր աս իրենց գտածը։ Ամէն կողմէն սառուցով ու ձիւնով ծածկուած էր, ամենեւին ոչ ծառ կար եւ ոչ աչքը հանգչեցընելու թուփ մը. միայն ասդին անդին ալիքներէ նետուած խորտակեալ նաւերու կտորտուքներ կը տեսնուէին։ Օդը զարհուրելի, աչքը զօրածին

չափ՝ ընդարձակ անապատներ, մերկ ու վըսայէ վրայ դիզուած ժայռերով երկիր մը։ Տեղ մը կենդանի արարած չէր տեսնուեր։ Չորս կողմն ամենայն ինչ մեռեալ էր, եւ ոչ ագռաւի մը տխուր կռնչիւնը կը լսուէր, որն որ շատ երկիրներ ձիւնով ծածկուած դաշտերուն կենդանութիւն մը կու տայ։ Բնութիւնն աւերակներու ցոյց մը կու տար։ Ի վերայ այսր ամենայնի աս զարհուրելի անապատնին մէջըն ալ՝ հաստատուն երկրի մը վրայ ըլլալնուն համար իրենք զիրենք երջանիկ կը սեպէին. ուր որ նաւուն մէջ եղողներն անչափ վտանգներու մէջ էին։

Այս ամենայն տխուր տեսարանը զննելէն ետեւ՝ դէպ ի ներքսի կողմերը քիչ մը յառաջ գացին, որպէս զի երկիրը գիտեն ու կրակ վառելու յարմար տեղ մը գտնեն, եւ հոն հանգչելով ու կերակուր ուտելով զօրանան։ Հանգիստ առնելէն ետեւ նաւուղիղը, որն որ ինչպէս ըսինք՝ աս կողմերը շատ անգամ ճամբորդութիւն ըրած էր, չորս կողմը քիչ մ'ալ զննելով՝ ըսաւ թէ գտնուած տեղերնին՝ Շբիցպերկի մէկ մասն է։ Եւ իր ընկերներուն նոյն տեղերուն ստորագրութիւնն ըրաւ։

Շբիցպերկ, որն որ մէկ մեծ ու խել մը պզտիկ կղզիներէ կը բաղկանայ, հիւսիսային կիսագնդին ամենէն հիւսիսային մասն է, 25 եւ 45 աստիճան երկայնութեան, եւ 77 ու 82 աստիճան լայնու-

թեան մէջ կ'իյնայ եւ հապատակօրէն ի-
րրեւ Ամերիկայի մաս կը համարուի։ Այս
տեղը Անգղիացիք գտան 1553ին։

Այս կղզեաց խումբին անոր համար Շբից-պէրկ (Սրածայր լեռներ) կ'անուանուի, որովհետեւ՝ ձիւնով ու սառուցով ծածկուած լեռներով ու ժայռերով լեցուն է։ Տարուան տասն ամիսը՝ երկիրը կանգուններով բարձրութեամբ կը սառի. եւ տեղ տեղ՝ երբեք չհալող սառուցներէ բաղկացած է յատակը. որուն վրայ քանի մը մամ միայն հող կը գտնուի. եւ վրան միայն մամուռ ու քիչ մը մատղաշ տնկեր յառաջ կուգան. գրեթէ ուրիշ տունկ չերեւնուիր։ Ամառը տաքէն անտանելի կ'ըլլայ։

Այս անապատ երկրին մէջ՝ մարդուն օգտակար եղած կենդանիներէն՝ միայն ապաղտոն եղջերու կը գտնուի, որն որ ամառը հիւսիսային ու արեւելեան հովէն ապահով եղած ձորերուն մէջ բուսած քիչ մը խոտով, ձմեռն ալ անոր փոխանակող մամուռով կը սնանի։ Կղզիները շրջապատող ծովը՝ տարւոյն մեծ մասը թանձր սառուցով մը այնպէս կը ծածկուի, որ անցնողը կը կարծէ թէ թանձր սառուցէ դաշտեր ըլլան, որոնց մէջ ասդին անդին նոյնպէս սառուցէ ահագին լեռներ վեր ցցուին։

Ամառուան ատեն, երբ որ սառուցները հալած կ'ըլլան, ծովը ձկներով կը լեցուի, եւ եզերքը բնակող ճերմակ արջերը, գայլերն ու աղուէսներն անոնցմէ առատ կերակուր կը

գտնեն։ Նոյն կենդանիները ձմեռը երկրին ներսի կողմերը յառաջանալով՝ շատ միատակար կ'ըլլան։ Նաեւ ծովային եզ ու ծովաշուն, կէտ ու շանաձուկ ալ շատ կը գտնուի, որոնք անանկ կողմեր կը կենան, ուր քաղցր եղանակին ատենը պզտիկ ձկանց առատութենէն բաւական ճարակ կարող կ'ըլլան գտնել։ Հոն նաեւ աղկիոն ու ծովու ճայ ալ կը գտնուի, բայց քիչ. տեղւոյն օդական բնակիչները՝ միայն աս վերջիններն են։ Մարդիկ ոչ կրնան եւ ոչ ալ կ'ուզեն աս զարհուրելի կողմերը բնակիլ։ Ի վերայ այսր ամենայնի ամէն տարի կիտորսութեան համար Ռուսի եւ ուրիշ ազգերու նաւեր շատ կու գան. աս նաւերը Շէրէնպուրկի կողմերը խարիսխ նետելով՝ ամառուան ատեն քանի մը շաբաթ հոն կը կենան։

Թէպէտ եւ նաւուղղին անկարագրութիւնը երկու երիտասարդաց սիրտը շատ անհանգիստ ըրաւ, բայց հոգի առին ու զօրացան երբ որ լսեցին թէ շատ նաւորդներ գտնուած են, որոնց նաւը սառոյցներէ փակուելով, Շբիցպերկի վրայ տարի մը ապրած են՝ խրած նաւերնուն պաշարովը, իրենց բնակութիւնը ժայռերու խոռոչներուն մէջ հաստատելով եւ եղանակներուն փոխուելուն սպասելով, որ ատեն կիտորսութեան համար եկող նաւերը զիրենք ազատած են։ Ի մէջ այլոց Հեանիպքէրք Հոլանտացւոյն ու Մոնք Դա-

Նիացւոյն պատմութիւնը պատմեց անոնց, որոնք այսպիսի դէպքի մը մէջ երկրին որպիսութիւնն իմանալու համար՝ հոն խաբուած ըլլալով, եւ դարձած ժամանակնին՝ ոչ ընկեր, ոչ ալ նաւ գտնելով՝ Շբից-պերկի վրայ բոլոր ձմեռ մնալու ստիպուած, եւ ամառը հոն եկող նաւով մը սա ահագին բնակութենէն ազատելէն յառաջ մեծ չքաւորութեան տարած էին։

Մեր երեք ճամբորդները շատ կը բաղձային կիտորսներուն հասարակօրէն կեցած տեղը հասնիլ, որովհետեւ կը յուսային որ հոն խուղեր ու ձմերուան բնակութեան համար իրենց խիստ օգտակար բաներ կրնան գտնել։ Միանգամայն՝ որովհետեւ ամէն տարի Արխանկէլէն դէպ ի Շէրէնպուրկ նաւ մը կու գայ, որպէս զի եթէ առջի տարուընէ հոն մնացող կայ նէ՝ կարող ըլլայ ազատել, կը յուսային որ ամառը հասնելուն պէս՝ իրենք ալ անշուշտ սա կերպով իրենց վշտերէն կ'ազատին։

Այսպէսով քիչ մը հանդարտելէն ու հոգի առնելէն ետեւ՝ ուզեցին նաւապետին նշան տալ որ ողջ առողջ կղզին հասան։ Բայց ամէն ժայռերն անանկ բարձր, ցից եւ ըստ մեծի մասին սառուցով ծածկուած էին, որ մագլելով վեր ելլելն իսկ անկարելի կ'ըլլար։ Վերջապէս խորաձոր մը հասնելով՝ ճամբանին անոր մէջէն շարունակեցին։ Ժայռերուն ծագերը դեռ արեւէն կը լուսաւորէին, բայց իրենք շատ

վար գառնուելով՝ հազիւ թէ տկար լոյս մը մինչեւ իրենց կը հասնէր: Քալած երկիրնին սառուցէ կեղեւ մը երեւոյթ կու տար, բայց նաւուղիղը կ'ենթադրէր թէ տակը գետ մ'ըլլայ: Նաեւ կը համարէր որ եթէ կիտորսներն աս կողմերը խիւղ շինած ըլլան, պէտք է որ նոյն գետակին մօտերն ըլլայ, որովհետեւ կէտերը մանր մանր կտրելու եւ պատրաստելու համար՝ վճիտ ջրոյ հարկաւորութիւն ունին: Աս խորաձորոյն մէջ միշտ դէպ ի վեր ելլելով՝ ճամբան յառաջ կը տանէին. բայց ժայռերն այնպէս զառհաւէժ էին, որ մագլելով ելլելու տեղն՝ ամէն վայրկեան կեանքերնին վտանգի մէջ էր:

Սաստիկ կը բաղձային՝ նաւին մէջ մնացած իրենց դժբախտ ընկերներուն՝ կղզին հասած ըլլալնուն ուրախարար նշանը տալ. բայց այնպիսի բարձրութեան չէին կրնար հասնիլ՝ ուսկից իրենց կրակին լոյսը կրնար տեսնուիլ: Քիչ մը ետքը տեսնելով որ ձորը լայննալու կը սկսի եւ ժայռերը դարատափ մը կը ձեւացընեն, սկսան ընթացքնին շուտցընել: Իվան՝ որն որ առջեւէն կ'երթար, գտնէն քանի մը կանգուն վեր այրի մուտք մը տեսնելով, երկուքն ալ ուղեցին երթալ մէջը պառկիլ: Իրարու օգնելով՝ յաջողութեամբ մուտքին հասան, որուն առջեւը ժայռը լայն ու աստիճանաւոր տափարակ մը կը ձեւացընէր: Իվան շուտ մը այրին մէջ մտնել կ'ուզէր, բայց

խոհեմ նաւուղիղը զինքն արգելեց, ըսելով թէ կրնայ ըլլալ որ մէջը ճերմակ արջ կամ՝ ուրիշ վայրենի կենդանի մը գտնուի։ Ապահովութեան համար հրացան մ'արձակեց դէպ ի այրին մէջը, որն որ շատ արձագանգ տալով՝ որոտման նման թնդիւններ պատճառեց։ Երբոր հարուածէն ետեւ ամենայն ինչ հանդարտ մնաց ու կենդանի մ'ալ չերեւցաւ, համարձակեցան ցած ճեղքուածքէ մը ներս մտնել։ Ուրախութեամբ ու զարմացմամբ տեսան թէ այրն այնպէս ընդարձակ էր որ չէ թէ միայն իրենց, հապա նաեւ ուրիշ շատերուն ալ՝ օդոյն անհարթութիւնէն ապաւէն կրնար ըլլալ։ Այրը դէպ ի ժայռին ներսի կողմը քանի մը կանգուն կը տարածուէր. նոյն ժայռէն ձեւացած պատերն աղէկ միացած ու չոր էին. բոլորը կրնար աւելի եւս մեծնալ։ Յատակը գրեթէ ամէն կողմ հարթ էր, եւ գորշ ու բարակ աւազով ծածկուած։

Աստուած մեզի հետ է, կանչեց Ալեքսի; զմեզ իր առանձին հովանաւորութեան տակ առած է։ Փնտռածնիս գտանք, եւ մեր ճամբորդութեան բոլոր ընկերներով կրնանք ձմեռը հոս անցընել։ Մեր նաւէն հանել կրցած ամէն բան հոս կրնանք տեղաւորել։ Աստուած օրհնեալ ըլլայ։ Ի՛նչ շնորհակալութիւն պարտաւոր ենք ընելու աս այրը մեզի պարգեւելուն համար։ Աս խօսքին՝ երեքն ալ մէկտեղ ծնկան վրայ գալով ու աչուըննին երկինք վերցընելով՝

եռանդեամբ շնորհակալութեան աղօթք-նին ըրին։

Հիմայ բանը կը մնայ, ըսաւ Նաւուղիղը, ըրած գիւտերնիս մեր ընկերներուն ալ հաղորդել։ Փորձենք մէյ մը, չե՞նք կրնար մի արդեօք լողալով՝ աս ժայռին ծայրն ելլել։ Անմիջապէս այրէն դուրս ելլելով՝ տափարակ տեղէն ժայռը զննեցին, եւ շուտ մը ծառը հանելու անցք գտան։ Անչափ աշխատութեամբ ու մեկզմէկ բռնելով՝ կրցան հանել նոյն ծառը, որն որ իր բարձրութեամբը չորս կողմը կը տիրէր եւ քիչ մը ընդարձակկեկ տափարակ տեղ մ'ունէր։

Դեռ օրուան լոյսը զիրենք կը լուսաւորէր. բայց աչքերնուն առջեւ բացուած տեսարանը՝ այրը գտնելնուն ուրախութիւնը շատ նուազցուց։ Իրենց բոլորտիքն ուրիշ բան չէին տեսներ, բայց եթէ վայրենի ու վրայէ վրայ կուտուած ժայռեր, որոնք սաստիկ երկրաշարժէ կործանած քաղքի մը տխուր տեսարանին պէս կ'երեւային։ Ամէն իրենց երեւցած բաները զարհուրելի էին։ Ծովին կողմը դառնալով՝ համատարած սառուցի դաշտ մը կը նշմարէին, զորն որ այնչափ դժուարութեամբ անցած էին։ Ներքին կողմերը դառնալով՝ ձիւնով ծածկուած ընդարձակ երկիր մը կը տեսնէին, ուր ո՛չ ծառ կը բարձրանար, ո՛չ կենդանի արարած մը կ'ապրէր. եւ աս ընդարձակ դաշտավայրն ալ միայն ժայռերով եզերած էր։ Առջեւնին ելած մի միայն մխի-

Թարաքեան առարկան նաւն էր, զորն որ իրենց դիտակին օգնութեամբը յայտնի կը տեսնէին. որովհետեւ ուղիղ գծով մը միայն երկու մղոն հեռու էր: Անմիջապէս իրենց հետ վեր առած փայտերը դիզելով՝ կրակ տուին: Օրը լմննալու վրայ էր: Քիչ մը ետքը նաւին քովը մեծ կրակ մը տեսան, որն որ իրենց տուած նշանին պատասխանն էր: Նաւուղիղն երեք հրալից փամփուշտներն ալ՝ քիչ քիչ միջոց տալով՝ ետեւէ ետեւ արձակեց: Նաւէն ալ նոյն կերպով պատասխան տուին:

Ա՛լ հիմակ ապահով ըլլալով որ տուած նշաններին իրենց ընկերներն իմացան, ստոյգ կը սեպէին որ նաւապետին հրամանովը քանի մը հոգի ալ կու գան իրենց հետ կը միանան: Աչքերնուն առջեւն ունեցած տխուր տեսարանէն մտքերնուն մէջ ծնած տրտում ազդեցութեան՝ քաղցր յոյս մը փոխանակեց. եւ լաւութեամբ կ'աղօթէին Աստուծոյ, որ իրենց ընկերներուն երջանիկ ճամբորդութիւն մը շնորհէ:

Աս զգածմունքով ջահերուն լուսովն այրին իջան, որ հոն գիշերն անցընեն: Նաւէն ելլելէն ետքը՝ ցրտին սաստկութենէն շատ նեղութիւն կրած էին: Ստոյգ է հով չկար, բայց օդը խիստ ու կծու էր: Իսկ գիշեր կոխած ատեն՝ բոլոր հորիզոնը մառախուղ մը պատեց, օդը կակղցաւ ու խոնաւցաւ: Ձիւնն ամպերնուն տակ տեղի կու տար ու սառնամանեաց լուծումը

մնա կ'երեւար։ Գետ այս չհասած՝ հե-
ռուէն ահագին հնչիւն մը լսուեցաւ, որ-
մէ Նաւուղիղը գուշակեց թէ օդը պիտի
փոխուի, եւ աս բանս իրեն մեծ անձկու-
թիւն պատճառեց։ Փորձիւ գիտէր որ աս
հիւսիսային գաւառներուն մէջ ամառուան
վերջը կատաղութեամբ աւերող մրրի-
կը, շատ անգամ կը նորոգի ամէն կողմ
ձիւնով ու սառուցով ծածկուելէն ետքն
ող, եւ հասարակօրէն տաղայներուն հա-
լեւորը կը ըսէ։ Երկինքն ամպով կը պա-
տի, թանձր մէգ մը երկրիս ամէն կողմը
կը տարածի, եւ շատ մը անձրեւ կը սկսի
գալ, որն որ ձեան կը փոխուի եւ այնչափ
կը տեւէ՝ մինչեւ որ հովս ամպերը ցրուէ։
Իսկ երկինքը 'պայծառանալէն ետեւ՝ զար-
հուրելի պաղ մը կ'ըլլայ։

Երեք դժբախտներն այլը մնանելուն
պէս, վայրենի կենդանիները հեռացընելու
համար՝ մուտքին առջեւը մեծ կրակ մը
վառեցին։ Պաքսիմատով ու աղած մսով
ընթրիքնին ընելէն ետեւ, Աստուծոյ շնոր-
հակալ եղան մինչեւ նոյն ատեն իրենց
վրայ ցուցուցած հովանաւորութեան հա-
մար ու հանգչելու ջանացին։ Կը յուսային
որ երկրորդ օրը նաւապետին իրենց հետ
միանալու համար թողած ընկերները կը
տեսնեն։ Ալեքսի եւ Իվան իրենց տաժա-
նելի ճամբորդութենէն խիստ յոգնած ըլ-
լալով՝ աս քաղցր յուսով շուտ մը քուն
մտան։ Իսկ Նաւուղիղը չէր կրնար առանց

մտածմունքներով հանդարտիլ։ Շատ կը վախնար որ մրրիկն ու դէշ օդը նաւապետին խրկած անձանց ու նոյն իսկ նաւուն եւ մէջը նստողներուն գլուխը մեծ փորձանք մը չբերէ։ Իր վախն երկու երիտասարդաց չէր յայտնած, անոնց ուրախութիւնք չաւրելու եւ ժամանակէն յառաջ զիրենք չտրտմեցընելու համար. մանաւանդ որ յայտնելու ամենեւին օգուտ մը չունէր, որովհետեւ չէին կրնար ալ չարեաց առջեւն առնել։ Բարեբախտաբար մարդն իր մտձաւորին հոգւոյն խաղաղութիւնը կը մեծարէ, եւ զանիկայ խռովելու ամէն բաները հեռացընելու կը ջանայ։ Ուրիշները չտրտմեցընելու համար՝ շատ անգամ իր տրտմութիւնն ու վախը սրտին մէջ կը փակէ։ Միայն ան ատեն իրենց պատահելու չարիքը կը յայտնէ, երբ որ անով կըրնան նոյնէն զգուշանալ։

Բոլոր գիշեր նաւուղղին աչքը քուն չմտաւ։ Զարհուրելի մռնչիւն մը ականջները կը հնչեցընէր։ Հովը զարնելով կրակին ծուխն այրին մէջ կը մղէր, այնպէս որ գրեթէ շնչառութիւնը կը կտրէր։ Փորձառու մարդուն վախցածն իրօք ալ պատահեցաւ։ Շուտ մը երիտասարդաց ձայն տուաւ։ Կրակին փայտերը ցրուած էին, երկինքը սեւ ամպերով ծածկուած, հովն ուժգին կը մռնչէր եւ ձիւնախառն անձրեւն այրին մուտքէն դէպ ի ներս կը մղէր. հեռուանց ատանամանեաց խորա-

կելու ահագին շառաչիւնն ու ալեաց ձայնը կը լսուէր։ Բոլոր ան սառուցեալ բնութիւնը շարժման մէջ կ'երեւար։

Փառք Աստուծոյ, ըսաւ Ալեքոն, որ ապահով տեղ ենք։ Եթէ աս մրրիկը ճամբան մեր վրան հասնէր, ինչ կ'ըլլար մեր վիճակը։

Ստուգիւ Աստուած մեզի մեծ բարերարութիւն ըրաւ, պատասխանեց Իվան, զմեզ աս այրն առաջնորդելով, ուր կըրնանք հանգարտութեամբ մրրկին անցնելուն սպասել։ Բայց նաւին մէջ մնացող ու նաւապետին դէպ ի հօս-խրկած մեր ընկերներն աս ահագին մրրկին առեն ինչ պիտա՛ որ ընեն։ Աստուած անոնց ալ օգնական ըլլայ։

Աս երեք դժբախտ ընկերք երկայն ատեն նոյն նիւթերուն վրայ խօսելով՝ մեծ փափաքանօք առաւօտ ըլլալուն կը սպասէին, որպէս զի մրրկին հետեւանքները տեսնեն։ Բայց զիրենք պատող թանձր մութը փարատելէն յառաջ շատ ժամեր անցան. իսկ իրենց վախը մրրկին հետ կ'աւելնար։ Շատ ժամեր հսկելով անցընելէն ու իրենց ընկերաց վիճակին վրայ հոգալով՝ զանոնք Ամենակարողին հովանաւորութեան յանձնելէն ետքը, մուշտակներնուն մէջ փաթթուելով՝ դարձեալ քուն մտան։

## ԳԼՈՒԽ Է.

### Երկրորդ օր:

ՆՈՐԷՆ արթընցած առտուններին՝ մըրրիկը դադրած էր. յուզեալ ալեաց մռնչիւնէն զատ բան չէր լսուեր: Երկինքը պայծառացած էր, լուսինը դեռ կը փայլէր, աղօտ աստղներն ալ տակաւին կը շողային. առատիկ պաղ հով մը կը փչէր: Նաւակածեալք անմիջապէս ուզեցին առջի իրիկուան կրակ վառած ժայռին վրայ ելլել, ուսկից կրնային հեռու տեղերը տեսնել: Խիստ մեծ աշխատութեամբ հազիւ կրցան ելլել. որովհետեւ անձրեւին ու ձեան վրայ անմիջապէս պաղը գալով, ժայռը սառամանիքը ծածկուած էր: Նոյն միջոցին լուսինը մտնելով՝ չորս կողմը խոր խաւար մը պատեց, ուստի եւ ամենեւին բան մը չէին կրնար տեսնել. միայն ականջնին ալեաց զարհուրելի գոչիւններէն ու խորտակած տառապեալներու գղրդիւնէն կը հընչէր: Սաստիկ անձկութեամբ ու անհամբերութեամբ օրուան ծագելուն կը սպասէին:

Մէյ մ'ալ արեւելեան կողմը երկնից վրայ կարմիրկէկ աղեղ մ'երեւցաւ, որն որ սկաւառակի ձեւով քիչ քիչ մեծնալով՝ ժայռերուն ծայրերը տկար լուսով լուսաւորեց. ալ առտու եղած էր եւ հեռաւոր առարկաները կ'որոշուէին: Բայց ի՜նչ զարհուրելի տեսարան կը պարզէր իրենց: Ծո-

վուն ան սառոյցները՝ որոնց վրայէն իրենք կղզին եկած էին, բայց մեծի մասին աներեւոյթ եղած էին. ալիքներն անդադար սառոյցներ կը բերէին եղերքը. սառուցէ լերինք նոյն ալիքներէն մղուելով՝ ծովը պատող ժայռերուն դէմ կը բախէին, եւ կարծես թէ զանոնք փոշի դարձնել կ'ուզէին: Ծովը դեռ յուզման ու տատանման մէջ էր եւ խիստ բարկացած մարդու մը կը նմանէր, որուն վրայ հանդարտութիւնը աստիճան աստիճան կու գայ:

Երբոր օրուան լոյսը դիտակ գործածելու թոյլ տուաւ, նաւուղիղը սկսաւ նայիլ այն կողմն՝ ուր որ նաւն առջի օրը սառոյցներով պատած կեցած էր. բայց բան մ'ալ չտեսաւ: Վախը զինքը պաշարեց. եւ իր աչուըներուն չվստահանալով, Ալեքսիին ու Իվանին նայել տուաւ, որոնց աչքն աւելի սուր էր: Բայց անոնք ալ բան չտեսան: Ամենուն ալ այնպէս կ'երեւար որ ծովուն ան տեղն՝ ուր որ նաւը խրած էր, հիմակ արձակ ու ալիքներով ծածկուած է: Իրենց շրթանց վրայ խօսք մը չէր գար, արցունքն երեսնին կ'ողողէր: Երեքն ալ քար դարձածի պէս մնացին: Վերջապէս Ալեքսի գոչեց. Ի՜նչ եղան արդեօք մեր ճամբորդութեան խեղճ ընկերները: Թէ որ նաւն ալէկոծութենէ քայքայեցաւ նէ, Աստուած իրենց օգնութեան հասնի: Բայց գուցէ ցամաք երկիրը մղուած են, ուր որ ապաւէն մը կրնան գտնել: Իսկ մենք բոլոր

աշխարհքէն զատուած, առանց օգնութեան, ձիւնով ու սառուցով ծածկուած անբնակ կղզւոյ մը վրայ մնացինք։

Ի՞նչ եղած են արդեօք մեր նշան տալէն ետքը՝ նաւապետին ու կղզին խրկած մարդիկները, բաւ. Իվան։ Անշուշտ իրենց առքին տակի առաջինը պատուելով՝ գերեզմաննին ծովուն ալիքներուն տակ գտած պիտի՛որ ըլլան։

Նաւուղին՝ որն որ աղէկ կ'իմանար թէ իրենց եւ թէ նաւուն մէջ մնացողներուն գլուխն եկած արկածը, կը ջանար դրսէն հանդարտ երեւալով՝ զԱլեքսի եւ զԻվան աւելի եւս չխռովելու, որովհետեւ գիտէր որ վհատութիւնն իրենց տխուր վիճակն աւելի եւս կը գէշցընէ։ Չենք կրնար հաստատութեամբ գիտնալ, բաւ. ամուր ձայնիւ, որ նաւապետը մեր հրեղէն ռումբն ու հրալից փամփուշտները տեսածին պէս՝ դէպ ի կղզին մարդ խրկեց մի։ Իսկ եթէ ժամանակին ճամբայ ելան նէ, մինչեւ յառաջ կղզին կրնան հասած ըլլալ, եւ դեռ կրնանք զիրենք գտնել։ Նոյնպէս նաւուն ալ առաջըներէն ազատելէն ետքը՝ կրնայ ցամաք մը մօտեցած ըլլալ, ուսկից մեր ընկերներն զմեզ ալ ազատելու ճար մը կը գտնեն։ Ցոյսերնիս չկորսնցընենք եւ զմեզ յանձնենք Նախախնամութեան, որն որ զմեզ յաջողութեամբ աս կղզին հասուց։ Ինք զմեզ կը պահպանէ մինչեւ որ աս տառապանքէն ազատինք։

Բայց ի՞նչ որ է նէ՝ հիմայ մենք մեզի մնացած ենք, ըսաւ Ալեքօի. աս երկայն ու խիստ ձմրուան առտեն ի՞նչ պիտ'որ ընենք։ Կերակուր ուտելի՞ պիտի գտնենք. անշուշտ շուտ մը անօթութենէ պիտի մեռնինք։

Քաջասիրտ Նաւուղիղը պատասխան տուաւ. Բարեկամք, չյուսահատինք, բոլոր մեր զօրութիւնը գործածելով, Աստուծոյ օգնութեամբն ու պաշտպանութեամբը մեզի անհրաժեշտ հարկաւոր եղածը կրնանք հոգալ։ Մենք մեր ձեռքէն եկածն ընենք, Աստուած ալ մեզի կ'օգնէ։ Երեք հոգի ըլլալնիս ալ մեզի մեծ օգուտ չէ՞ մի։ Ի՞նչ զարհուրելի վիճակի մէջ կ'ըլլար մէկը՝ եթէ աս ամայի կղզւոյն վրայ առանձին գտնուէր։ Կրնանք փոխախակի իրարու օգնել, եւ այնպիսի գործքերու ձեռք զարնել՝ զորն որ առանձին մէկը չէր կրնար գլուխ հանել։ Առողջ ու զօրաւոր ենք, պարզ ու աշխատութեան ալ վարժած, եւ Աստուծոյ մեր վրայ խրկել ուզած աշխատութիւնները ու զրկումները կրնանք տանիլ։

Այսպէսով կը ջանար աս քաջ ու բարի մարդը երիտասարդները քաջալերելու եւ զօրացընելու իրենց վստահութիւնը՝ զորն որ ցաւը նուազեցուցած էր։ Իր խօսքերովը անոնց սրտին մէջ նոր զօրութիւն մը ստացաւ կրօնական զգածմունքն ու աստուածային Նախախնամութեան հաւատքը՝ որն որ ամենայն ինչ կը կարգաւորէ. եւ զիրենք համոզեց որ Աստուած նոյն դժբախտ վիճակին մէջ զիրենք ձեռքէ չի թողուր։

Այդ տեսակ մտածմունքներով զօրանալով՝ երեք դժբախտութեան ընկերք ուզեցին որ եթէ տակաւին կարելի է նէ՝ իրենց ընկերներուն ալ օգնութիւն ընեն. ուստի ժայռին ծայրը մեծ կրակ մը վառեցին եւ իրենք այրը դառնալով՝ սկսան մտածել որ ինչ ընեն։ Երկու երիտասարդք Նաւուղղին վրայ մեծ վստահութիւն ունէին, վասն զի կը ճանչնային որ փորձառու եւ խոհեմ մարդ է։

Նախ քիչ մը կերակուր ուտենք, ըսաւ իսկ, եւ ետքը երթանք կղզին պտըտինք, գուցէ կրնանք ուտելիք եւ ձմերուան պաշար հոգալ։ Ունեցած կերակուրնին հազիւ երկրորդ օրուան կը բաւէր։ Աս չքաւորութիւնը զերիտասարդները շատ անհանգիստ կ՚ընէր. իսկ Նաւուղիղը զիրենք ապահովցընելու կը ջանար։

Կերակուրնին ուտելէն ետեւ՝ Մնացած քիչ պաշարնին մէկտեղ առած եւ աղէկ մ՚ալ զինուած՝ լուսնոյ աղօտ լուսովը ճամբայ ելան։ Ձորոյն մէջէն յառաջ կ՚երթային։ Նաւուղիղը միշտ կը յուսար որ մէջը պաշարով այր մը կը գտնեն։ Աս անցքը խիստ զարհուրելի էր, որովհետեւ բոլոր ժայռերով շրջապատած էր, որոնք գիշերուան մթութենէն ահռելի կերպարանքներ կ՚առնուին, ոմանք ալ ճամբուն վրայ այնպէս դուրս ցցուած էին, որ մարդ կարծէր թէ անմիջապէս պիտի փլչին։ Քալած ատեններնին՝ վայրենի անասուններէն մեծ

զգուշութիւն կ՚ընէին, եւ մեծ մտադրու-
թեամբ կը դիտէին որ արդեօք մարդկային
բնակութեան առաջնորդող նշան կրնան մը
տեսնել: Ճամբան խորտուբորտ ու տաժան
էր, պաղն ալ սաստիկ. բայց իրենց թանձր
մուշտակներն եւ բրած ընթացքին շարժումը՝
զիրենք կը պահպանէին: Արդէն քանի մը
ժամու ճամբայ բրած էին՝ առանց մտա-
դրութեան արժանի բան մը տեսնելու:

Հորիզոնին վրայ լուսինն իր ընթացքը
լմնցուցած էր, եւ մեր ճամբորդները կը
լուսաւորուէին միայն աստղներուն աղօտ
լուսովը, որն որ ձեան վրայէն ցոլանալով՝
քիչ մ՚աւելի օգնութիւն կը մատուցանէր
իրենց. այնչափ որ իրենց ճամբան յառաջ
տանելու բաւական կ՚ըլլար: Բայց Ալե-
քսիին եւ Իվանին սրտի վրդովմունքն ա-
մէն առջեւնին եղած առարկային՝ ահաւոր
կերպարանք մը կու տար: Գացած կողմեր-
նին միօրինակ աւելի վայրենութիւն մը կը
տեսնար: Երկու կողմերը բարձր ու սեպա-
ցեալ ժայռեր կը բարձրանային, որոնք եր-
բեմն աս դժբախտներուն վրայ այնպիսի
կամարներ կը ձեւացընէին, ուսկից երկինք
տեսնել անկարելի կ՚ըլլար:

Չորս ժամէն աւելի ճամբայ ընելէն ե-
տեւ աս ձորոյն մէջ՝ որն որ ամէն ուղղու-
թեամբ ալ կը դառնար, երկու երիտա-
սարդք կ՚ուզէին որ քիչ մը հանգչէին եւ
մտածէին թէ արդեօք լաւագոյն չ՚ըլլար որ
ալ իրենց ետքը դառնան, եւ օրուան ծա-

դեռ ու տանը՝ կըզգէին ուրիշ կողմանէ մը գի-տեն : Իսկ Նաւուզէրը պատասխան տուաւ թէ հանդչելը կրնայ իրենց շատ վնասակար ըլլալ, վասն զի տաքնալու եւ փոշիներու տա-նջանքներէն պահպանուելու համար վա-ւելու փոյթ չունէին : Իր կարծիքն ան էր որ մինչեւ առտու ճամբաներն յառաջ տանին. եւ ան ատեն կը յուսար որ իրենց օգնա-կար բան մը կրնան գտնել : Երիտասարդը մտածելով որ Աստուած մինչեւ նոյն ատեն ինչ զարմանալի բարութեամբ իրենց օգնած էր, հոգի առին ու զօրացան :

## ԳԼՈՒԽ Ը.

### Ուրախարար գիւտեր :

ԵՐԵՔ դժբախտ բարեկամք չորս ժամու չափ ալ ճամբայ ըրին այս դժուարակոխ ու անդնդապատ ժայռերուն մէջէն, որոնք այնպէս կ'երեւային իբր թէ երթալով իրարու կը մօտենան եւ իրենց յառաջ երթալու ճամբայ պիտի չթողուն : Աս տեսնելով՝ կարծէին թէ նոյն երկայն ու տաժանելի ճամբորդութիւնը փուչ տեղ ըրած ըլլան եւ կը մտածէին որ ետ դառնան, Աստուծոյ աղաչելով որ զիրենք ողջ առողջ իրենց այրը հասցընէ : Մէյ մ'ալ դէպ ի վեր իջնալով՝ ժայռերով շրջապատած ու կամար ձեւացած տեղ մը հասան, որն որ միայն մէջէն անցք մ'ունէր ու հովէն աղէկ պատսպարած էր : Երբ որ մօտէն կը քննէին

աս խաւաջը՝ որուն այնպիսի անհեթեթ կեր-
պարանք մը տուած էր բնութիւնը, Իվան
տաղքով անանկ բանի մը զարմանուեցաւ, որն
որ ոչ քար կ'երեւար եւ ոչ ալ տառայց:
Աւելի մօտուստ քննելով՝ տեսաւ որ փայ-
տէ կառք մըն էր: Ալեքսի ու Նաւուղիղը
շուտ մը սկսան առջին անդին փնտռել, եւ
շատ մը հատոր ճիւղեր ալ գտան՝ որոնք
երկրին վրայ ցրուած էին:

Աստուած օրհնեալ ըլլայ, գոչեցին ե-
րկքն ալ մէկտեղ, զմեզ տաքցընելու հար-
կաւոր եղածը գտանք: Մեր ճամբորդու-
թիւնն անօգուտ չեղաւ: Զեր կարծածէն
աւելի մեծ գիւտ ըրինք, ըսաւ Նաւուղիղը:
Վասն զի աս ճիւղերը ծառի բնէ մը
կտրուած եւ մարդիկներու ձեռքով հոս
բերուած են: Անշուշտ հոս կամ աս մօ-
տերը մարդիկ ալ պիտի եղած ըլլան:

Մօտերնին դրին որ աղէկ կրակ վառեն,
եւ չորս կողմերնին ճշդիւ քննելու հա-
մար՝ մինչեւ առտու հոն անցընեն: Քիչ մը
կերակուր կերան, մնացած պաշարն ալ հե-
տեւեալ երկու օրուան համար երկու մաս
բաժնեցին, յուսալով որ ան ալ լմըննալէն
ետքը Աստուած իրենց ուտելիք կը խրկէ:

Կրակին քովը պառկած՝ անոր բարերար
տաքութիւնը վայելելով, Աստուծոյ իրենց
ըրած աս մեծ պարգեւին վրայ խօսած ա-
տեններին, Իվան առուակի մը ձայն լսեց ու
մէկալներուն ալ իմացուց: Անմիջապէս սկսան
փնտռել ու շուտ մը յստակ ջրոյ առու

մը գտան, որն որ նոն ժայռերուն մէջէն կը բխէր, եւ քանի մը ոտք հեռու պզտիկ աւազանի մը մէջ մտնելով՝ աներեւոյթ կ՚ըլլար։ Աստուած բարի եւ ողորմած է, գոչեց նաւուղիղը, մինչեւ հիմայ մեր ծարաւը ձիւնով անցընելու պարտաւորած էինք, հիմայ մեզի ջուր կը բխեցընէ. ահաւասիկ մեր կարօտութիւններուն մէկը լեցաւ։ Նախախնամութիւնը կը շարունակէ մեզի օգնութեան հասնելու։

Առուէն ջուր առնելով՝ ուրախութեամբ խմեցին, որովհետեւ երկայն ատենէ վեր ջրէ զրկուած էին, եւ աղած միս ուտելնուն պատճառաւ՝ ծարաւը զիրենք շարունակ կը չարչարէր։ Բայցին լուսավը զննելով՝ տեսան որ աս ջուրն իր մէջն ընդունող աւազանը՝ չորս կողմը կարգաւորեալ շարուած քարերէ շինուած էր։ Խիլան մնացած փայտ մ՚առաւ ու գնաց մօտէն դիտեց. ասով ամէնքն ալ համոզուեցան թէ աւազանը մարդու գործքն է։ Աս գիւտն իրենց սիրտ տուաւ, եւ աստուանց վրանին տիրած անձկութիւնն ալ բոլորովին փարատեցաւ։ Երկայն ճամբորդութենէն յոգնած ըլլալով, ուզեցին քիչ մը քնանալով զօրանալ։ Կրցածնուն չափ փայտ ժողվելով՝ կրակին քով դիզեցին, եւ որոշեցին որ երկուքին քնացած ատեն՝ երրորդը կարգաւ հսկէ, որպէս զի թէ՛ կրակը միշտ վառ պահէ եւ թէ՛ վտանգներէ զգուշանայ։ Նաւուղիղն ու Ալեքսի մուշտակ-

Ներնուն մէջ աղէկ փաթթուելով, եւ տաքնալու համար՝ կրակին աւելի մօտենալով՝ պառկեցան. առաջին պահպանութեան Ի-վան ինք զինքն առաջարկած էր։ Սաստիկ պաղ ատեն, բաց օդի տակ քնանալը, գիւղերին բան մը չէր. բայց մեր ճամբորդ-ները Արխանկելի հիւսիսային օդին վարժած Ռուսներէն էին, եւ իրենց քիչ մը տա-քութիւն պատճառող կրակը բոլոր գիշեր վառ պահելու փոյթ ունենալնուն համար Աստուծոյ շնորհակալ եղան։ Այսպէս փո-փոխակի հսկելով՝ քնացան, մինչեւ որ ժայռերուն ծայրերը՝ կարմրեկեկ գոյն մը առնելով՝ առաւօտն աւետեցին։

Արեւու լուսոյն կարճ տեւողութիւնն աղէկ գործածել ուզելով, ճամբանին շուտ մը սկսան յառաջ տանիլ։ Իրենց գտնուած տեղը շրջապատող ժայռերուն մէջէն միայն մէկ անցք կար, ուսկից դուրս ելան։ Բայց ան ալ դիմացի կողմն ուրիշ ժայռով մը բոլորովին գոցուած երեւցաւ։ Ժայռին վրայէն ելք մը փնտռուած ատեննին՝ ափ կողմը ժայռին վրայ աստիճանաձեւ բան մը տեսան, որն որ ժայռէն հաւասար հե-ռաւորութեամբ կարուած էր ու մարդու ձեռաց գործք ըլլալը կը ցուցընէր։ Նոյն գիւտէն ոյժ առնելով՝ սկսան ան աստի-ճաններուն օգնութեամբը ժայռին վրայէն սողալով վեր ելլել։ Բաւական բարձրու-թեան մը հասած ատեննին՝ Նոյնպէս մար-դու ձեռքով շինուած ճամբայ մը տեսան,

որն որ ժայռերին բոլորտիքն օձաձեւ յառաջանալով՝ մինչեւ նոյնին ծայրը կը հանէր։

Երբոր վեր հասան, յանկարծ իրենց գերենք ուրիշ աշխարհք մը փոխադրուած կարծեցին, այնչափ զարմացած մնացին իրենց աչքին առջեւն ելած հանճարական տեսարաններուն վրայ։ Արեւելեան կողման բարձր ժայռերուն վրայ արեգական պայծառ գունդը կը բարձրանար։ Իսկ վարը՝ հարաւային կողմանէ լեռներով պաշարուած լայն հովիտ մը կը լուսաւորէր, որուն հիւսիսային կողման լեռները շատ բարձր էին։ Հարաւային կողմը կը տեսնուէր Աստուածեալ ծովը, որն որ նեղ պարանոցի մը պէս մինչեւ դաշտին մէջերը կը հանէր, ուր որ նոյն դաշտէն անցնող գետակ մը իր մէջը կ'ընդունէր։ Ձեռամբ ծածկուած երկրի մը վրայ աստին անդին գեղեցկատեսիլ կանանչութիւն կ'երեւար, որուն վրայ կեցած ցողի կաթիլները մարգրտի պէս կը փայլէին։ Երկինքը պայծառ ու կապուտակ էր, եւ աս տեղը ուրիշ կողմերէն քաղցր օդ մը կը տիրէր։ Նաւուղիղն երիտասարդներուն մեկնեց թէ ի՛նչպէս մինչեւ նոյն ատեն տեսած սառուցեալ կողմերնին՝ ատանկ յանկարծական փոփոխութիւն մը կրնայ ունենալ։ Հովիտն ահագին ժայռերով պարըսպարուած էր հիւսիսային եւ արեւելեան հովէն. իսկ հարաւային կողմանէ բաց ըլլալով, արեւը՝ որ ամառուան ատեն հինգ ամիսի չափ հորիզոնին վրայ կը կենայ, կըր-

նար ամենայն զօրութեամբ նոյն հովիտը տաքցընել. ջերմութիւնն ալ հովիտը պատող խճաքարէ ժայռերէն ցոլանալով, կրնար առ հիւսիսային կողմը ստորին մեծ սառուճանք մը հալիլ եւ այնպէս անկից ապագածում մը պատճառել. եւ որովհետեւ շատ ժամանակ չէր որ ամառն անցած էր, անոր համար դեռ պաղն ամէն անկերը չէր կրցած ապականել:

Երեք ճամբորդները ճամբէ մը վար իջան, որն որ նոյնպէս մարդու ձեռքով շինուած կ'երեւար, բայց այնպէս ցից էր, որ իջած ատեննին՝ միակերպ իյնալու վտանգի մէջ էին եւ քանի մ'անգամ ոտքերնին սահելով՝ անդնդոց մէջ գահավիժելու վտանգի մէջ ինկան: Կարճ օրուան մէջ՝ առանց ատեն կորսնցընելու՝ ուզեցին հովիտը բոլոր պտըտիլ: Աչքերնուն պատահած առաջին առարկան եղաւ պարանոցին եզերքը շատ փայտէ կոտորներ: Քիչ մը մտածելով մակաբերեցին, որ աս գերաններն ու ծառի բները հոս նետողը՝ իրենց այնչափ անձկութիւն պատճառող վերջին մըրրիկն եղած պի'տոր ըլլայ:

Հիւսիսային Ամերիկան, ըստ նաւուղիղը, ըստ մասին խիստ ընդարձակ անտառներով ծածկուած է: Մեծ գետերը շատցած ատեննին՝ երբեմն անտառէն ամբողջ ծառեր խլելով՝ դէպ ի ծով կը մղեն: Հողմն ու մրրիկը զանոնք մինչեւ աս ափեր կղզին կը բերեն, ուր ամենեւին ծառ մը

չանձելով՝ փայտի չքաւորութիւն կը տիրէ։ Հոն եզները մեալով, բնակչաց ձեռքը միջոց կու տան սա աՀագին ցրտէն իրենք զիրենք պաՀպանելու։ Այսպէս Նախախնամութիւնն ամէն կերպով կը Հոգայ երկրիս չորս կողմը ցրուած մարդիկները, որ մէկն ալ չկորսուի։

Ճամբանին դէպ ի գետին երկայնութիւնը յառաջ տարած ատենին՝ Ալեքսի տեսաւ որ անոր եզները տեղ տեղ դդալխոտով ու Ջրային կոտեմով ծածկուած էր եւ քանի մը կոտր փրցընելով՝ Նաւուղղին ցուցուց։ Ասիկա զքանչելի գիւտ մըն է, ըսաւ փորձառու մարդը, որուն Համար մասնաւորապէս պէտք ենք Աստուծոյ շնորՀակալ ըլլալ։ Դդալխոտին Հիւթը՝ ազդու դարման մըն է լնդացաւութեան (սկօրպիւտ), որմէ որ աս պաղ երկրիս մէջ եւ անպիտան կերակուրներով շատ դիւրաւ կրնանք բռնուիլ։ Նոյն տնկին նաեւ եփածն ալ բաւական աղէկ կերակուր կ'ըլլայ։ Կրէօնլանտացիք եւ Իսլանտացիք բոլոր ձմեռ գործածելու Համար դդալխոտը ամառը տակառներով կը Համեմեն։ Գուցէ մենք ալ նոյն եղանակաւ կրնանք գործածել։ Ջրային կոտեմն ալ նոյնպէս ան Հիւանդութիւնը կը բժշկէ եւ աղէկ ալ կ'ուտուի. անկէ ալ պաշար կրնանք պատրաստել։

Իվան դէպ ի պարանոցը յառաջ գացած ըլլալով՝ Հոն ձուկ տեսաւ։ Նաւու-

ղիզն ու Ալեքսի հովանին մէջ ուրիշ դիւ-տեր դառնալու համար պատրաստ ժամանակ՝ Իվան ուզեց աս ձկերէն բռնել: Պարա-նացին դէպ ի երկայնութիւնը քիչ մը յառաջ երթալով, ջրոյն մէկալ մասէն նեղ երկրով մը բաժնուած ճահիճ մը տեսան, որուն մէջ մեծ ձուկ մը կը շարժէր ու փուշ տեղ կ՚աշխատէր պզտիկ անջրպետն անցնելով՝ ծով մտնել: Փառք Աստուծոյ, բսաւ Իվան մեծ ուրախութեամբ, աս ձուկը մերն է, մեզի քանի մ՚օրուան կերակուր պաշար կ՚ըլլայ: Իսկզբան կը ջանար կացնով զարնելով՝ սատկեցընել. բայց անասունը փախչելով ջրոյն տակ կ՚երթար, ուր տղմուտ ջուրը կը պղտորէր, այնպէս որ ալ չէր երեւար: Վերջապէս երիտասարդը հնարքը գտաւ: Ծառի ճիւղ մ՚առնելով, բահի ձեւով տաշեց եւ անով երկրին բարձրացած մասն այնպէս մը ճղքեց՝ որ ջուրը բոլոր դուրս վազելով՝ ալ ձուկը չէր կրնար շարժիլ: Ան ատեն դիւրութեամբ մը կացնով գլխուն զարկաւ, որով ձուկն իսկ զինքը կորսընցուց. քանի մ՚անգամ ալ հարուածը կրկնելով՝ սատկեցաւ:

Իվան ձուկը ճահճէն դուրս հանեց, մաքրեց ու փորձելով խմեցաւ որ շուրջ երեսուն լիտր կրնար գալ: Կրակ կառր ընելով՝ ծառի ճիւղ մը շամփուրի ձեւով տաշեց եւ ձուկը խորվելու համար կրակ պատրաստեց: Նոյն միջոցին Ալեքսի ու Նաւ-

ուղիղն իրենց ընթացքէն դառնալով՝ Իվան ուրախութեամբ իր որսը ցուցուց: Երեքն ալ Աստուծոյ շնորհակալ եղան, որ պաշարնին լմննալու մօտ՝ իրենց կերակուր խրկեց: Նաւուղիղն ալ ասոր իբր փոխարէն՝ Իվանին լուր տուաւ որ իրենք ալ առջի գտած այրերնէն շատ աւելի մեծ ու յարմար այր մը գտան, զորն որ իրենց բնակարանին ընելու շատ համաձայն կը սեպէր. որովհետեւ հովանին արեւելեան կողմն էր, եւ նոյն խել հովիտն իրենց առջի այրին խարաձորէն աւելի բնակելու յարմար էր:

Չկէն մաս մը խորովելով՝ ախորժակով կերան: Բայց իրենց վայրկենական բարօրութիւնը՝ նաւուն մէջ մնացած դժբախտ ընկերներնին մտքերնին ձգեց: Նաւուղիղն իր վախը յայտնեց որ հաւանական է թէ մերկին զոհ եղած ըլլան: Ալեքսի եւ Իվան ալ իրենց վիճակը չէ թէ միայն համբերութեամբ կը կրէին, այլ նաեւ Աստուծոյ շնորհակալ ալ կ'ըլլային որ իրենց կեանքը պահպանեց, ուր որ իրենց ընկերները հաւանականաբար Սառնադաշտ ծովուն տակն իրենց գերեզմանը գտած էին: Կը յուսային ալ որ իրենց գլուխն եկած ամէն բան համբերութեամբ կրնան կրել:

# ԳԼՈՒԽ Թ.

## Ճերմակ արջ։

ՍԵՐԱԿՈՒՐՆԻՆ լմննալուն պէս՝ երեք ընկերք շուտ մը ճամբայ ելան նոր գտնուած այրին երթալու համար, որովհետեւ օրը լմննալու վրայ էր։ Իվան ձկան մնացած մասն ու շամփուրը հետն առաւ, իսկ Նաւուղիղն ու Ալեքսին փայտի մեծ կտորներ քաշկռտելով կը տանէին, որպէս զի անոնցմով մինչեւ առտու կարող ըլլան շարունակ կրակ վառել։ Իրենց ճամբուն վրայ այրին մօտերը մարդու հետքի նման հետք մը տեսնելով՝ ուրախութիւննին աւրուեցաւ։ Թէպէտ Ալեքսի եւ Իվան ի սկզբան կարծելով որ քիչ մը վերջը իրենց նմաններ պիտի տեսնեն, սկսան ուրախանալ. բայց Նաւուղիղը գլուխը ցնցելով ըսաւ թէ նոյն հետքը՝ ուրիշ բան չիկրնար ըլլալ՝ բայց եթէ բեւեռական վայրենի ճերմակ արջի մը հետք, որն որ այն կողմերը շատ յաճախ է։

Աս մեկնութենէն երկու երիտասարդք պաղեցան մնացին, եւ իբր թէ նոյն անասունն արդէն իրենց ետեւէն ինկած ըլլար, սկսան չորս կողմերնին նայիլ։ Նաւուղիղն իրենց իմացուց թէ ճերմակ արջը՝ միայն սաստիկ անօթի եղած ատեն՝ մարդու վնաս կու տայ։ Նոյն ճերմակ արջը հասարակ արջէն աւելի մեծ ու աւելի ծանր է, վասն զի շատ անգամ՝ մինչեւ վեցհարիւր լիտր

ծանրութիւն կ'ունենայ. գլուխն ու վիզն աւելի երկնցեր է, ձեռն ալէս ճերմակ, երբեմն նաեւ քիչ մը գորշկեկ, երկայն մազերով բոլորովին ծածկուած կ'ըլլայ։

Քանի որ ծովը սառուցներէ ազատ է, սա անասունը ձկներով, ծովու հորթով, ջրային թռչուններով ու կիտի դիակով կը կերակրի։ Բայց երբոր նոյն ճարակը կը լմննայ, ան ատեն սառուցի կտորի մը վրայ կը նստի ու հեռու տեղեր կ'երթայ որսը գտնելու. բան մ'որ չգտնէ, նոյն կերպով ետ կը դառնայ։ Երկայն ժամանակ ալ անօթի մնալու որ ըլլայ, շատ վտանգաւոր կ'ըլլայ, եւ այս կատաղութեան մէջ իր նմաններուն վրայ ալ կը յարձակի։ Մարդիկներու բազմութենէ ալ ամենեւին չիվախնար, եւ իրեն հետ կռուողներէն դժուարաւ կը յաղթուի։ Այս կենդանին Շբիցպերկի վրայ առատապէս կարգի շատ է. որովհետեւ նոյն կողմերը խիստ քիչ հեղ իրեն դէմ որս կ'ըլլայ։

Ալեքսի եւ Իվան ճերմակ արջին վրայ առանց դողալու եւ ոչ մտածել կրնային։ Բայց նաւուղիղն իրենց բաւ որ Մեր միացեալ զօրութիւնն անոր յարձակման դէմ կրնայ դնել. եւ շատ կը բաղձամ որ մէկ հատ մը մեռցընենք, վասն զի անոր մորթը, միսն ու ճարպը՝ մեզի մեծապէս օգտակար կ'ըլլայ։ Ճերմակ արջ սպաննելու ամենէն աղէկ եղանակն այս է։ Արջին մօտեցած ատենը՝ անոր առջեւը ցնցոտի մը, ձեռքնոց

մը կամ՝ ինչ եւ իցէ նիւթ մը նետելու է։ Արջին այն նետուածը մտադրութեամբ մը քննելու ատեն, մարդ բաւական ժամանակ կ'ունենայ անոր գլխուն գնդակ մը ուղղելու։ Եթէ գնդակը նպատակին չհասնի, անասու-նը կատաղութեամբ կը յարձակի զինքը գըր-գռողներուն վրայ, եւ եթէ մարդ զինքը զարնելու համար նիզակ կամ դաշոյն չու-նենայ, անշուշտ կորսուած է։

Երիտասարդները խոստացան որ ձերմակ արջ մը վրանին գայ նէ՝ ամենեւին չվհա-տին, եւ սպաննելու համար նաւուղղին օգնեն։

Այրը հասածնուն պէս՝ նոյնը լուսաւո-րելու եւ տաքցընելու համար կրակ վառե-ցին, եւ շուտ մ'ալ համոզուեցան որ նոյն տեղն արդէն մարդկան բնակարան եղած էր։ Այրը մարդիկներու ձեռքով մեծցու-ցած կ'երեւար։ Անջրպետներու վրայ նստա-րանի ձեւով խորշեր փորուած էին, եւ ատոնց առջեւը՝ քարէ շիտակ տախտակ մը կար տակը մոյթերով, որն որ կ'երեւար թէ սեղանի տեղ ծառայած ըլլայ։ Գետինը — ատահին անդրին փտտած փայտի եւ ածխոյ կտորներ կային, վերին կամարն ալ մխէն ու մեղծէն բոլորովին սեւցած էր։

Երեք բարեկամք կրցածնուն չափ շատ փայտ ժողվելով՝ այրին դրան առջեւը մեծ կրակ վառեցին. Իվան ալ իրիկուան կե-րակրոյ համար ձկան ուրիշ կտոր մը կը պատրաստէր։

Ամէնքն ալ կը յուսային որ կամ սա տեղւոյն հին բնակիչներէն մէկը կը գըտնէին եւ կամ նաւէն խորտակուած իրենց քանի մ'ընկերներուն կը հանդիպէին, կամ գոնէ մինչեւ որ զիրենք ազատելու նաւը գայ նէ՝ իրենց կենաց պահպանութեան հարկաւոր եղած միջոցը կը գտնեն։ Մինչեւ պառկելու ատեն սա անտառի մռամռմունքներ իրարու կը հաղորդէին։ Կրակին վրայ փայտ դրուեցաւ, ճերմակ արջերու դէմ հրացաններն ու կայծիկները պատրաստուեցան։ Անոնք ընելէն ետեւ՝ երկքն ալ իրենց մուշտակներուն մէջ փաթթուած՝ աղօթքնին ըրին ու քնացան։

Գրեթէ կէս գիշեր էր, մէյ մ'ալ նաւուղիղն արթննալով՝ տեսաւ որ կրակն անցած էր. ուստի նորէն փայտ դնելու համար ելաւ։ Այրին դրան մօտեցած ատեն՝ տեսակ մը զօրաւոր ու կերկերեալ հառաչելու ձայն լսելով, իմացաւ որ արջ մը մօտեցած է։ Հաւանականաբար սափկայ ձկան նետուած աղիքը գտնելով՝ կերած էր, ետքէն իր սուր հոտառութեամբն իմանալով որ այրին մէջ ուրիշ ձուկ ալ կայ, եկած էր դէպ ան կողմը գալ։ Նաւուղիղը շուտ մ'ընկերներուն ձայն տուաւ եւ ամէնքը մէկտեղ եկան նոյն զարհուրելի թշնամւոյն հետ պատերազմելու պատրաստուելու։ Հրացաններնին առած՝ դէպ ի դուռ յառաջանալով, տեսան որ արջն այնչափ մօտ էր՝ որ հազիւ քանի մը քայլ կար իրենց հասնելու։ Մու-

թէ շատ թանձր էր, այնպէս որ հրացանով նշան առնել ու նպատակին ուղղել չէին կրնար։ Նաւուղիղն անմիջապէս անտառոյն առջեւը փայտի կտոր մը նետեց։ Արջը հաստուբառաց, ու չորս կողմը դարձընելով՝ շօշափեց։ Նոյն վայրկենին հրացանին մէկուն կրակ տրուեցաւ։ Իվան հրացանը շուտով պարպելով, գնդակն արջուն գլուխը գալու տեղ՝ վզէն անցաւ։ Անասունը կատղելով՝ կրակին բոցին վրայէն ներս նետուեցաւ, եւ ետեւի թաթերուն վրայ կենալով՝ առջեւիններով կ'ուզէր իր հակառակորդացը դէմ յարձակիլ ու զիրենք պատառել. բայց արի Նաւուղիղն անոր առջեւն ելլելով սուրով կուրծքը զարկաւ, գետինը պառկեցուց։ Իվանին ու Ալեքսին տուած ուրիշ քանի մը հարուածով՝ անասունը սատկեցաւ։

Աս արջը շատ մեծ ու շատ ալ ծանր ըլլալով՝ սպաննուած տեղէն շարժելու համար երեքն ալ իրենց բոլոր զօրութիւնը պէտք էին ի գործ դնել։ Պէտք ենք Աստուծոյ շնորհակալ ըլլալ, ըսաւ Ալեքսի, զմեզ աս վտանգէն ազատելուն համար՝ եթէ արջը գալը ժամանակին իմացած չըլլայինք, երեքնիս ալ կը պատռէր։ Եւ դէպ ի Նաւուղղին դառնալով, Հաւատարիմ, բարեկամ, ըսաւ, Աստուծմէ ետքը քեզի պէտք ենք շնորհակալ ըլլալ մեր կենաց պահպանութեան համար։

Ես, պատասխանեց Նաւուղիղը, վտան-

դը՝ չէ թէ միայն ձեզմէ, այլ նաեւ ինծմէ ալ մերժեցի, իմ կեանքս պաշտպանելու պարտաւոր էի, եւ ասով՝ նաեւ ձերն ալ պահպանեցի։ Ան միայն ըրի՝ ինչ որ ամէն մարդ պէտք է որ ընէ։ Աստուած է որ ինծի զօրութիւն ու աշխուժութիւն տուաւ՝ աս ահաւոր անասնոյն յաղթելու համար. Իրեն է ուրեմն ամէն փառքը։

Իսկ արջը հիմայ մեզի շատ օգտակար է, իր թանձր մորթը՝ մեզի տաք անկողնոյ կամ պաղէն պաշտպանելու համար վերմակի տեղ կրնայ ծառայել. միսը երկայն ատեն մեզի կերակուր կը մատակարարէ, ճարպովը ալ մոմ կը շինենք։ Աս անասնոյն ամենեւին մէկ մասը մեզի անօգուտ չէ։ Խիստ պաղերն ու երկայն գիշերներն եկած ատեն, չեմ կասկածիր որ աս կենդանիներէն շատերը մեզի այցելութիւն պիտ'որ ընեն. բայց կը յուսամ որ եթէ քաջասրտութեամբ դիմացնին ելլենք, զամէնքն ալ կը սատկեցընենք. իսկ գահավէժ յարձակումը միշտ վտանգաւոր է։ Նպատակին չհասնող հարուած մը՝ աս կենդանեաց կատաղութիւնը կը գրգռէ, եւ ան ատեն իրենք զիրենք կուրօրէն վտանգի մէջ կը նետեն։ Անոր համար պէտք է անոնց հետ խոհեմութեամբ կռուիլ. որպէս զի առանց զմեզ վտանգի մէջ ձգելու՝ կարող ըլլանք զիրենք սպաննել։

Աս մեր երեք բարեկամները քնանալ չուզեցին։ Անմիջապէս սկսան արջուն վրայ

զբաղիլ. կաշին հանեցին, փորոտիքը պարպեցին ու միսը կտրատեցին։ Կաշույն տակ երկու մատ հաստութեամբ ճարպ գտան՝ զորն որ մեծ փութով ժողվեցին։ Կաշին չորցընելու համար՝ բաց օդի մէջ տարածեցին. եւքէն ալ՝ որպէս զի դիւրաթեկ ըլլայ՝ հալած ճարպով օծեցին։ Մսին մեծ կտորները, ոտուկքը, քամակը տաւեցընելու եւ երկայն ժամանակ պահելու համար դուրս պաղ օդին մէջ դրին։ Փորոտիքն ալ նոյնպէս մաքրեցին, որովհետեւ կրնար նաւքին մէջը մօտ ղնելու գործածուիլ, աղիքն ալ գալարելով պահեցին, որպէս զի հարկաւոր եղած ատեն՝ առաստանի տեղ գործածեն։ Աւելորդ եւ անգործածական մասերն իրենց բնակութենէն հեռու տեղ նետեցին, որպէս զի հոտելով՝ օդը չապականեն։

Նոյն գործողութեանց զբաղելու ատեն՝ իրենց ներկայ վիճակին եւ ապագային համար ընկերներնուն վրայ կը խօսէին ու գաղափարներ կը շինէին։ Ա՛լ հիմակ յայանի էր որ ձմեռը նոյն ամայի կղզւոյն մէջ պիտի անցընէին. ուստի եւ օրէ օր աւելի առատացող ցրտէն իրենք զիրենք պահպանելու եւ իրենց բաւական կերակուր հոգալու միջոց պէտք էին մտածել։ Բայց հարկ էր որ աճապարէին. վասն զի արեւը լերանց ետեւէն խիստ քիչ վեր կ'ելլէր, եւ պզտիկ բոլորակ մ'ընելով՝ հորիզոնին վրայ հազիւ երկու ժամ կը կենար։ Ա՛լ շատ մօտ էր հինգ

ամսուան գիշերը, որ տարին պիտի ստիպուէին շարունակ իրենց այրին մէջ կենալու, վասն զի սաստիկ պաղը, ձիւնն ու մթութիւնը՝ որն որ միայն քիչ անգամ հիւսիսայգով ու լուսնոյ լուսով կը փարատի, միանգամայն վայրենի անասունները՝ դուրսը երկայն պտոյտ ընել թող պիտի չտային:

Առ երեք դժբախտներուն վիճակը՝ հասուն կերպով մտածելով՝ իրօք շատ դժուար էր: Բայց իրենք նաւէն ելելէն ետքը՝ աստուածային պաշտպանութեան այնչափ սրտաշարժ ցոյցերը տեսած էին, որ Աստուծոյ վրայ ունեցած վստահութիւննին անշարժ մնաց: Իրենց բնակած այրը ցրտին դէմ բաւական պատսպարուած չէր՝ որ փայտի բաւական պաշար ալ ունենալով՝ կարող ըլլային ձմերուան խստութենէն պահպանուիլ: Նաւուղիղը ձորին մէջ մարդու շատ հետքեր գտած ըլլալով, միշտ կը յուսար որ անոնց բնակարանը, գուցէ գուցէ ալ քանի մը մոռցուած կամ թողտրուած կահ կարասիք գտնէ: Ուստի մտքերնին դրին որ քանի որ դեռ լոյս կար՝ երթան փնտռեն:

Ձկան ու արջին միսը մէկ ամսէ աւելի կրնար զիրենք կերակրել. բայց բոլոր երկայն գիշերուան չէր կրնար բաւական ըլլալ: Որովհետեւ Շպիցպերկի վրայ շատ արջ կայ. Նաւուղիղը կը յուսար թէ անոնցմէ դեռ քանի մը հատ ալ կրնայ սպաննել: Բայց

նոյն վայրենի անասնոց հետ կռուելը՝ խիստ վտանգաւոր էր։ Նաեւ վառօդն ալ խնայութեամբ գործածելու պարտաւորած էին, որովհետեւ աղ չունենալով՝ միսն ալ անով կը համեմէին, միանգամայն՝ ինչպէս ըսինք՝ նպատակին չհասնող մէկ հարուածն ալ իրենց վտանգաւոր էր։ Անոր համար մէջերնին խօսք ըրին որ անկէ ետքը արջերը սուինով ու կացնի հարուածով սպաննեն։ Քանի որ աս անասնոց մինակ մէկ հատին հետ էր կռիւը՝ բանը դիւրին էր, վասն զի մէկին դէմ իրենք երեք էին. բայց շատը մէկէն որ պատահելու ըլլար՝ յաջողցընելը դժուարին կ՚ըլլար։ Ի վերայ այսր ամենայնի առաջին կռուոյն յաջող ելքը՝ զիրենք անանկ քաջալերած էր, որ Ալեքսի եւ Իվան կը կարծէին թէ արջի մը հետ զատ զատ կռուելով ալ՝ կրնան անոր յաղթել։

## ԳԼՈՒԽ Ժ.

Նոր արշաւանքներ ու նոր գիւտեր։

ԵՐԿՐՈՐԴ օրը արեւը ծագելէն երկու ժամ յառաջ՝ ձորոյն մէջէն դէպ ի արեւելեան կողմը ճամբայ ելան։ Երեք ճամբորդները նորէն առատ դգալխոտ ու ջրկոտիմ գտնելով, աղէկ պաշար մը պատրաստեցին։ Պարանոցին բոլոր երկայնութեան վրայ շատ փայտ կը գտնուէր. քանի մը ծառերու վրայ ալ յայտնի կը տեսնուէր որ կացնի հարուածներով ճիւղեր կտրուած էին։

Բայց բուն փնտռածնին, այսինքն՝ մարդա-
բնակարան եղած հիւղ մը չգտան, եւ
ութը ժամէ աւելի պարապ տեղ պտըտելէն
ետեւ, յոգնած՝ այրը դարձան։ Նոյն իրի-
կունը դարձեալ մէջերնին խօսք ըրին որ
երկրորդ օրը նոր արշաւանք մ'ալ ընեն դէպ
ի ծովին արեւմտեան կողմը եւ մինչեւ պա-
րանոցին բերանը յառաջ երթան։ Աս
ճամբորդութեան ամէն հարկաւոր պա-
տրաստութիւնները տեսան. արջուն մսէն
ու ձկէն ալ երկու օրուան համար հետեր-
նին առնելու պաշար պատրաստեցին։

Հանդարտ քնով մը զօրանալէն ետեւ,
արշալուսէն երեք ժամ յառաջ աղէկ զի-
նած՝ ճամբայ ելան, Աստուծոյ աղօթք մա-
տուցանելով որ իրենց ընթացքն օրհնէ։
Ճամբուն վրայ ժայռերուն ամէն ծերպերը
կը քննէին, ամէն կողմ աղէկ կը դիտէին։
Ամէն տեղ հանդիպած հետքերէն կ'իմա-
նային որ ատեն մը նոյն կողմերը մարդիկ
բնակած պիտի ըլլան, բայց տեղ մ'ալ ա-
նոնց բնակարանը չէին կրնար գտնել։ Ա-
մէն կողմ կտրուած ցցեր ու տախտակներ,
կէս մ'այրած փայտեր տեսնելով, իրենց
կարծեաց մէջ միշտ աւելի կը հաստա-
տուէին թէ զանոնք գործածողներուն բնա-
կութեան տեղը հեռու պիտի չըլլայ, ասով
ճամբանին աւելի եւս մտադրութեամբ յա-
ռաջ կը տանէին։ Ո'րչափ աւելի որ դէպ ի
պարանոցին բերանը կը յառաջանային, այն-
չափ աւելի ժայռերը բարձր ու զարհուրելի

կ՚ըլլային. կարծես թէ բնութիւնը զանոնք ծովուն ալեացը դէմ իբրեւ թումբ մը զետեղած էր։

Վերջապէս երեք ճամբորդներն այնպիսի տեղ մը հասան, ուր ժայռերուն կարծանած դղեակներու նման ու ահագին կոյտը՝ մէկ կողմանէ ձորոյն սահման կը դնէր, մէկալ կողմանէ ալ՝ Սառուցեալ ծովին։ Հոն պարանոցը ծովին հետ կը միանար։ Որովհետեւ օրը ծագած էր, ճանապարհորդք մտքերնին դրին որ ծովուն վրայ հեռու տեղեր նայելու համար մագլելով սուր ժայռէ մը վեր ելլեն։ Հոն առջեւնին ահռելի տեսարան մը բացուեցաւ։ Ահագին սառոյցներ ջուրը կը ծածկէին. վրայէ վրայ կամ քովէ քով զարհուրելի եւ անկարգ եղանակաւ մը դիզուած սառուցի լեռներ բարձրացած էին, որոնց վրայ կը ցոլանային մտնելու մօտ եղող արեւուն ճառագայթները։ Իրենց բոլորտիքն ամենայն ինչ տխուր ու անապատ էր։ Կը տեսնէին որ բոլոր մարդիկներէ բաժնուած են, եւ ամենեւին նաւ մը չիկրնար ան կղզւոյն մօտենալ, ուստի եւ իրենց ամէն կարօտութիւնը հոգալու համար իրենցմէ ուրիշ մէկէ յոյս չեն կրնար ունենալ։ Նաեւ այնչափ նեղութեամբ ու յարատեւութեամբ փնտռըւած բնակելի խուղին յոյսն ալ թողուցին։ Ահաւոր զգածմամբք լեցուած՝ իրենց վիճակը սկսան մտածել։ Մէկն ալ չէր ուզեր անօգուտ տրտունջներով իր ընկերն

ուելի եւս տրտմեցընէին ։ Ուստի քանի մը վայրկեան տրտմելի խորհուրդներու մէջ թաղուած՝ տխուր նայուածքնին ծովուն տատանեցեալ երեսին վրայ պտըտցընելով կը կենային ։

Առանձնակ խորհրդներու մէջ ընկղմած՝ Իվան մեքենապէս իր ընկերներէն հեռացած էր ։ Մէյ մ՚ալ իր նայուածքը երկու մեծ ժայռերու մէջ մեծ անջրպետ մը ձեւացընող ճեղքուածքի մը վրայ ինկաւ ։ Մօտէն դիտելով՝ վարը պատի պէս բան մը տեսաւ, որն որ շէնքի նմանութիւն ունէր ։ Ընկերները կանչելով նոյնը ցուցուց . անոնք ալ նոյնպէս դուրս ցցուած ժայռի մը վրայ բարձրացած պատ մը տեսան ։ Աշխատութեամբ հովտին մէջ որ իջան, ինչ կը տեսնես, առջեւնին խիստ զառիվեր ժայռի մը քով քարաշէն տնակ մ՚ելաւ, որուն ծակտիքը մամռով գոցուած էին ։ Յարկի ձեւով դուրս ցցուած ժայռի մը վերի կողմը՝ մուխ դուրս ելլելու համար ծակ մը կար, եւ պատը մինչեւ վեր սեւցած էր ։ Տնակին առջեւի կողմը գոց դուռ մը կար . երկու երեսներն ալ մէյ մէկ պատուհան փեղկերով . իսկ չորրորդ կողմը՝ ժայռերու կռթընած էր ։ Տան բոլորտիքը լայն ու խորունկ խրամ մը կը պատէր, որուն ներքին կողմը չխտակ քարերով պատի պէս հիւսուած ըլլալով՝ մէջն իջնալը դժուար էր ։ Դրան առջեւը շարժական կամուրջ մը դրուած էր ։ Դիրքն ալ անանկ աղէկ էր, որ չէ թէ միայն

ամէն հովերէն կը պահպանուէր, այլ նաեւ մարգ անկէ ծովէն ու ձորոյն մեծ մասին տեղքն ալ կը վայելէր։

Երեք բարեկամք աս գիւտին վրայ այնպէս ուրախացան որ իրենց տխրութիւնը յանկարծակի ցնծութեան փոխուեցաւ։ Բարերարն Աստուած զմեզ աս տեղը առաջնորդեց, ըսին. ինչպէս կրնանք ասկէ ետքը վհատիլ, որովհետեւ Աստուած այսպէս յայտնի եղանակաւ մեզի հետ է։

Իմանալու համար որ տան մէջ բնակիչ կա՞յ՝ թէ չէ, սկսան բարձր ձայնիւ կանչել։ Բայց պատասխան տուող չեղաւ։ Ան ատեն խրամին մէջ ցատքեցին. եւ փոփոխակի մէկզմէկ վեր վերցընելով՝ պատին վրայէն մինչեւ դուռ հասան։ Զարկին. նոյնպէս պատասխան չկայ։ Իվան պատուհանի մը փեղկը բացաւ։ Մէջը թանձր մութ մը կը տիրէր ու նեխութեան զարշելի հոտ մը սկսաւ դուրս բուրել. երկրորդ պատուհանին փեղկն ալ բացին։ Ներսը խաղաղ ու անբնակ կ'երեւար։ Վերջապէս Իվան նոյն պատուհաններուն մէկէն ներս մտնելու սիրտ ըրաւ։ Ապականած հոտ մը քիչ մնաց զինքը կը խեղդէր. շուտ մը դուռը բանալով՝ օդը նորոգուեցաւ, եւ Նաւուղիղն ու Ալեքսի ալ ներս մտան։ Որովհետեւ իրիկուն եղած էր, Նաւուղիղը ջահ մը վառեց, զորն որ արշաւանքներնուն ատենը միշտ հետերնին կը կրէին. ասով տեսան թէ տնակը ներսի կողմանէ աստաղձով պատած էր. ամէն ծակ–

տիքները մամուռով աղէկ գոցուած էին, եւ տա փայտեայ միջնորմը պատով շրջապատած ու ժայռին կամարովը ծածկուած էր ։ Պատին առջեւը նստարաններ կային, որոնց մօտ սեղան մը դրուած էր ։ Անկից զատ՝ գտան նաեւ կացին մը, քանի մը թի, տորմուխ, շամփուր, պզտիկ կաթսաներ, գչիր մը, քանդակագործի մը, մուրճ մը, ու սղոց մը, որոնք իրենց մեծապէս հարկաւոր կրնային ըլլալ ։

Երկու կողմին պատերուն՝ ժայռին դպած կողմը, ժայռը, ինչպէս որ դիւրաւ կ'երեւար, մարդու ձեռքով փորուած խուռջ մ'ունէր ։ Աջ կողմը շիտակ քար մը կը յառաջանար՝ որն որ կրակարանն էր. վրան ծակ մը կ'երեւար՝ ուսկից ծուխը կրնար դուրս ելլել, որն որ կափարչով մ'ալ կրնար գոցուիլ ։ Կրակարանին վրայ երկու հատ երկըթէ սաներ գտան, որն որ իրենց մեծ ուրախութիւն պատճառեց, վասն զի անոնց մէջ կրնային դիւրութեամբ իրենց կերակուրներն եփել. Նոյն տեղը սկաւառակ մը ու երկըթէ երրորդ սան մ'ալ գտան ։ Աս ծանրագին գործիքներուն ժանգով պատած ըլլալը կը ցուցընէր թէ նոյն տեղւոյն բնակիչները շատոնց թող տուած գացած էին ։ Առջի բնակիչներուն ինչ եղած ըլլալը չէին կրնար գուշակել. բայց շուտով իրենց տարաբաղդն իմացան ։

Ջահին լուսովն աղէկ մը ամէն անկիւնները դիտելով՝ ճեղք մը տեսան, որն որ

կ'երեւար թէ այրին նեղքին կողմերը կը տանի։ Իվան շուտ մը սկսաւ ան կողմը յառաջանալ. բայց ջահը մարելու սկսաւ, եւ խոնաւ ու ապականած օդ մը զինքը ետ մղեց։ Նաւուղիղը գետնի տակ երկայն ժամանակ փակուած օդին միասնակար հետեւութիւնները ճանչնալով, երկու երիտասարդաց ապսպրեց որ օդը չմաքրուած՝ ներս չմտնեն; ապա թէ ոչ՝ կրնան անզգայ մնալ։ Արդ փայտ ժողվելով՝ մեծ կրակ մը վառեցին, եւ կրակը կրցածնուն չափ ներս դէպ ի խոռոչը մղեցին։ Կրակը բաւական ժամանակ վառելէն ետեւ՝ նաւուղիղը խոռոչին մէջ հրացան մը պարպեց եւ ետքը զգուշութեամբ ներս մտան։

Մուտքն երթալով կը լայննար ու մեծ այր մը կը տանէր։ Ջահին լուսաւորութեամբը, մէկէն ի մէկ՝ թանձր մուշտակներու մէջ փաթթուած, գորշ ու երկայն մօրուքը, աթոռի մը ետեւ նստարանի մը վրայ նստած ու այրին անջրպետին կռթնած անշարժ կեցող մարդու կերպարանք մը տեսնելով՝ վախերնէն ետ ետ քաշուեցան։ Աս տեսարանն այնպէս յանկարծական եւ այնպէս ահաւոր էր, որ երեսներնուն գոյնը նետեց եւ ուզեցին ետ դառնալ։ Նախ նաւուղիղն ինք իրեն գալով՝ ըսաւ. Պէտք է որ ատիկայ մեռած մարդ մ'ըլլայ, վասն զի եթէ կենդանի ըլլար՝ հրացանին ձայնէն կ'արթըննար։ Մերձենանք ու մօտէն քննենք։ Ալեքսի ու Իվան դողալով մը մօտեցան եւ տե-

տան որ իրենց այնչափ վախ պատճառողը՝ անկենդան եւ արդէն չորցած մարդ մըն էր ։ Զինքը շարժած ատեննին՝ մուշտակի մազերն ու զգեստները փոշւոյ պէս սկսան թափիլ ։ Ուստի իմացան որ սա մարդը շատ ժամանակէ վեր նոյն այրին մէջ ամէն մարդ-կային օգնութենէ զրկուած՝ մեռած է ։

Աս գիւտը զամէնքն ալ տխրեցուց ։ Ան մարդը հաւանականաբար մըրկէ մը նոյն կղզւոյն վրայ նետուած էր, գուցէ շատ ընկերներով, եւ ա՛լ կարող չէր եղած ան-կէ ելլելու ։ Ասանկով իր տխուր գոյու-թիւնը՝ այսպէս լքեալ վիճակի մէջ լմըն-ցուցած էր ։ Գուցէ իրմէ յառաջ իր բոլոր ընկերները մեռնելով, ինք միայն մնացած էր, որով եւ ոչ ... կարող եղած էր զին-քը թաղել ։

Կրնայ մեր վախճանն ալ սա կերպով ըլլալ, ըսին Ալէքսի ու Իվան. կարելի է որ մենք ալ շատ տարիներ աս ամայի կղզւոյն վրայ դժբախտ կեանք անցընելէն վերջը՝ ե-տեւէ ետեւ մեռնինք ։ Ան ատեն՝ վա՜յ ա-մենէն ետքը մեռնողին ։

Գլուխնիս դժբախտ բան մը հասածին պէս՝ պէտք չենք այսպէս թերահաւատ ու յուսահատ ըլլալ, պատասխանեց Նաւու-ղիղը ։ Աստուած մինչեւ հիմայ սքանչելեօք չօգնե՞ց մի մեզի ։ Աս ձմերուան բնակարանն ու մէջի գործիքներուն գիւտն ընել տա-լով՝ նոր բարերարութիւն մ'ալ չըրա՞ւ մի մեզի ։ Զմեզ իր մասնաւոր պաշտպանու-

թեան տակն առնելը յայտնի չէ՞ մի։ Ուրեմն կրնա՞նք մի յուսահատիլ։ Երախտագիտութեամբ մը Աստուծոյ մեզի բրած բարիքները մտածենք,՝ եւ ետքէն գուցէ ամենեւին գլուխնիս չգալու չարիքներէն յառաջուընէ չվախնանք։ ՅԱստուած վըստահ ըլլանք, իրեն կամացը հետ միաբանինք, եւ Նախախնամութեան օգնականութեամբը մեր վիճակը լաւացընելու միջոցներ գտնելու ջանանք։

Նաւուղղին՝ առ ներքին համոզմամբ ուսրտանց խօսած խօսքերը՝ երիտասարդները քիչ մը զօրացուցին. բայց իրենց երեսը տրտում ու տխուր կ՚երեւար։ Թէպէտ Նաւուղիղն ալ ուրախ մը չէր, բայց ջանաց զբաղմամբ իր բարեկամներուն տրտմութիւնը ցրուել. վասն զի զբաղումը՝ տրտմութեան դէմ ազդու դարման մըն է։ Նախ ուզեց իրենց միտքը տխուր խորհրդածութիւններով լեցընող տեսարանն աչուըներնուն առջեւէն վերցընել։ Իրենց առջեւը դրաւ որ ան շատ ժամանակէ վեր մեռած մարդը թաղելն իրենց պարտքն է։ Աս խօսքին ճշմարտութիւնը ճանչնալով, տնակին մէջ գտնուած գործիքներով՝ խրամէն դուրս թեթեւ աւազ եղած տեղ մը փոս մը փորեցին, եւ մարմինը մէջը դնելով՝ վրան ծածկեցին։

Աս անծանօթի մը թաղման հանդէսը տխրական գործողութիւն մըն էր, գլխաւորաբար պարագայից համար, որուն թախ-

ծեալ սոսկ ձեռք զարկին։ Վերջապէս բարեպաշտ նաւուղիղը սկսաւ խօսիլ եւ ըսաւ. Թող ի խաղաղութեան հանգչի. օրհնենք իր գերեզմանը։ Բայց մենք նոյնին քով՝ Աստուծոյ վրայ ունեցած վստահութիւննիս ամենեւին չկորսընցնելու, իրարու օգնելու եւ Աստուծոյ մեր վրայ խրկած ամէն վշտերը համբերութեամբ կրելու խոստումնիս նորոգենք։ Իր բարութիւնը մեր վրայ մեր զօրութենէն վեր բան չիխրկեր. եւ եթէ աս ամայի տեղէն ազատիլը մեզի օգտակար է, նոյն շնորհքն ալ անշուշտ կ'ընէ մեզի։ Երիտասարդները ձեռուընին երկընցընելով նաւուղղին՝ զորն որ հօր պէս կը պատուէին, սրտանց խոստացան որ իր խրատները կը բռնեն։

Անկից իրենց բնակած այրը դառնալու համար ատենը շատ ուշ ըլլալով, որոշեցին որ նոյն գիշերը տնակին մէջ անցընեն, եւ երկրորդ օրը երթան արջու մորթին ու միսը եւ ձկան մնացած մասն իրենց նոր բնակարանը բերեն եւ ձմեռը հոն անցընելու համար կարգաւորուին։ Գիշերը վառելու համար բաւական փայտ ժողվելով ու մնացած պաշարնին ուտելով՝ մեռելին գտնուած այրն աւելի մտադրութեամբ քննեցին, եւ ուրիշ օգտակար բաներ ալ գտան։ Սեղանին վրայ կանթեղ մը կար։

Մեր ջահերը լմննալու վրայ էին, ըսաւ նաւուղիղը, բայց արջու ճարպը հալե-

ցրնելով ու թաշկինակներնէս պատրոյգ շինելով՝ աս կանթեղին մէջ կրնանք վառել ու լոյս ալ ունենալ։

Եղբէն գտան նաեւ դանակ մը ու պատառաքաղ մը, անձեռոց ու արոյրէ սկաւառակ մը, պտուկ մը, բաժակ մը, արջի շատ մորթեր ու փախաթ մը, բայց աս վերջինները կէս մը փտտած էին։

## ԳԼՈՒԽ ԺԱ.

### Ավերու դէմ երկրորդ խուժ մը։

ԵՐԿՐՈՐԴ օրը ճամբայ ելան մէկտեղ այրին մէջ թողուցածնին բերելու համար։ Առանց պատահարի մը նոյնին մօտեցան. օրը ծագելու սկսած էր, եւ հորիզոնին վրայ լուսաւոր բոլորակ մը կ'աւետէր արեգական ելլելը, որն որ նոյն ժամանակները ժայռերուն գագաթներէն հազիւ քիչ մը վեր ելլելով՝ պզտիկ շրջան մը կ'ընէր ու նորէն աներեւոյթ կ'ըլլար։ Նաւուղիղն՝ իր հիւսիսային կողմերն ըրած առջի ճամբորդութիւններէն գիտնալով որ արեւը քիչ մը վերջը երկայն ժամանակի համար իրենց Մնաս բարով պիտի ըսէ, աս բանս շատ ցաւով տեսաւ։ Ի վերայ այսր ամենայնի երկու երիտասարդները նորէն չտրտմեցընելու համար այնպիսի վայրկենի մէջ՝ որ սիրտ առած կ'երեւային, աս ամէն բաները սրտին մէջ պահելով՝ անոնց չյայտնեց։

Արդէն այրին մօտեցած էին, մէյ մ'ալ

մէկ մեծ մէկ պզտիկ առջը առնելով՝ զարհուրեցան։ Անոնք իրենց մեռցուցած արջուն փոքրիկը կ'ուտէին։

Բարեկամք, բառ. նաւուղիղը, հօր մեռագրութիւն ու խոհեմութիւն պէտք է։ Անասուններն որսալը դիւրին է. թէպէտ եւ իրենց հետ կռուելու ենք, բայց իրենց մուշտակը, միսն ու ճարպը՝ մեր աշխատութեան վարձքը կ'ըլլայ։ Անոնք երկուք են, իսկ մենք՝ երեք. իմ աս կենդանեաց հետ կռուիլս՝ առաջին անգամս չէ։ Ուրիշ բան պէտք չէ, բայց եթէ քաջութեամբ եւ զգուշութեամբ դիմացնելին ելլել։ Անոնք իրենց հակառակորդներուն վրայ ամենեւին չեն ցատքեր. հապա ետեւի թաթերնուն վրայ կեցած՝ կը վազեն. եւ առջեւի թաթով հարուած մը տալով՝ դէմքնին ծակելու կամ զարհուրելի կերպով գրկելով խղդելու համար անվախ յառաջ կու գան։ Հրացան պարպելը կրնայ գուցէ զիրենք միայն կատղեցընել ու աւելի զազանացընել։ Անկէ զատ՝ պէտք ենք նաեւ վառօդին ալ խնայել։ Ուստի պէտք է սուիններով կռուիլ եւ անոնց կուրծքը խոցել։ Ես մեծին հետ կը կռուիմ, Իվան պզտիկին առնէ. իսկ Ալէքսի մեր երկուքէն՝ վտանգի մէջ իյնողին օգնէ։ Հիմայ նայեցէք որ հրացաններդ խայծ ունի՞, սուինը հաստատու՞ն է։ Նաեւ իւրաքանչիւր ոք իր կացինն ալ հաստատուն բռնէ՝ որ հարկաւոր եղած ատեն գործածէ։

Աս խօսքերը լսած ատեններն՝ Իվանին ու
առաւել եւս Ալեքսիին սիրտը կը զարնէր.
եւ կը բաղձային որ վտանգն անցած ըլլար։
Նաւուղիղը զիրենք քաջալերեց որ արիու-
թիւննին չկորսնցընեն, վասն զի կռիւը
վտանգաւոր չէ։ Աս եղանակաւ քառորդ-
կեցի մը չափ արջերուն մօտեցած էին։
Նաւուղիղը մէյ մը պոռաց։ Արջերը վայ-
րենի նայուածքնին դէպ ի անոնց դարձը-
նելով՝ թաթանին կնճիթնին մաքրեցին,
եւ առանց եկողներուն միտ դնելու՝ ակռան
ուտելնին յառաջ տանիլ։ Երեք մարտիկ-
ները բարձրկեկ տեղ մը կեցած էին. Նաւ-
ուղիղն արջերուն վրայ մեծ քար մը գլո-
րեց։ Նոյն քարը զիրենք քիչ մը անհան-
գիստ ըրաւ, նորէն իրենց հակառակորդ-
ներուն նայելով՝ քարին վրան ինկան եւ
բարկութեամբ ասդին անդին դարձուցին։
Ուրիշ ուղղութեամբ երկրորդ քար մ'ալ
գլորեցաւ վրանին։ Պզտիկ արջը դէպ ի
ան կողմը գնաց եւ այսպէս իրարմէ բաժ-
նուեցան։ Նաւուղիղը քանի մը քայլ ալ
մեծ արջին մօտեցաւ. իսկ Իվան՝ դէպ ի
պզտիկին։ Ալեքսի հարկաւորութեան ա-
տեն կամ մէկուն կամ մէկալին օգնու-
թեան հասնելու համար ետեւ մնաց։

Արջերը ակռանին կրճտելով ու մռնչե-
լով՝ անոնց դիմացն եկան. եւ քանի որ
հեռուէն իրենց հակառակորդաց դէմ կան-
գնուեցան։ Նաւուղիղն իր թշնամւոյն մտա-
դրութեամբ մը նայեցաւ, մօտեցաւ եւ երբ

որ արջն ալ թաթը վեր կը վերցընէր իրեն զարնելու, արդէն ինք սուրին անոր կուրծքը խոթած էր։ Ճարտար շարժմամբ մը սուրինը հրացանէն բաժնելով՝ անասնոյն մարմնոյն մէջ մտուած ձգեց։ Արջն ինկաւ, բայց ուզեց ելլել։ Ան ատեն նաւուղիղը գլխուն ուժգին հարուած մը տուաւ, որով ան-շարժ մնաց եւ բանը դիւրութեամբ լմնցաւ։

Պզտիկ արջը ծերոյն պէս քաջ չէր ե-րեւար. իսկզբան կը վախնար Իվանին հետ կռուելու, որն որ նոյնպէս, չէր ուզեր կռուիլ։ Անասունը քանի մը քայլ ետ քաշուելով՝ մեծ արջին կողմը կը նայէր։ Բայց երբ տեսաւ թէ անիկայ իր արեան մէջ թաթխուած մնացեր է, կատղելով՝ գազանութեամբ մը Իվանին վրան յար-ձակեցաւ։ Իվան սուրինն անոր մարմնոյն մէջ մխեց։ Բայց նաւուղղին պէս աղէկ չհանդիպցընելով՝ սուրինը կուրծքին վարի կողմը մտած էր, եւ վէրքը մահաբեր չէր։ Արջն Իվանին հետ նորէն կռուելու հա-մար՝ ելաւ կանգնուեցաւ. բայց Ալեքսի՝ որ միայն քանի մը քայլ հեռու էր եւ ամէն շարժումները կը դիտէր, գլխուն շուտով հրացանի գնդակ մը հանդիպցընելով՝ գե-տինը փռեց։

Կռիւն ասանկ յաջողութեամբ լմնցնե-լով՝ երեք ընկերները շատ ուրախացան։ Ալ հիմայ ձմերուան համար առատ պա-շար ունէին։ Արջերը տեսած ատենին՝ մտածելով որ չըլլայ թէ անոնք այրին մէջ

գտնուած պաշարներուն հատն առած եւ սպառած ըլլան, շատ անհանդիստ կ՚ըլլային: Հիմակ ամէն հոգն ու անհանգստութիւնն անցած էր, եւ Ալէքսի ու Իվան աս անտառոց պատսպարած ատենը կրած վախերնին մոռցան: Այսպէս մարդուն կենաց մէջ ուրախութիւնն ու ցաւը մէկզմէկ յանկարծ կը փոխանակեն. անոր համար գլուխնիս դժբախտ դէպք մը եկած ատեն՝ պէտք չենք վհատիլ: Ցաւը միշտ չիտեւեր. համբերութիւնը նոյնը տանելի կ՚ընէ մեզի, եւ ատեն մը կու գայ որ դժբախտութեանց յիշատակն ալ կը մոռցուի: Բարեբարն Աստուած իմաստութեամբ այսպէս կարգադրած է:

## ԳԼՈՒԽ ԺԲ.

Պաշարները նոր բնակարանը կը փոխադրուին:
Նոր գիւտեր եւ հոգ:

ԵՐԵՔ բարեկամք այս վտանգին յաջողութեամբ անցնելուն համար փոփոխակի իրարու ուրախակից կ՚ըլլային, եւ իրենց յանկարծ այսպէս առատ պաշար մը խրկելուն համար՝ Աստուծոյ շնորհակալութիւն կը մատուցանէին: Նախ պզտիկ արջն այրը քաշեցին, հոն մորթը հանելով՝ միսը կտրտեցին: Այրին մէջ ամենեւին արջ չէր մնացած, եւ այսպէս՝ ամէն բան տեղն էր: Մեծ արջը՝ որ գրեթէ վեցհարիւր լիտր կը կշռէր, շատ դժուարութեամբ այրը կրցան բերել՝

Ծովը դրան առջեւը կրակ վառելով՝ աղէկ խորված մը պատրաստեցին. վասն զի բռած ճամբաներնուն երկայնութիւնը, կրած վտանգներն ու արջերը ներս բերելու աշխատութիւնը զիրենք սաստիկ յոգնեցուցած ու անօթեցուցած էր։

Իվան միսը խորվելու ատեն, Ալեքսին ու Նաւուղիղը պզտիկ արջին մորթը հանելու եւ միսը կտրտելու կը զբաղէին։ Աս միսը խիստ փափուկ կ'երեւար, իսկ մորթն աղէկ վերմակ կրնար ըլլալ։ Մեծ արջը մաքրելն ու պատրաստելը՝ երկրորդ օրուան ձգեցին։ Կերակուրնին ուտելէն ու Աստուծոյ շնորհակալ ըլլալէն ետքը՝ պառկեցան ու հանգիստ քնացան։

Երկրորդ օրը առտուանց կանուխ երեք բարեկամք պաշարները դիւրին կերպով մէկալ բնակութիւնը տանելու միջոց մը փընտռեցին։ Նաւուղիղը խորհուրդ տուաւ որ կողով կամ բալխիր մը շինեն եւ ամէն բան մէջը դնելով դէպ ի տնակը տանին։ Աս բալխիրը շինելու համար ո՛րչափ բան կը պակսէր։ Բայց կարօտութիւնը հնարագէտ կ'ընէ։ Բալխիրին տակի կողմանն համար հարկաւոր եղած փայտը շուտով գտնուեցաւ եւ կացնով շտկուեցաւ։ Իսկ վրայի տախտակներին իրարու հետ հաստատելու գամ չունեէին. անոր համար արջուն աղիքներովը կապեցին։

Որովհետեւ տանելու բեռներնին իրենց զօրութենէն վեր էր, որոշեցին որ մեծ

արջին այրին մէջ թողուն, եւ նախ մէկալ պաշարները տանին: Երկու արջերուն մորթերը բալխրին վրայ տարածելով՝ բոլոր միար վրան դրին: Աս ամէն պատրաստութիւնները գլուխ հանելու համար՝ երկու օր պէտք եղաւ: Երթալէն յառաջ՝ այրին դրան առջեւը քարերով թումբ մը շինելով աղէկ մը գոցեցին. որպէս զի գայլերը, աղուէսները կամ ուրիշ կենդանիք ներս եղող արջուն այցելութեան չելլեն:

Ճամբուն անհարթ ու խորտուբորտ ըլլալուն եւ բեռան ծանրութեան համար շատ դժուարութիւններ կրելով, տասնուերկու ժամ ճամբայ ընելէն ետքը՝ նոր բնակարաննին հասան: Հոն ամէն բան իրենց թող տուած վիճակին մէջ գտան: Իրենց պաշարը հանգեղը պարպելէն ետքը՝ առջի փոյթերնին եղաւ բալխրնին աւելի կարգաւորել. եւ որովհետեւ հոն ողջ ու դչիր ունէին, փայտէ սեպերով հաստատելը դժուար չեղաւ: Աս բանս իրենց օր մը կորոընցընել տուաւ: Գիշեր մ'ալ հանգչելէն ետքը՝ մեծ արջին առնելու համար բալխրով այրը դարձան: Ճամբան վայրենի կենդանեաց հետքեր տեսան, որոնք գէթ ի այրն եկած էին, բայց քարէ թումբը ներս մտնելնին արգելած էր: Մեծ արջը կտրելով մաքրեցին, որպէս զի ան ծանր բեռը քիչ մը թեթեւցընեն, եւ իրենց անօգուտ եղած մասերը հեռու տեղ մը նետեցին: Երկրորդ օրը միւս մեծ դժուա-

րութեամբ նոր բնակարանը տարուեցաւ, ուր նաւաբեկեալները շատ յոգնած հասան։

Հետեւեալ օրերը բոլոր ճարպը կաթսայի մը մէջ հալեցուցին եւ անով իրենց կանթեղը լեցուցին։ Միսը դուրսը պաղի մէջ դրին, որպէս զի սառի եւ այնպէս երկայն ժամանակ պահուի։ Աղուէն անդիէն շատ փայտ բերին եւ տնակին դիմացը դրին։ Կամուրջը խրամին վրայ հաստատեցին եւ այնպէս կարգաւորեցին որ ուզած ատեննին վերցընեն, որպէս զի ամենեւին կենդանի մը իրենց բնակարանը կարող չըլլայ գալ։

Աս աշխատութիւնները շատ օրերու կարօտ ըլլալով, իրենց տխուր վիճակը մտքերնէն ելաւ։ Ամէն լմընցած գործք իրենց մեծ ուրախութիւն կը պատճառէր, հոգինին կը զուարթացընէր եւ տխուր խորհուրդներն իրենց վրայէն կը ցրուէր․ որովհետեւ զբաղումը՝ միայն թէ Աստուծոյ ամենակարողութեան եւ բարութեան վրայ վստահութեան հետ միացած ըլլայ, տըրտմութեան դէմ ազդու դարման է։

Երբոր ամենէն հարկաւոր գործքերը լմընցան, երեք բարեկամք սկսան այրն աղէկ մը դիտել, տեսնելու համար որ արդեօք առջի բնակչէն մնացած ուրիշ օգտակար բաներ ալ կրնա՞ն գտնել։ Տեսան որ ետեւի կողմերը ծխնիքով կախուած դրան նման տախտակով գոցուած մուտք.

մը կայ ։ Բանալով՝ երկայն նրբագաւիթ մը մտան, որուն վրայ ժայռերը բնական կամար մը կը ձեւացրնէին. Նոյն գաւիթն ալ մեծ այր մը կը տանէր, ուր զանազան ուղղութիւններով այլեւայլ նկուղի նման բաժանումներ կային ։ Բնութիւնն ալ այրը ժայռերուն ներսի կողմը զարմանալի եղանակաւ մը շինած էր ։ Չոր աւազով ծածկուած գետնէն մինչեւ կամարը զանազան ձեւերով սիւներ կը բարձրանային, եւ այնպէս կ'երեւար իբր թէ կամարը բռնողն իրենք ըլլան ։ Ամէն կողմ չոր էր. շատ տեղեր մարդու ձեռքով փորուած խոռոշներ կ'երեւային, որոնք բան պահելու կրնային ծառայել ։ Ան կողմերն իրենց մէկ պաշարը պահելու շատ յարմար տեսան ։ Աս ծակերը կանթեղին լուսովն աղէկ մը քննելով՝ կպրով ծեփած տակառ մը գտան, որուն մէջ շատ աղ կար ։ Ի՞նչ ուրախութիւն, ինչպէս աս գիւտին համար Աստուծոյ շնորհակալ եղան ։ Մինչեւ նոյն ատեն ստիպուած էին իրենց միսը վառօդով համեմելու, որուն համն անախորժ ըլլալէն զատ, գործածուելով՝ լմըննալու վրայ ալ էր ։ Հիմակ ալ առատ աղ ունէին ։ Նաեւ գամով եւ ուրիշ գործիքներով լեցուն աման մը գտան, որոնք իրենց շատ օգտակար կրնային ըլլալ ։

Ուրախութիւննին եւելօք շատցաւ, երբ որ դուրս ցցուած շիտակ քարի մը վրայ վառօդով լեցուն կարաս մը եւ անոր քով

գնդակով լեցուն աման մը գտան: Արդէն երկայն ժամանակէ վեր գնդակի ու վառօդի պաշարին տեղ բան մը գտնելու համար հնարք կը փնտռէին, որովհետեւ վայրենի անասուններուն դէմ իրենք զիրենք պաշտպանելու համար անոնց մեծ հարկաւորութիւն ունէին: Ա՛լ ամէն ետեւ հոգ չունէին: Նաւու լապտեր մ'ալ գտան; որն որ նաեւ կրնար իրենց հարկաւոր ըլլալ: Մէջը լեցնելու համար արդէն առատ ճարպ ունէին: Միտքերնին դրին որ նոյնը այրին կամարէն վար կախեն, որ ամէն կողմ լուսաւորէ:

Սրտերնին երախտագիտութեամբ լեցուած՝ աս բանս ի գործ դնելու համար ետ դարձած ատեննին, մէյ մ'ալ Իվան աչքը թիթեղէ տուփի մը զարկաւ, որուն մէջ կաղամար, գրիչ եւ ըստ մեծի մասին գրուած թուղթ ալ կար: Երեք նաւաբեկեալք այրէն դուրս ելան աս թուղթը քննելու համար, որն որ կրնար իրենց տեղեկութիւն տալ առջի բնակչաց վրայ՛: Գրուածն հոլանտացերէն էր եւ ըստ մեծի մասին կրնար կարդացուիլ: Ալէքսի ու Իվան նաւուղղութեան դպրոցին մէջ նոյն լեզուն սորված ըլլալով՝ կրնային աղէկ հասկընալ: Թուղթը նաւապետի մը յիշատակագիրն էր, որն որ տասը նաւաստիներով աս անապատ կղզւոյն մէջ հինգ տարի անցուցած եւ իր դժբախտութեան ընկերներէն աւելի ապրած էր: Ինքն էր

երեք բարեկամաց՝ այրին մէջ դատած ու թաղած մարդը։

Նոյն յիշատակագրէն իմացանք որ քսան ու հինգ տարի յառաջ հոլանտացի Բուրխ-յարտոյ նաւին նաւապետն ուրիշ նաւերու հետ կիտորսութեան համար Սառուցեալ ծովու մէջ ճամբորդութիւն կ'ընէ եղեր, որոնք մինչեւ 70 աստիճան լայնութեան հասեր են։ Բայց որսն ան կողմերն առատ չըլլալով՝ նաւապետը նաւատորմէն բաժնուած եւ աւելի դէպ ի հիւսիս ճամբան յառաջ տարած էր, յուսալով որ հոն առատ կէտ ու ծովու հորթ կը գտնէ։ Սառոյցներու մէջէն անցք մը գտնելով՝ այնպիսի միջոց մը հասած էր, ուր ծովն ընդարձակ տեղ սառուցէ ազատ էր։ Բայց նոյն ժամանակ հովը փոխուելով՝ այնչափ սառոյց բերաւ ու նաւին չորս կողմը դիզեց, որ ա՛լ անցքը փակուեցաւ ու արգելուեցաւ։ Սառուցի ահագին լեռներ հովէն մղուելով՝ նաւը կը ճզմէին եւ ջախջախելու կը մօտենար։ Քիչ մը ետքը բարեբախտութեամբ հովը դադրեցաւ, բայց այնպէս թանձր մառախուղ մը չորս կողմերնին պատեց, որ կեցած տեղերնէն քանի քայլ հեռու չէին տեսներ։

Նաւաստիք յուսահատեալ վիճակի մէջ ինկած էին եւ նաւն ազատելու համար բան մ'ալ չէին կրնար ընել։ Նաւապետն աշխարհագրական տախտակները քննելով՝ կ'ենթադրէր որ Նոր-Զէմլայէն հեռու չեն։

Արդ իր նաւաստեաց մէջէն չորս հոգի զի-նելով եւ աղէկ կերակրոյ պաշար տալով՝ խրկեց որ երթան նոյն երկիրը գտնեն։ Նաւը միայն քանի մը մղոն հեռու էր ան պարտանցէն՝ որուն վրայ մեր նաւաբեկեալ-ները հիմայ կը գտնուէին։ Աստուածային նախախնամութիւնը նոյն չորս հոգւոյն ըն-թացքը շիտակ առ տեղը ուղղեց եւ եր-ջանկութեամբ Շբիցպէրկ հասան, չէ թէ Նոր-Զէմլա, որն որ նոյն տեղէն շատ հե-ռու է։ Նոյն տեղը՝ կործանած հիւղ մը գտնելով, նաւ դարձան ու լուրը տուին։ Ան ատեն պաշարները ցամաք հանելու տրա-մադրութիւններն եղան եւ ասոր համար մասնաւոր բալխիրներ պատրաստուեցան։ Լուսնոյն լրացած ատենը, օդն ալ պաղ ու չոր ըլլալով, խեղճ նաւաբեկեալներն իրենց գործքն առանց վտանգի գլուխ հա-նեցին։ Նախ խիւղը քիչ մը կարգաւորեցին եւ իրենց ամէն բաներն ապահով կերպով տեղաւորեցին։ Իսկ դրսի պատերը շինելը, արջերուն ձեռքէն ազատ մնալու համար՝ չորս կողմը փոս փորելն ու այլը մեծցընելը, նոյն անբնակ կղզւոյն վրայ շատ մեծ նեղու-թեամբ խիստ ձմեռ մ՚անցընելէն ետքը գլուխ հանած էին։

Յիշատակագրոյն մէջ մանրամասն նկա-րագրուած էր թէ ինչպէս խեղճերը հինգ տարի առ կղզւոյն վրայ անցուցին, թէ իրենց կերակուրն ինչպէս կը գտնէին, եւ թէ ինչ վտանգներու հանդիպեցան եւ

ինչ թշուառութիւն կրեցին։ Այս յիշատակարանը նոր բնակչաց մեծ օգուտ ըրաւ, որովհետեւ կղզւոյն դիրքն ու որպիսութիւնը, տեղւոյն ամէն օգտակար տնկերը, անոնց աճած տեղերը եւ նոյն իսկ զանոնք ժողվելու ժամանակը մէջը մանրամասն գրուած էր։ Հոն գտնուած ամէն անասուններն ու զանոնք բռնելու դիւրին եղանակն ալ նշանակուած էր։ Նոյն թղթերուն մէջ կղզւոյն յատակագիծն ալ գտնուեցաւ, զոր որ նաւապետը շինած էր եւ որուն վրայ ամէն լեռներն ու այրերը ճշդիւ նկարուած էին։ Դարձեալ նոյն խիստ օդաքաժնէն եւ կերած անպիտան կերակուրներէն յառաջ գալու հիւանդութեանց առջեւն առնելու կամ զանոնք բժշկելու միջոցներն ալ կ'աւանդուէին։

Այս ամէն պատճառներուն համար յիշատակարանը մեր երեք բարեկամաց շատ պատուական էր. բայց անոր մէջ այնպիսի բաներ ալ կային՝ որ զիրենք տրտմութեամբ ու անձկութեամբ լեցուցին։ Տասնումէկ հոգի աս սառոյցներուն մէջ հինգ երկայն տարի անցընելով, սոսկալի խեղճութեան մէջ մէկը մէկալէն ետեւէն մեռած էին։ Ինչե՞ր չէր կրած արդեօք ան ամէնէն երկայն ապրող խեղճ նաւապետն ալ առանձնութեան մէջ՝ զինքն իր տանջանքներէն ազատող մահուընէն յառաջ։ Յիշատակագիրը մինչեւ իր հիւանդութիւնը կը հասնէր. վերջերն իր տկարութեան վրան կը խօսէր,

որով նոյն գրուածքը յառաջ տանելու անկարութեան մէջ ինկած էր։

Այս տխուր խորհուրդներով Ալեքսի եւ Իվան անձկութեան մէջ ինկան, վասն զի իրենց տրտմալի վիճակը դարհուրելի կերպով մը աչքերնին նկարեցաւ։ Աստուծոյ իրենց ըրած բարութիւնները մոռնալով, միայն աչքերնին եղած չարիքը կը մտածէին։ Յիշատակագրոյն մէջ եղած օգտակար բաները չմտածելով՝ միայն մէջի դարհուրելի պատմութիւնն աչքերնուն առջին կ'ելլէր։ Նոյն իսկ նաւուղղին սիրտն ալ յիշատակագրէն խռովածովը կտորեցաւ. բայց ջանաց որ իր տրտմութեան յաղթէ, որպէս զի երկու երիտասարդք բոլորովին չվհատին։ Հայեցուածքն երկինք վերցընելով՝ մխիթարուեցաւ։ Գլուխը շատ փորձանքներ հանդիպած էր, բայց միշտ ալ օգնութիւն գտած էր։ Անոր համար թէպէտ ցաւերն ու վշտերը երբեմն զինքը կը վախցընէին, բայց յուսահատութեան մէջ չէր իյնար. Աստուծոյ վրայ ունեցած վստահութիւնը հաստատուն էր։ Ուստի տեսնելով որ ընկերները տրտում տխուր, գլուխնին կախած եւ գրեթէ անմխիթար կը կենային, ջանաց անոնց տրտմութիւնը փարատել։ Ինչո՞ւ այսպէս կը վհատիք ըսաւ, ինչո՞ւ յոյսերնիդ կը կտրէք։ Ի՞նչ բան է՝ որ յիշատակագրին մէջ ձեզի տրտմութիւն կը պատճառէ. անոր մէջ յոյսերնիդ կտրելու ի՞նչ տեսաք։ Ան է որ

տասնումէկ դժբախտներ հոս իրենց կեանքը
կնքելու հարկադրեր են։ Բայց այս բանը
անտարբերակայ մեր գլուխը չէգար, վասն զի
ամէն տարի կիտորսներ Շբիցդէրի կու-
գան, եւ կրնանք անոնց նաւուն ալ անդէն
ազատիլ։ Գուցէ մեր նաւապետն իր ըն-
կերներուն արդէն նաւահանգիստ մը հա-
սած ըլլալով, գալու զմեզ առնելու պա-
տրաստութիւններ կը տեսնէ։ Հոս միայն
ձմեռ մը պիտի անցընենք․ բնակութիւ-
նիս արդէն նոյն ձմերուան խստութեան
դիմանալու ամէն միջոցները կը մատակա-
րարէ․ իսկ յիշատակագիրն առաջնորդի մը
պէս ընելիքնիս մեզի կը սորվեցընէ։ Նոյն
գրուածքին նայելով՝ մեր բոլորտիքը շատ
օգտակար բաներ կը գտնուին, զորոնք դեռ
գտած չենք։ Պէտք է զանոնք փնտռենք
եւ անոնցմով մեր վիճակը լաւցընելու
ջանանք։ Աստուած մինչեւ հիմայ մեզի չա-
ռաջնորդե՞ց, չպաշտպանե՞ց մի․ ինք չէ՞ մի՝
որ մեր գոյութիւնը պահպանելու համար
այնչափ միջոցներ տուաւ․ կրնա՞նք մի մեր
վհատութեամբ իր նախախնամութեան ա-
պերախտ ըլլալ․ մանաւանդ թէ Անոր ան-
սահման բարութեան պէտք չէ՞նք մի վստա-
հիլ եւ զմեզ բոլորովին Անոր առաջնոր-
դութեան յանձնել։ Մենք Աստուծոյ ձեռքն
ենք, հաստատութեամբ հաւատալու ենք որ
մեր նկատմամբ իր որոշածը՝ մեր բարւոյն
համար է։ Ուրեմն վստահ ըլլանք։ Վհա-
տութիւնը՝ միայն կրնայ զմեզ տկարացը-

նել. անոր հակառակ յԱստուած վստահութիւնը՝ ուժերնիս կ'աւելցընէ :

Նաւուղղին այս խօսքերն իրենց վրայ մեծ ազդեցութիւն ըրին : Երիտասարդք խօսք տուին որ կամքերնին Աստուծոյ կամացը հետ միաբանելով, ձեռքերնէն եկածն ընեն իրենց վիճակը լաւացընելու : Նաւուղղիչն իրենց մտածմունքներն ուրիշ բանի դարձընելու համար՝ գիշերն ու սաստիկ պաղերը գալէն յառաջ ընելիքներնուն վրայ խօսեցաւ : Պէտք է որ փայտի պաշարնիս շատցընենք, ըսաւ, շատ մը մամուռ ժողվելով՝ անկողին պատրաստենք. ունեցած մսերնիս աղենք կամ մխենք, մեր բնակարանը պատող խրամը քիչ մ'ալ աւելի խորունկցընենք, պատերն ալ պատնէշով պատենք, որ արջերը կարող չըլլան վրայէն անցնիլ :

## ԳԼՈՒԽ ԺԳ.

Երկրորդ ձմեռուան սկզբնաւորութիւնը :

Այս գործքերը զիրենք քանի մը շաբաթ զբաղեցուց : Անկէ ետեւ երկայն գիշերն ու խիստ պաղը հասաւ : Կղզին այնպիսի թանձր մառախուղով մը ծածկեցաւ, որ լուսնոյ ճառագայթները չէին կրնար թափանցել. ամենայն ինչ տխուր ու սոսկալի էր, պաղն ալ այնպէս սաստկացաւ, որ իրենց բնակարանին մէջ միօրինակ աղէկ վառուած կրակ մ'ունենալով ալ՝ հազիւ պաղէն կրնային պաշտպանուիլ : Խմելու համար կաթսայի

մէջ հալեցուցած ձիւներնին՝ կրակէն քիչ մը հեռացածին պէս՝ կը սառէր։ Նաւաբեկեալք թէպէտ պաղ օդաբաժնի մը մէջ ծնած ու սնած էին, ի վերայ այսր ամենայնի հազիւ կրնային դիմանալ սա սոսկալի պաղին, որն որ իրենց շունչն ու լորձունքը շրթունքներնուն վրայ կը սառեցընէր. իրենց թանձր մուշտակները հազիւ կրնային զիրենք քիչ մը պաշտպանել։ Անով նաւուղղին միտքն եկաւ որ ռուսական վառարան մը շինէ, որով կարող ըլլան տաքութիւնը երկայն ժամանակ պաշտպանել։ Այրին ժայռերուն մէկ ճեղքին մէջ տեսակ մը կաւ գտած էր։ Այդ ժայռին խաւ խաւ եղած մասերէն շիտակ քարէ տախտակներ հանելով ու վրան կաթսայ մը հաստատելով՝ վառարան մը շինեց, որուն մէջ կերակուր ալ կրնային եփել։ Աս աշխատութիւնը խիստ դժուար էր, առաջին անգամ չյաջողեցաւ ալ, որով պարտաւորեցան շատ անգամ սկսիլ ու աւրել. բայց յարատեւութիւնն ամէն դժուարութեանց կը յաղթէ։ Վերջապէս կրակարանը շինուեցաւ լմնցաւ, եւ անոր տաքութիւնն իրենց մեծ հաճութիւն մը պարգեւեց։

Հիմակ ալ ամէն բան կարգաւորուած էր։ Իրենց բնակարանին մէջ պաղէն պատսպարուելու համար՝ տաքութիւն, մութը փարատելու համար՝ լոյս ունէին։ Կերակուրն ալ չէր պակսեր, եւ եթէ փափ-

կամճաշակ մարդոց քիմքը չէր կրնար հաճե-ցընել նէ՝ գէթ քաղցը յագեցընելու բաւա-կան էր։ Քաղցը ու հանգիստ անկողին մ'ալ երենց յոգնած անդամները կը հանգ-չեցընէր։ Այրէն դուրս՝ միայն փայտ ժող-վելու եւ հալեցընելով ջուր ունենալու հա-մար ձիւն բերելու կ'ելլէին։

Օր մը երբոր Ալեքսի դուրս ելած էր ձիւն բերելու, տեսաւ որ դէպ ի խրամը արջ մը կու գայ։ Առջի օրը սաստիկ հով մը փչած ըլլալով՝ ձիւները ժողված ու խրամին մէջ շատ տեղեր լեցուցած էր, որն որ երեսը սաստիկ ցրտէն սառած ըլլա-լով՝ անասունը դիւրութեամբ կրնար վրայէն անցնիլ։ Երիտասարդը սաստիկ վախնալով ձեռքի ամանը դուրսը թող տուաւ, եւ պո-ռալով այրը նետուեցաւ, տեսածն իմացուց։

Հրացաննիդ առէք, ըսաւ Նաւուղիղը, այս ապաժամ հիւրը դնդակով կ'ընդունինք. որովհետեւ սուինով փորձելու համար՝ օդը շատ պաղ է։ Գուցէ մեր անդամներն ըն-դարմանալով՝ չենք կրնար հարուածնիս յա-ջողցընել։

Շուտ մը փեղկը բացին։ Օդը պարզ էր, լուսինը աղօտ լոյս մը կը ձգէր ձեան վրայ։ Արջն արդէն խրամին հասած ըլլալով, ներքին պատէն մագլելով՝ տան առջեւը հասնելու կը ջանար։ Նոյն վայրկենին Նաւ-ուղիղն ու Իվան հրացաննին այնպէս մը գլխուն շտկեցին ու զարկին՝ որ արջը փո-սին մէջ ինկաւ տապալեցաւ։

Գոհութիւն Աստուծոյ, բաւու նաւու-ղեղը որոր գիւղին ու յաջող եղաւ : Կը բաղձամ որ մօտերս դարձեալ սաստիկ այցելութիւն մ'ունենանք : Հիմակ որ վառօղ ու գնդակ ունինք, որոր գիւղաւ կրնանք գլուխ հանել : Անոնց մուշտակը, ճարպն ու միսը միշտ մեզի օգտակար է :

Արջը խրամէն հանելով՝ առաջիններուն պէս կաշեցին : Փորոտիքը գնդընկեցի մը հեռաւորութեամբ նետեցին, որպէս զի կեր ըլլայ աղուէսներու, որոնց միսն արջու մէն համով կերակուր կրնար ըլլալ իրենց : Խորամին մէջի ձիւնն ալ սկսան մաքրել, որպէս զի արջերը դիւրաւ չկարենան ներսի կողմն անցնիլ :

Աս գործքերը գործելու ատեն՝ սաստիկ պաղին պատճառաւ շատ անգամ կը պարտաւորէին ընդհատելու : Մէյ մ'ալ արջին փորոտեաց բոլորտիքն երեք աղուէսք ժողվեցան եւ իրենց ներկայութիւնը հաջելով ու մռմռալով կ'իմացընէին : Աս յանդուգն անասունները ճերմակ եւ ոմանք կապուտի զարնող գորշ են : Թաթերնին խիտ մազերով ծածկուած է, որով ձեան, սառոյցներու եւ սահուն ժայռերու վրայ դիւրաւ կրնան վազել : Որջերնին ժայռերու ճեղքուածներուն մէջ կը դնեն եւ հոն կ'ապրին . մեր աղուէսներէն աւելի պզտիկ են, բայց անոնցմէ շատ աւելի յանդուգն . ձմեռը գունդ գունդ կը պտըտին : Իրենց մուշտակը սքանչելի է եւ շատ կը

փնտռտուք. իսկ միւսորնին մեր աղուէսնե-րուն մսին դարշելի հոտը չունենալով՝ ու-տելու աղէկ կու գայ:

Փորոտիքը խիստ սառած եւ գետինը կպած ըլլալով, նոյն երեք աղուէսները կը ստիպուէին երկայն ժամանակ աշխատիլ կտոր մը փրցընելու համար: Ասանկով Նաւուղիղն ու Իվան իրենց հրացանները մանր գնդակներով լեցուցին ու իրենց բնակա-րանին դրան առջեւը կեցած՝ այնպէս աղէկ նշան առին, որ երկուքը գետինը փռեցին: Ասով իրենց աղէկ միս կրցան ճարել, ուր որ մինչեւ նոյն ատեն միայն արջի եղտա միսն ուտելու ստիպուած էին: Աղուէսուն մորթն ալ փափուկ ու դիւրաթեթեւ մուշ-տակ կը մատակարարէր: Աս երկուքին փո-րոտիքը տարին տնէն քիչ մը հեռու տեղ նետեցին, յուսալով որ անով ուրիշ ա-ղուէսներ ալ կրնան որսալ, եւ սառե-ցընելով գետինը փակցընելու համար՝ վրան ջուր ալ թափեցին, որպէս զի կարող չըլ-լան դիւրութեամբ ուտել, որով եւ եր-կայն ժամանակ կեր ըլլայ:

## ԳԼՈՒԽ ԺԴ.

### Ալֆօնէին հիւանդութիւնը:

ԸՂՈՒՒՍՈՒ մսոյն խորովածը Նաւուղղին եւ Իվանին շատ համով եկաւ. իսկ Ա-լֆօնէի՝ որն որ քանի մ'օրուընէ վեր ախոր-ժակ չունէր, անկէ ալ համ չէր առնէր:

Տրտում տխուր կ'երեւար եւ բոլոր գործ-
քերը չուզելով մը կը գործէր ։ Աս տկարու-
թիւնն օրէ օր կ'աւելնար . ընչաւորութիւնը
դժուարցած էր , վերջապէս լինդերն ուռե-
ցան եւ վրանին ալ բծեր կ'երեւար , շունչն
ալ հոտելու սկսաւ ։ Նաւուղիղն աս նշան-
ներէն ընդագարութիւն ըլլալը իմացաւ ,
որն որ ծանր , եւ եթէ որ աղէկ հոգ չտա-
րուելու ըլլայ՝ մահաբեր հիւանդութիւն
մըն է ։ Շատ անգամ նաւորդներն ու
հիւսիսային երկիրներու բնակիչներն ասկէ
կը բռնուին ։ Աս հիւանդութիւնը հա-
սարակօրէն խոնաւ օդէն , անմաքուր կե-
րակուրէն՝ կամ խմելու ջրոյն անպիտա-
նութենէն կը պատճառի ։ Բայց Նաւուղիղը
դարմանն ալ գիտէր . Նախախնամութիւնը
նոյն պաղ կողմերը՝ ուր աս հիւանդու-
թիւնը շատ յաճախ է , առատութեամբ
սփռած է ասոր դեղը , այս ինքն՝ դդալ-
խոտը ։ Ընթերցողներն արդէն կը յիշեն
որ մեր երեք բարեկամները յառաջագոյն
նոյն խոտէն առատ պաշար ժողված էին ,
զորն որ Նաւուղիղն անյապաղ գործածեց ։
Բայց դեղն իսկըզբան ազդեցութիւն չըրաւ ։

Ալեքսի այնպէս տկարացած էր , որ հա-
զիւ կրնար անկողնէն ելլել . զինքը քիչ մը
տաք բռնելու համար երկու արջու մոր-
թով ու աղուէսներու մուշտակով պէտք
էր ծածկել ։ Ուռած լինդերուն թեթեւ
մ'ալ դպչելէր՝ արիւն կու գար . ակռաները
կը շարժէին , երեսը հողի գոյն մը առացաւ ;

մորթին վրայ կապոյտ բծեր սկսան երեւալ՝ գլխաւորաբար ձեռաց ու ոտից վրայ : Խեղճ հիւանդը շատ տխուր էր, եւ անդամալոյծ դարձած էր : Նաւուղիղն ալ խիստ տրտում էր, որովհետեւ վտանգին մեծութիւնը կը ճանչնար. բայց չուզելով Իվանին իմացընել՝ անոր ստէպ հարցումներուն պատասխան չէր տար, որով անոր անձկութիւնն ալ շատ-նար : Բարեսիրտ երիտասարդը հօրեղբօր-որդւոյն քովէն գրեթէ չէր զատուեր, եւ քիչ մը բաժնուելուն պէս՝ իր տխուր մտած-մունքները կարծես թէ աւելի եւս զինքը կը նեղէին : Խեղճ Ալեքսին պիտի մեռնի, կ'ըսէր ինք իրեն, եւ պատճառն ես եմ : Ես զինքը յորդորեցի որ իր հօրը կամացը դէմ աս դժբախտ ճամբորդութիւնն ընէ : Իր վաղահաս մահն իր անհնազանդութեան պատիժն է : Իսկ իմ գլուխս արդեօք ինչ պատիժ պիտի գայ՝ որ կրկին յանցաւոր եմ : Հօրեղբօրս դէմ ապերախտ գտնուե-ցայ, եւ իր որդին ալ իրմէ բաժնեցի : Ա-լեքսի պիտի մեռնի. նաւուղիղն ալ անոր ետեւէն գերեզման պիտի մտնէ. աս ամայի կղզւոյն մէջ ես մինակ պիտի մնամ, առանց օգնութեան պիտի կորսուիմ եւ վայրենի անասուններուն կեր պիտ'որ ըլլամ : Աս պատժոյն արժանի եղայ. Տէ՛ր Աստուած, գթա իմ վրաս :

Աս մտածմունքներով Իվան դառն ար-ցունք կը թափէր : Բայց քիչ մը ետքը աղօթքով սիրտը խաղաղցաւ : Աչքը դէպ

ի երկինք վերցընելով՝ աղաչաւորող մե-
ղաւորի մը պէս աս աղօթքն ըրաւ: Ա-
սուած իմ, որ ողորմութեամբ լի ես եւ
յանցանքին մեծութիւնը ճանչցող ու զղջա-
ցող յանցաւորը չես մերժեր, գթութեամբ
նայէ իմ վրաս, եւ վերցուր ինծմէ զիս
պատժող ձեռքդ: Գթա իմ բարեկամիս
վրայ, աս հիւանդութենէն զինքն ազատէ:
Անոր պատիժն իմ վրաս դարձուր, որով-
հետեւ աւելի յանցաւորն ես եմ խնայէ,
Տէ՛ր, իմ բարեկամիս, իրեն առողջութիւն
տուր, որ օր մը կարող ըլլայ իր հօրը տրտ-
մութիւնն ուրախութեան դարձընել:

Խլան զղջմամբ ու ցաւով այսպէս կ'ա-
ղօթէր: Նաւուղիղն ալ, տեսնելով որ դեղն
օգուտ մը չ'ըներ, իր յոյսը միայն Ա-
սուծոյ բարութեան եւ ողորմութեան
վրայ դնելով՝ երախտաւորին առողջու-
թեան համար յաճախ ու եռանդեամբ կ'ա-
ղօթէր: Աստուած աս եռանդագին ա-
ղօթքներն ընդունեցաւ ու զարմանալի կեր-
պով մը առողջութիւն տուաւ: Ալէքսիին
հիւանդութիւնը շատ ծանրացած էր, այն-
պէս որ իր երկու բարեկամներն անոր
կեանքէն յուսերնին գրեթէ բոլոր կտրած
էին: Նոյն միջոցին անգամ մը Խլան կան-
թեղին ճարպ բերելու համար այրին ներ-
քին կողմերը գացած ըլլալով, երկայն
գաւթէն անցնելու ատեն՝ ոտքը շիտակ
քարի մը զարնուելով ինկաւ: Երախտաւոր-
դը քարն անկէ վերցուց որ ուրիշ անգամ

մ'ալ ատանկ բան չպատահի: Բայց ինչ զարմանք: Նոյն քարը գետնին տակ բան պահելու համար փորուած փոսի մը կափարիչ է եղեր: Փոսին մէջ շատ բաներ կային՝ որոնք իրենց մեծ օգուտ կրնային ընել, գլխաւորաբար աս վայրկենիս: Ասոնց մէջ աղէկ գոցուած շէշերով լեմոնի աւիշ, մանանիխ, քացախ, քացախի մէջ դրուած ջրկոտիմն, շաքարօղի, թէյով լեցուն թիթեղէ մեծ տուփ մը, աղէկ շաքարի պաշար մը, նաեւ քանի մը շէշ ըմպելի հին գինի դառան: Կ'երեւայ որ կղզւոյն եալի բնակիչ նաւապետը՝ այս ամենայն հիւանդութեան առթի մը համար պահած էր, բայց ինք չէր կրցած գործածել. եւ Աստուծոյ զարմանալի կարգադրութեամբը մեր բարեկամներուն ձեռքն ինկաւ, որոնք անկէ մեծ օգուտ քաղեցին:

Նաւուղիղն արտասուալից աչուըներով գոչեց. Աստուած բարի եւ ողորմած է եւ հրաշալի կերպով մեզի օգնութեան կը հասնի: Հիմայ կրնանք յուսալ որ մեր բարեկամը կը բժշկուի, որովհետեւ հոս գտածնիս իրեն շատ օգտակար բաներ են:

Անմիջապէս հիւանդին քացախով կո-տիկը տուաւ, ետքէն ալ լեմոնաւիշ մը շինեց, գդալխառին ըմպելւոյն մէջն ալ քանի մը կաթիլ քացախ խառնեց: Աս ոգեւոր ըմպելեաց զօրութեամբը քանի մ'օր ետքը Ալեքսի սկսաւ աղէկի դառնալ. հիւանդութեան սաստկութիւնը կը նուա-

զէր, եւ քիչ մը եղբը տկաւ ուտելիք ուզել։ Ան ատեն իրեն ջրկտրիմով աղուխուսու ձագի միս տուին։ Իսկ երբոր բոլորովին առողջացաւ՝ քիչ մ'ալ հին գինի, նաեւ քանի մը կաթիլ շաքարօղիով թէյ խմցուցին։

Երեք շաբաթէն Ալեքսի կատարեալ առողջացաւ, եւ կրցաւ մէկալներուն կերած կերակուրն ուտել, որն որ հասարակօրէն աղուխոս միս էր, վասն զի նոյն կենդանիները՝ որոնք Շբիցպէրկ շատ կը գտնուէին, ամէն օր այրին քովերը կը թափառէին, ուսկից զիրենք զարնելը դիւրին էր։ Աս կենդանիներն իրենց ընկերաց մահուընէ չէին վախնար, ամէն ատեն հոն գտնուած կերակրէն եւ իրենց անօթութենէն յանդգնելով՝ միշտ կու գային։

Նաւուղիղն ու Իվան ալ կրնային իրենք զիրենք աղէկ հոգալ, եւ հիւանդութենէ չբռնուելու համար՝ հալած ձեան ջրին մէջ քանի մը կաթիլ քացախ կը խառնէին. ամէն օր քիչ մը շաքարօղիով թէյ կ'առնուին. իսկ միսը ջրկտրիմով կը համեմէին։ Բաւական միս ու աղ ունէին, միայն առուակի ջուր կը պակսէր։

Նոյն միջոցին մութն երթալով կը թանձրանար, պաղն ալ այնպէս կը սաստկանար՝ որ նաւաբեկեալք հազիւ կրնային դուրսը գործել։ Ամէն կողմ թանձր միգով պատած էր. ձիւնն անդադար կը տեղար. վառելու փայտը ձիւներուն տակէն

դժուարաւ կրնային հանել, որդէն ալ զգալի կերպով քիչցած էր։ Ա՛լ դիւրաւ չէին կրնար փոսը՝ հովին շարունակ փչելով բերած ձիւներէն մաքրել. ձիւնն այրին բոլորտիքը բարձր պատած էր. բայց առ բանս տաքին պահպանութեան շատ կ'օգնէր։ Սակայն դուռն ալ այնպէս ծածկուած ու մուտքը ձիւնով գոցուած էր, որ հազիւ կրնային բանալ։ Առ դէպքն ալ ան աղէկութիւնն ունէր՝ որ արջերուն յարձակմանէն կը պահպանուէին։

## ԳԼՈՒԽ ԺԵ.

### Այրին մէջ ժամանցութիւն ու այլեւայլ գործեր։

ՏԱՆ պատուհանէն դուրս հրացան մը պարպուած ատեն՝ ձայնը ներսէն որոտման նման դղրդիւն մը կը հանէր եւ քանի մը վայրկեան ալ կը տեւէր։ Մեր երեք բարեկամը ասկէց մակաբերեցին որ այրն ուրիշ ճամբաներ ալ պիտի ունենայ։ Նաեւ նաւապետին յիշատակագրէն ալ կը մակաբերէին որ ուրիշ անցք պիտի ըլլայ։ Ասկէց զատ՝ անոր մէջ յիշատակուած ամէն պաշարները դեռ գտած չէին։ Եւ որովհետեւ օդին անհարթութեան պատճառաւ անկէ դուրս չէին կրնար ելլել, անոր համար ուզեցին այրին մէջին եղած ամէն ճեղքերն ու անցքերը՝ որոնք զանազան ուղղութեամբ կը տարածուէին, որչափ որ

կարելի է ներս մտնելով քննել։ Ամէնքը մէյ մէկ կայքին առջին, Իմլան՝ որն որ առջեւէն կ'երթար՝ կանթեղ մը բռնած էր, Ակեքոփ՝ բահ մը, իսկ նաւուղիղը՝ ջահին մխացած կտորները, որպէս զի եթէ կանթեղը մարի նէ, նորէն վառէ․ ատոր համար աղէկ կայծքար մ'ալ ունէր քովը։

Այս կողման ամենէն հեռաւոր ծեղքէն զգուշութեամբ անցնելով, մեծ այր մը հասան, որուն լայն ու բարձր կամարը՝ ժայռի բնական սիւներուն վրայ կը յենուր։ Ցատակին աւազով ծածկուած էր, եւ վրան մարդու հետքեր ալ կը տեսնուէին։ Աս այրին ամէն կողմը քննեցին եւ մեծ ուրախութեամբ տեսան որ վրայէ վրայ դիզուած արագաւոն եղջերուի եղջիւրներու կոյտ մը կար։ Ասոնք թէպէտ իրենց օգուտ մը չէին կրնար ընել, բայց ուրախալի յոյս մը տուին, որովհետեւ հաստատութեամբ իմացան որ կղզույն վրայ նոյն կենդանին կը գտնուի, եւ իրենցմէ առջի նաւորդները բռնած են։

Արագաւոն եղջերուն իրենց շատ եղանակաւ օգտակար կրնար ըլլալ։ Նախախնամութիւնը նոյն կենդանին մասնաւոր հաստատած է սա հիւսիսային անբեր երկիրներուն մէջ՝ ուր պաղն ամէն բան կ'աղականէ, որպէս զի սա խիստ օգտաժնին առակ եղողներին իրենց ամէն կարօտութեանց մէջ գործածեն։ Արագաւոն եղջերուն հաստաբուկ եղջերուէն կը նմանի։ Թէ՛

արուին եւ թէ՛ իգին եղջիւրները դէպ ի առջեւի կողմը ծռած են. բայց ծայրերը հաստատուն եղջերուին եղջիւրներուն պէս սուր չեն, այլ լայն՝ թիակի նման ճիւղերով, որոնք կը ծառայեն ձմեռը ձիւները վերցընելով՝ տակէն մամուռ ժողվելու, որով կը սնանին: Աս եղջիւրն ինչպէս նաեւ եղջերուինն ալ, ամէն տարի կ'իյնայ: Աս կենդանւոյն ամէն բանն օգտակար է. իր համեղ միսը, ճարպն ու արիւնը կերակուր կ'ըլլայ. մորթը՝ զգեստի, աղիքը՝ առասան եւ լար շինելու, ջիղերը՝ դերձանի տեղ կը գործածուի, փամփուշտը՝ մէջը հեղուկ պահելու կը ծառայէ, իսկ ոսկրներէն ու եղջիւրներէն՝ ամէն տեսակ գործիք կրնայ շինուիլ:

Ընտանի էգ տարագուտն եղջերու մը՝ կարագ ու պանիր շինելու համար կաթ կու տայ: Լապոնացիք, Սամոյէտք եւ Քորիաքներն իրենց երկրին մէջ աս կենդանիները բազմութեամբ կը պահեն, եւ բալխիրներն ալ քաշել կու տան: Արածուելու տեղերնին՝ պահապաննին շներն են, եւ շատ անգամ կը պատահի որ վայրենի տարագուտն եղջերուներ ալ կու գան հօտին մէջ կը խառնուին եւ առանց ընդդիմութեան կը բռնուին:

Աս մեծ այրին մէջ առջեւնին զանազան ճամբաներ կար, որոնցմէ կրնային երթալ: Իրենք ամենէն լայնն ընտրեցին: Ասոր սկիզբը դեռանկայարկ շտեմարանի մը

կարելի է նորա մտնելով քննել։ Ամէնքը մէյ մէկ կայցին առջին, Իվան՝ որն որ առջեւէն կ՚երթար՝ կանթեղ մը բռնած էր, Ալեքսի՝ բահ մը, իսկ Նաւուղիղը՝ ջահին մնացած կտորները, որպէս զի եթէ կանթեղը մարի նէ, նորէն վառէ. առոր համար աղէկ կայծքար մ՚ալ ունէր քովը։

Աջ կողման ամէնէն հեռաւոր ճեղքէն զգուշութեամբ անցնելով, մեծ այր մը հասան, որուն լայն ու բարձր կամարը՝ ժայռի բնական սիւներուն վրայ կը յենուր։ Յատակն աւազով ծածկուած էր, եւ վրան մարդու հետքեր ալ կը տեսնուէին։ Աս այրին ամէն կողմը քննեցին եւ մեծ ուրախութեամբ տեսան որ վրայէ վրայ դիզուած արագոտն եղջերուի եղջիւրներու կոյտ մը կար։ Ասոնք թէպէտ իրենց օգուտ մը չէին կրնար ընել, բայց ուրախալի յոյս մը տուին, որովհետեւ հաստատութեամբ իմացան որ կղզւոյն վրայ նոյն կենդանիէն կը գտնուի, եւ իրենցմէ առջի նաւորդները բռնած են։

Արագոտն եղջերուն իրենց շատ եղանակաւ օգտակար կրնար ըլլալ։ Նախախնամութիւնը նոյն կենդանին մասնաւոր հաստատած է ան հիւսիսային անբեր երկիրներուն մէջ՝ ուր պաղն ամէն բան կ՚ապականէ, որպէս զի ան խիստ օդաբաժնեն տակ եղողներն իրենց ամէն կարօտութեանց մէջ գործածեն։ Արագոտն եղջերուն հասարակ եղջերուէն կը նմանի։ Թէ՛

արուին եւ թէ՛ էգին եղջիւրները դէպ ի առջեւի կողմը ծռած են. բայց ծայրերը հասարակ եղջերուին եղջիւրներուն պէս սուր չեն, այլ լայն՝ թիակի նման ճիւղերով, որոնք կը ծառայեն ձմեռը ձիւները վերցընելով՝ տակէն մամուռ ժողվելու, որով կը սնանին։ Այս եղջիւրն ինչպէս նաեւ եղջերուինն ալ, ամէն տարի կ'իյնայ։ Այս կենդանւոյն ամէն բանն օգտակար է. իր համեղ միսը, ճարպն ու արիւնը կերակուր կ'ըլլայ. մորթը՝ զգեստի, աղիքը՝ առասան եւ լար շինելու, ջիղերը՝ դերձանի տեղ կը գործածուի, փամփուշտը՝ մէջը հեղուկ պահելու կը ծառայէ, իսկ ոսկըներէն ու եղջիւրներէն՝ ամէն տեսակ գործիք կրնայ շինուիլ։

Ընտանի էգ արագոտն եղջերու մը՝ կարագ ու պանիր շինելու համար կաթ կու տայ։ Լաբոնացիք, Սամոյէտք եւ Քորիաքներն իրենց երկրին մէջ աս կենդանիները բազմութեամբ կը պահեն, եւ բալխիրներին ալ քաշել կու տան։ Արածուելու ատեններին՝ պահապաններին շներն են, եւ շատ անգամ կը պատահի որ վայրենի արագոտն եղջերուներ ալ կու գան հօտին մէջ կը խառնուին եւ առանց ընդդիմութեան կը բռնուին։

Այս մեծ այրին մէջ առջեւնին զանազան ճամբաներ կար ; որոնցմէ կրնային երթալ։ Իրենք ամենէն լայնն ընտրեցին։ Ասոր սկիզբը գետնայարկ շտեմարանի մը

մուտքին կը նմանէր. բայց երկիրը խորդուբորդ էր. մեծ ու պզտիկ քարեր անցքին խափան կ'ըլլային. կամարը սրածայր ու դուրս ցցուած քարերով լեցուն էր, որոնք տեղ տեղ այնպէս վար կ'իջնային, որ երեք ճամբորդք պէտք էին իյնալէն եւ կամ գլուխնին ժայռի զարնելէն զգուշանալ: Անկից զատ՝ անցքը շիտակ չէր. երբեմն աջ, երբեմն ձախ կը շեղէր. գետինն ալ երբեմն կը բարձրանար, երբեմն կը ցածնար:

Նաւարեկք շուրջ կէս ժամ քալած էին այս անցքին մէջէն, մէյ մ'ալ ոտքերնուն տակ այնպէս զառի վայր տեղ մ'եկաւ, որ քար մը փրթելով՝ երկայն ատեն գլտորեցաւ: Նաւուղիղն ընկերներուն ըսաւ որ զգուշութեամբ քալեն, վասն զի կը վախնար որ չըլլայ թէ հոն անդունդ մը գտնուի: Իվան՝ ձեռքը կանթեղը բռնած՝ ժայռին դէպ ի մէկ կողմը դարձաւ. հոն քարի կտորի մը վրայ կոխած ատեն՝ քարն է շարժեցաւ, տեղէն ելաւ եւ ծակի մը մէջ ինկաւ: Երիտասարդն ինք զինքը չկրնալով բռնել՝ քարին հետ գլտորեցաւ: Ալեքսի ընկերին զգեստէն բռնած ըլլալով՝ մէկտեղ մէջն ինկաւ: Նաւուղիղն ալ նոյնպէս անոնց օգնել ուզած ատեն՝ սահելով կռնակի վրայ ինկաւ եւ բաւական տեղ մը գլտորելով գնաց: Անմիջապէս ալ ան ինկած քարին վրայ յեցած ժայռը մեծ դղրդմամբ մը փլչելով, իրենց ինկած մուտքը փակեց եւ ճամբանին գոցեց: Իյնալնին

զիրենք այնպէս անզգայ ըրած էր, որ քանի մը վայրկեան խելքերնին կորսնցուցած մնացին. կանթեղն ալ մարած եւ իրենց բոլորտիքը խոր գիշեր մը պատած էր։

Նաւուղիղը մէկալներէն առաջ ինք իրեն գալով, իր բարեկամները կանչեց. Պատասխան որ չառաւ, սկսաւ վախնալ որ մեռած չըլլան։ Վերջապէս հեծելու ձայն լսելով, սկսաւ մթան մէջ բոլորտիքը շօշափելով փնտռել. ձեռքը մաղոտ ու խիստ պաղ սառուցանման բանի մը հանդիպեցաւ։ Ձեռքը քաշեց՝ կայծքարով ջահը վառեց, տեսաւ որ դպածը՝ ծամու հորթէ շինուած՝ Իվանին մախաղն էր։

Խեղճ մարդը կը ջանար իր դժբախտ ընկերաց օգնութեան հասնելու։ Ինք, ինչպէս ըսինք, քիչ բան կրած էր, միայն ձեռքը սկրթած եւ գլուխը պզտիկ ուռեցք մ՚առած էր։ Իվանին ճակատը վիրաւորուած էր եւ սաստիկ կ՚արիւնէր. մինչեւ մարմնոյն կէսն ալ ժայռի կտորտուքներու մէջ թաղուած էր։ Նաւուղղին օգնութեամբը ազատեցաւ. բայց երիկամանց եւ ոտքին վրայ սաստիկ ցաւ կը զգար։ Իսկ Ալեքսի դեռ բոլորովին անզգայ կը կենար։ Գըլխուն վրայ ինկած եւ ասդին անդին մարմնոյն վրայ փոքր վէրքեր առած էր։ Իր ընկերներուն օգնութեամբն աւերակաց տակէն դուրս ելաւ եւ խելքը գլուխն եկաւ. բայց բոլոր մարմնոյն վրայ ցաւերը կը տիրէին։

Կանթեղին մէջ դեռ այնչափ ճարպ ու պատրույգ կար՝ որ կրնար բաւական ատեն վառուիլ։ Նոյնին լուսովը չորս կողմերնին աղէկ մը քննելով՝ երեք ընկերը ճանչցան թէ ինչ մեծ վտանգէ ազատած էին։ Եթէ քարին հետ մէկտեղ ինկած չըլլային, փլած ժայռերուն զանգուածին տակ անշուշտ կը թաղուէին կը մնային։ Աստուծոյ շնորհակալ եղան, եւ թեթեւ վէրքերով ազատելնուն համար կ'ուրախանային։ Բայց վիճակնին միշտ զարհուրելի էր։ Խորունկ անդընդի մը մէջ կը գտնուէին. Ժայռերուն կործանած ըլլալովը՝ ետ չէին կրնար դառնալ, եւ ուրիշ ճամբայ ալ չէին ճանչնար։ Օդն այնպէս ծանր էր՝ որ հազիւ կրնային շունչ առնուլ։ Հետերնին ուտելիք ալ չէին առած, եւ եթէ հոն երկայն ատեն մնային, մահն անտարակոյս վրայ պիտի հասնէր։

Ալեքսի ու Իվան այնպէս կը հեծէին՝ որ Նաւուղիղն իր փորձառութեամբն ալ յուսահատելու սկսաւ։ Թէ որ Աստուած չօգնէ, ըսաւ այլայլած ձայնիւ մը, կորսուած ենք։ Բայց Ամենակարողը՝ որն որ մեզի ամէն վտանգներու մէջ պաշտպանեց, հիմակ ալ կ'օգնէ։ Ամէնքը մէկտեղ ծնկան վրայ գալով ու դողդոջուն ձեռքերնին միացնելով՝ Աստուծոյ օգնութիւնը սկսան կանչել։ Ետքէն Նաւուղիղն ըսաւ. Աստուծոյ ամենակարողութեան վրայ վստահ ըլլանք, ամէն վտանգի մէջ իր

օգնութիւնը մեզի մօտ եղաւ, եւ ոչ ալ հիմայ թող կու տայ որ աս անդնդոյն մէջ կորսուինք։ Չյուսահատինք, ճամբայ մը փնտռենք, գուցէ ելք մը կամ ազատութեան միջոց մը կը գտնենք։

Պարապ տեղ երկայն ժամանակ փնտռեցինք։ Շատ անգամ ելք չունեցող ժայռերու ճեղքերուն մէջ կը մտնէինք։ Վերջապէս շատ փնտռելէն ետքը՝ բաւական լայն ճեղք մը գտանք, որն որ դէպ ի վեր կը տարածուէր, եւ դժուարութեամբ մէջը մտանք։ Քառորդ մը քալելէն ետքը՝ ժայռերու շատ անկիւններ դառնալով՝ ճամբան ուրիշ ուղղութիւն մ'առաւ։ Քանի որ յառաջ կ'երթայինք՝ այնչափ ալ ելք մը գտնելու յոյսերնիս կ'աւելնար։ Վերջապէս երկիրը սկսաւ բարձրանալ եւ պաղ օդ մը զգացինք։ Որովհետեւ օդը մաքրուելով՝ ազատութեամբ շունչ առնելու սկսած էին, ու բանը իրենց նշան եղաւ թէ ելք մը գտնելը հեռու պիտի չըլլայ։ Մէյ մ'ալ ժայռերէ իջնող առուակի կարկաջ մը լսեցին։ Աս ձայնին ականջներնուն ինչ անուշ հնչեց, որչափ ուրախացուց իրենց սիրտը։ Ա՛լ հիմայ վախը փարատած էր, ազատութիւննին մօտ էր։ Ընթացքնին երթալով կը շուտցընէին։ Քիչ մը ետքը վազուն ու յստակ ջրոյ մը՝ ժայռերուն մէջ փորած աւազանին առջեւն ելան, որն որ քանի մը ոտք հեռու նոյնպէս ժայռերու պատառուածքին մէջ կը կորսուէր։ Նոյն

տեղը ժայռերու կոյտը նեղ էր, բայց անհամեմատ բարձրութիւն մ'ունէր. կամարը բոլորովին ծածկուած չէր։ Թէպէտ ձիւնն ու սառոյցը նոյնին ծակը պզտիկցուցած էին, բայց բոլորովին գոցած չէին. անոր համար աս կողմերուն օդը պաղ էր։

Երեք դժբախտ ընկերք շարժած սրտիւ աղբեր առջին կեցան։ Գտա՜նք, ըսին, երկայն ժամանակէ ի վեր բաղձացածնիս։ Գոհութիւն Աստուծոյ ամենակարողին, որն որ իր բարերար ձեռքովը զմեզ հոս բերելով՝ մեր տխուր վիճակին մէջ հարկաւոր եղածը մեզի կու տայ։ Զմեզ աս անդնդէն ալ անշուշտ ինք կ'ազատէ։ Իր ամենակարողութիւնն ու բարութիւնն անսահման են։

Նոյն ջրէն զովանալով՝ զօրացան, եւ վէրքերնին ալ լուալէն ետեւ՝ առջեւնին բացուած ճամբան մտան։ Ամէնքն ալ այնպէս կը համարէին որ կղզւոյն առաջին բնակիչները նոյն աղբիւրը կու գային. եւ պատճառ ալ ունէին անանկ կարծելու, որովհետեւ ճամբուն աւազին վրայ յայտնապէս ոտքի հետքեր կը տեսնուէին։ Անկից զատ՝ նաեւ ան փոքրիկ աւազանին քովի քարերուն շարուածքն ու մամռով հաստատուած ըլլալը՝ մարդու ներկայութեան ու հնարագիտութեան նշան էր։

Աս յուսով զօրանալով, նաւաբեկեալք միշտ դէպ ի վեր բարձրացող ճամբուն մէջ յառաջ կ'երթային, որն որ այնպէս

կ'երեւար թէ երթալով կը նեղնայ։ Մէյ
մ'ալ ճամբանին դադրեցաւ։ Առջեւի
պատն աղէկ մը քննելով, աւերակներով
ու փլած քարերով գոցուած դուռ մը
գտան, որն որ կ'երեւար թէ երկայն ա-
տենէ վեր չէր բացուած։ Իրենց բրչովը
քարերը մէկդի առնելով՝ դուռը բացին ու
ներս մտան։ Ծայրին ճեղքն այնպէս նեղ
էր, որ մէյմէկ հոգի ետեւէ ետեւ կը քա-
լէին. հազիւ քանի քայլ ճամբայ ըրած
էին, մէյ մ'ալ իրենք զիրենք ընդարձակ
այրի մը մէջ գտան։ Չորս կողմերնին նայե-
լով՝ շուտով իմացան որ իրենց բնակարա-
նին քովն եղած այրն է, ուսկից որ ա
խուզարկութիւնն ընելու ճամբայ ելած էին։

Ա՛լ հիմայ յայտնապէս կը տեսնէին որ
խղճին առաջին բնակիչները ջուր բերելու
համար ձմեռը նոյն ճամբէն աղբիւրը կ'եր-
թային, եւ ատ կարծեաց մէջ անով աւելի
հաստատուեցան որ գրան մօտ եղած ժայ-
ռին փոսին մէջ ջրոյ դոյլեր կային։ Կրնայ
մտածուիլ թէ Աստուծոյ իրենց ըրած աս
մեծ բարերարութեան վրայ սրտերնուն մէջ
զգացած երախտագիտութիւններն ինչ ա-
տիճանի էր։ Մաքուր ու յստակ ջուր մը՝
Ալեքսիին այնչափ մօտ հասցուցած հա-
լած ձեան տեղ պիտի բանէր։ Անոնց սըր-
տերն ինչ երախտագիտութեան զգաց-
մունքներով լեցուած ըլլալն իմանալու
համար՝ թող մէյ մը երեւակայէ մարդ թէ
ինչպէս սաստիկ է ծարաւոյն տանջանքը։

Շնորհակալութիւննին՝ ջերմեռանդ աղօթքով մը յագեցընելէն ետքը՝ կերակուր կերան, որուն՝ միօրեայ աշխատութենէ ետքը մեծապէս հարկաւորութիւն ունէին ։

## ԳԼՈՒԽ ԺԶ.

Այրին դուրս ու այրին մէջ որոտմունքներ ։

ՆՈՅՆ առեն սաստիկ հով մ'ելաւ եւ խոշոր հատերով կը ձիւնէր ։ Պաղը վերջին աստիճանի հասած էր ։ Երբ որ երեք բարեկամք առաւուանց արթնցան, հովը դեռ կը տեւէր, իրենք ալ խղերնուն մէջ գրեթէ ձեան տակ թաղուած էին ։ Միայն ծուխը կամարին մէջէն իրեն անցք մը շինած էր ։ Դուրսը մութ գիշեր մը կը տիրէր, իսկ այրը կանթեղին աղօտ լուսովը կը լուսաւորուէր ։ Պաղէն պահպանուելու համար վառարանը կարմրնալու չափ վառած պէտք էր բռնել ։ Դուրս ելլելը գրեթէ անկարելի էր, որովհետեւ դուռն ու պատուհանները ձիւնը բռնած էր, թէ եւ մէկ դի ալ առնէին, հովը նորէն կը բերէր կը դիզէր ։

Այսպէսով իրենց բնակարանին մէջ գրեթէ բանտարկուած էին. բայց զբաղմունք չէր պակսեր ։ Նախ խիւղը բերուած փայտի պաշարնին սղոցեցին ու ջարդեցին ։ Բայց նոր հոգ մը վրայ հասաւ ։ Վառած փայտերնէն կշռելով՝ տեսան որ ունեցածնին բոլոր ձմեռը չէր բաւեր ։ Նոյնպէս

կանթեղին ալ բաւական ճարպ չկար։ Բայց դեռ քանի մը ամսոյ համար միս ունէին. եւ կը յուսային որ ձեան թանձրութիւնն աղուէսներն ու արջերն իրենց այցելութեան ելլելու կը ստիպէ։ Ուստի ամենէն տնտեսողական բանն էր վառելու նիւթ գտնել։

Նաւուղիղը գիտէր որ շատ չ'երթար՝ աս խիստ օդին՝ մեղմ օդ մը կը յաջորդէ։ Արդ. մորթերնին դրին որ լուսինն ելլելու որ ըլլայ, պարանոցն երթան եւ կարելի եղածին չափ փայտ բերեն։ Ասոր արշաւանաց համար ամէն պատրաստութիւններն եղան։ Երեք արջու մորթ կտրեցին եւ անոնցմով՝ ուսերէն մինչեւ ծնկուըներն ինջող զգեստ մը շինեցին, այնպիսի եղանակաւ՝ որ վրայի ծակէն՝ գլխուն վրայէն ալ կրնար հանուիլ։ Իսկ աղուէսու կաշիներն այնպէս մը յարմարցուցին՝ որ անոնցմով ծնկուընին ու թեւերնին փաթթեցին, եւ չորցած աղիքները՝ չուանի տեղ գործածելով՝ վրան փաթթեցին։ Կոխած ատեննին ձեան մէջ չթաղուելու համար՝ Սամոյէտներու պէս հողաթափներնուն տակ պզտիկ տախտակներ դրին։ Աս պատրաստութիւններն երկու շաբաթ տեւեցին։ Նոյնպէս բահեր մ'ալ շինեցին, որպէս զի իրենց արշաւանաց մէջ գտած օգտակար բաներնին անով կարող ըլլան տուն բերել։

Ուրիշ ձեռածմունք մ'ալ ունէին։ Երրորդ այրին մէջ գտնուած արագտան եղջե-

րուն եղջիւրներէն իմացած ըլլալով որ կղզւոյն մէջ նոյն կենդանիին կը գտնուի, կը յուսային որ աս արշաւանաց առնեն անանցմէ կրնան բռնել: Արդ երեք օրուան կերակուր պատրաստելով՝ պարկերնին լեցուցին. եւ իրենք զիրենք Աստուծոյ յանձնելէն ետքը՝ հրացանով ու նիզակով զինուած՝ լուանոյ լուսովը բնակութիւննին թողուցին: Օդն այնպէս պաղ էր՝ որ շնչերնին կը սառէր. ոչ դէմքերնին եւ ոչ ձեռուըննին կրնային բաց թողուլ: Ձեան վրայ կամաց կամաց միայն կրնային յառաջանալ. բայց հողաթափներնուն տակ դրած պզտիկ տախտակները ձեան մէջ չմտնելու շատ օգնէկ կ'օգնէր: Թանձր մուշտակները զիրենք պաղէն կը պահէին, եւ միօրինակ շարժման մէջ ըլլալով՝ ցրտէն շատ մեծ նեղութիւն չէին կրեր:

Այսպէս յաջողութեամբ պարանոցը հասան: Տրտմութեամբ տեսան որ ծովեզրը խորունկ ձեամբ լեցուած էր. ասոր հակէն պէտք էր նախ փնտռելով փայտ գտնել հանել, որուն համար գործիք ալ չունէին: Ասանկով իրենց արշաւանքն անօգուտ կը համարէին: Մէյ մ'ալ պարանոցին մէջ բարձրացած սառուցէ լերան ետեւէն աղջի խիստ հաչելու ձայն լսուեցաւ: Սկսան զգուշանալ ու կռուոյ պատրաստուիլ: Կամաց կամաց յառաջ երթալով՝ երկու արջ տեսան, որոնք սառուցներու մէջէն ծովու հորթու մը հետ կը կռուէին: Ծովահոր-

Թը թէպէտ չէր կրնար ջրէն դուրս դիւ-րաւ շարժիլ, բայց իր երկայն ճանկերովը շատ քաջութեամբ ինք զինքը կը պաշտ-պանէր։ Արջերն այնպիսի կատաղութեամբ մը կը կռուէին, որ իրենց մօտեցող նոր թշնամիները չիմացան. ուստի իրենք աղէկ նշան առնելու համար նիզակնին գետինը խոթելով հաստատելու առեն ունեցան։

Նաւուղիղն ու Իվան մէկտեղ կրակ ը-րին, որով անմիջապէս. արջերն ինկան. բայց նորէն ելլելով՝ կատաղաբար ծովու հորթին վրայ յարձակեցան։ Ալեքսի եր-րորդ գնդակ մ'ալ արձակեց ու արջերէն մէկուն գլուխը զարկաւ։ Աս միջոցին նաւ-ուղիղն ու Իվան առեն ունեցան հրացան-նին նորէն լեցընելու. երկրորդ հրացանը պարպուելուն՝ մէկալ արջն ալ տեղի տուաւ։ Ետքէն երեք գնդակ ալ ծովահորթին արձակեցին, որոնք այնպէս աղէկ հանդիպե-ցան՝ որ քանի մը րոպէ ետքը կենդանին սատկեցաւ։

Այսպիսի մեծ աւարի մը յանդիպելը երեք բարեկամաց մտքէն ալ չէր անցներ։ Ծովու հորթը չէ թէ իր սաստիկ ճարպային ու գրեթէ անճաշակելի մսոյն, այլ իրենց կանթեղին ճարպի պաշար մատակարարե-լուն համար շատ օգտակար էր։ Սատկե-ցուցած ծովու հորթերնին գրեթէ մեծ կովու մը չափ էր, բայց աւելի ձկան՝ քան թէ չորքոտանւոյ մը կը նմանէր։ Մեծ ու կլոր գլխուն երկու կողմը՝ կոր երկը-

ժանուղյ նման, ճերմակ, զօրաւոր ու գրեթէ թեւի մը մեծութեամբ երկու հատ ժանիք ունէր։ Կենդանին զանոնք տաւուցի մէջ կը խաթէ, եւ անոնց միջնորդութեամբն ինք զինքը դէպ ի յառաջ կը մղէ, նաեւ ժայռերուն կպած խեցեմորթերուն անոնցմով կը զարնէ եւ կ'ուտէ։ Ասոնք փղոսկրի պէս ճերմակ ու հաստատուն են եւ արուեստական ատրոյ շինելու շատ կը գործածուին։ Ծովու հորթին ձայնը ձիու խրխնջալուն շատ նման է. իր զօրաւոր ու խիտ մորթն ալ օգտակար է։

Երեք տաքաուրեալք ծովու հորթին միսն ալ հարկաւոր կը համարէին. որովհետեւ աղուէսուց սերտական կերակուրն ըլլալով՝ անոնց կերի տեղ կրնար ծառայել։

Սպաննուած երեք կենդանիները տաս-աւիկ ծանր ըլլալով՝ բալխոնին վրայ մէկ անգամէն չէին կրնար տանիլ։ Անոր համար երեք անգամէն տանելու տախտակելով տա աշխատութեան երեք օր գնաց։ Նոր տա-ւարներուն ճարպը հալեցընելը, միսն ա-ղելն ու չորցընելն՝ իրենց շատ օրերու զբաղ-մունքը եղաւ։ Նոյն ատեն միշտ աղուէսնե-րը կը գիրաէին, անոնց համար կենդանեաց փորոտիք ու ծովու հորթի մսի կտորներ նետելով։ Շատերուն ալ կերէն հրապուրուե-լով՝ տպանուեցան, այնպէս որ աղուէսու-խորվածն անմնէւէին չպակսեցաւ։

Արտադուան եղջերու բռնելու մտած-մունքն ալ իրենց մտքէն չէր ելած։ Անոր

համար ուղեցին նորէն արշաւանք մ'ընել, մոռնալով որ փայտի պակասութիւնն ալ զիրենք կը ստիպէր դուրս ելլելու :

Աս արշաւանաց համար ամէն բան պատրաստեցին, նոյնպէս ձիւները մէկդի առնելու համար՝ թիակներ ալ շինեցին : Կը յուսային որ յաջող ելք կ'ունենան, որովհետեւ հիւսիսայգ մ'ալ երեւալով՝ այնպէս պայծառ լոյս մը ձգած էր, որ կէսօրուան մէջ ամէն բան յայտնի կրնային որոշել : Բայց երկրորդ առտու արթընցած ատեններնին՝ ամէն բան փոխուած էր : Հովը սաստիկ կը փչէր, եւ այնպէս ձեան մրրիկ մը կը հանէր՝ որ աչքերնին չէին կրնար բանալ : Խոր մթութիւն մը ամէն կողմ կը տիրէր, անանկ որ չէին համարձակեր խուղէն դուրս ելլելու : Դուռը՝ զորն որ առջեւը ժողված ձեան պատճառաւ հազիւ կարող եղած էին բանալ, շուտ մը գոցեցին, եւ գոցածնուն պէս՝ դարձեալ ձիւնը դիզուեցաւ : Նորէն ներսը փակուելով՝ եղջերու բռնելու յոյսն ալ զուր եղաւ :

Ասով տխուր խորհուրդները նորէն իրենց սիրտը մտան : Ի՞նչ պիտ'որ ընենք, ըսին Ալեքսի եւ Իվան՝ հեծելով մը, թէ որ աս մրրիկն ու ձիւնը երկայն տեւէ, եւ փայտի պաշարնիս լմննայ : Առանց փայտի չենք կրնար պաղէն պաշտպանուիլ. թէ որ այսպէս ձմեռն երկայն տեւէ եւ բոլոր կղզին ձեամբ ու սառնամանիքով ծածկուած մնայ, փայտս ի՞նչպէս պիտի հոգանք :

Աս հոգը մեր երկնաւոր Հօրը թողունք, պատասխանեց Նաւուղիղը, եւ մենք մեր պարտքը կատարենք: Մինչեւ հիմա բարերարն Աստուած աս միայնութեան մէջ մեզի ամէն հարկաւո՛ր եղածը հոգաց եւ զմեզ գրեթէ ամէն օր բարերարութեամբ լեցուց: Ո՛վ կրնայ ասկէ ետեւ ապերախտ գտնուելով՝ Անոր ամենակարող Նախախնամութեան վրայ տարակուսիլ: Աս խօսքերը երախտապարտաց սրտին մեծ ազդեցութիւն ընելով՝ հանդարտեցան եւ կասկածնին ալ փարատեցաւ:

Որովհետեւ նոյն ատեն զբաղմունք չունէին, Նաւուղիղն առաջարկեց որ այրին ներքին կողմերը տանող ճամբաներն աւելի ճշդիւ քննեն. ինչու որ յիշատակագրոյն մէջ յիշատակուած ամէն բաները դեռ չէին գտած: Ամէն մէկը մէյմէկ կանթեղ առնելով եւ իրարու յիշեցընելով որ զգուշութեամբ քալեն, որպէս զի չըլլայ թէ երկրի տակէն ըրած ճամբորդութիւններնուն դէպքը պատահի, ճամբայ ելան: Գտած ատեննին՝ ճամբայ մը տեսան, որն որ աստիճաններով վեր կը տանէր: Նոյն աստիճաններէն վեր ելլելով՝ ընդարձակ ու շատ չոր այր մը հասան: Մօտէն քննելով՝ տեսան որ գտածնին հին բնակչաց՝ պաշար պահելու տեղն էր: Ասոր մէջ աղէկ մը գոցուած շատ տակառներ ու արկղներ կային: Արկեղ մը մէջ խել մը շապիկ, զանկապան, Թաշկինակ, եւ ուրիշ ճերմըկեղէն գտան,

որոնց ամէնն ալ աղէկ վիճակի մէջ էին, վասն զի զանոնք խոնաւութենէ պահելու համար՝ արկղը ձիւթով ծեփած էին։ Աս գիւտն երեք բարեկամաց համար մեծ բան էր, որովհետեւ իրենց ճերմըկեղէնը, փոխնորդ չունենալնուն համար՝ բոլորովին աղտոտած ու պատռտած էր։ Տակառներէն մէկուն մէջ մսով չորցուցած ձուկ եւ աղած ու մխած արագոտն եղջերուայ միս կար։ Զոր գգալխոտով լեցուն երեք արկղ գտան. ուրիշ երկու հատի մէջն ալ արջու, ծովու հորթի, արագոտն եղջերուի, աղուէսու մորթեր կային։ Բա՛ն մ'ալ ապականած չէր, վասն զի բոլոր արկղներն ու տակառներն աղէկ գոցուած ու ձիւթով ծեփուած էին։

Մեր նաւորդք հազիւ աչքերնուն կը հաւատային. եւ անհամեմատ ուրախութիւն ունեցան։ Նաւուղիղն Ալեքսիյին ու Իվանին հասկըցուց թէ ինչպէս փայտ բերելու համար դուրս ելլելն արգելող անողորմ օդին ու մրրկին դէմ տրանջալով՝ տկար ու անմիտ գտնուեցան։ Հիմայ չէ՞ք տեսներ, ըսաւ, որ տրանջածնիդ՝ ձեզի մեծապէս օգտակար եղաւ։ Այսպէս Աստուած ամէն բան կը կարգադրէ, շատ անգամ մեզի անհաճոյ երեւցածը՝ մեր երջանկութեան աղբիւր կ'ըլլայ։ Հոս գտած ամէն բաներնիս թէպէտ եւ երեւելի գին մը չունին, բայց ասոնց համար Աստուծոյ ըստ արժանւոյն շնորհակալ չենք կրնար

ըլլալ։ Փայտ փնտռտելու դադրած ըլլայինք նէ, սա գանձերը դեռ երկայն ատեն ալ մեզի անծանօթ պիտի մնային։

Երեք բարեկամներն այլը պտըլտած ատեն՝ կրակին վրայ կաթսայով արջու միսը կ'եփէր։ Նոյն օրը նաւուղիղն աղէկ կերակուր մ'ուզեց պատրաստել։ Շատ անգամ լսած էր թէ Կրոէնլանտացիք ու Սամոյէտք ամառուան ատեն դդալխոտը չորցնելով, ձմեռուն ընդեղէնի · պէս կ'ուտեն, որն որ զիրենք լնդախտութեան հիւանդութենէ կը պահէ։ Կաթսայի մէջ եռացած ջուր դնելով, մէջը դդալխոտ լեցուց։ Զոր տերեւներն ուռեցան, կանանչութիւննին առին ու կաղամբի նման համ մը բուրեցին։ Ուրիշ կաթսայի մէջ ալ տարադան եղջերուի աղած մսի կտոր մ'եփեցին։ Ճաշերնին շատ աղէկ եղաւ, որուն համար Աստուծոյ մասնաւոր շնորհակալ եղան։ Ա՛լ երկայն ժամանակուան կերակրոյ համար մտածելիք չունէին. եւ որովհետեւ արջի ու աղտուխտ որսէն ունենալու խարխանծին վրայ տարակոյս չկար, տանելով պաշարնին գրեթէ մէկ տարուան կը բաւէր։ Անկէ զատ իրենց ուտելիքն այս կերպով կարգաւորեցին. շաբաթը չորս հեղ արջի եւ աղուտու մսին հետ եփած դդալխոտ պիտի ուտէին, երեք անգամ ալ տարադան եղջերուի միսած միս ու ձուկ։

Գէշ օդերը դեռ շարունակելու վրայ էին։ Իրենց խուզարկութիւններն յառաջ

տանելով՝ տեղ մը հասան, ուր քիչ յու-ռացած եւ շատ բաղձացած բան մ'ալ գտան, այսինքն՝ այրելի նիւթեր, փայտ ու հանքային ածուխ։ Աս վերջինը կ'երեւայ որ կղզին առջի բնակիչները նաւէն հանած էին, որովհետեւ Անգղիայի ու Հոլանտայի ամէն նաւերը կիտորսութեան գացած ա-տեններին՝ հետերնին շատ հանքային ածուխ կ'առնեն։ Որչափ որ փայտի պակասութեան համար վախ ունեցած էին, այնչափ ալ աս գիւտին վրայ ուրախացան։ Աս վախերնին ալ հիմայ բոլորովին ցրուեցաւ։ Ալեքսի եւ Իվան իրենց անհամբեր տրտնջման վրայ ամչցան, եւ խոստացան որ ալ անկէ ետ-քը նոյն պակասութեան մէջ չիյնան։

## ԳԼՈՒԽ ԺԷ.

### Արտեւորն եղջերուա։

Աս միջոցին հողը իջաւ եւ երկինքն յստակեցաւ։ Տնակին ան աստիճանի ձեամբ ծածկուած էր, որ երեք բարեկամք դուրս ելլելու համար խրամ մը բանալու ստի-պուեցան։ Ձիւնը պարպելով՝ ներքին կող-մը ժողվեցին եւ վրան ջուր լեցուցին, որ-պէս զի սառելով՝ պատի պէս ըլլայ. այս-պէսով արջերուն դէմ նոր պատուար մ'ալ ունեցան։ Պատուհանին առջեւ ժողվուած ձեան մէջէն ծակ մը բացին, որպէս զի անկէ աղուէսները դիտեն։ Աս աշխատու-թիւնները շատ օրեր տեւեցին։ Իսկ պաղն

երթալով աւելի կը տառապանար՝ քան թէ կը մեղմանար, այնպէս որ աշխատութեան մէջ ըլլալով ալ՝ տունէն դուրս հազիւ կրնային պաղին դիմանալ: Օդը պարզ էր եւ երկինքն աստղներով լեցուն, որոնց աղօտ լոյսն իրենց գործելուն դիւրութիւն կու տար:

Ան ատեն փայտ փնտռելու համար դէպ ի պարտանոցը նորէն ճամբայ ելան: Մրրիկն իրենց մեծապէս օգնած էր. որովհետեւ ցամաքէն ձիւնն առած տարած ըլլալով՝ փայտերն երեւան ելած էին: Բայց սառն-կով ալ գետնի վրայ սառած ու փակած ըլլալով, փրցընել հանելը՝ իրենց շատ աշխատութիւն առեց: Ժողվուած փայտերով բալխիրնին բեռնաւորեցին ու տնակը դարձան: Աս ալ նոյնպէս քանի մը օր տեւեց:

Առտու մը՝ որ պայծառ լուսնկայով դուրս ելած էին, սովորականէն ուրիշ ճամբով մը պարտանոցն երթալ ուզելով՝ հեռուն շարժող բան մը տեսան: Կամաց կամաց յառաջ երթալով, իմացան որ տեսածնին արագոտն եղջերուաց դունդ մըն էր, որոնք զիրենք տեսածնուն պէս՝ փախչելու սկսան: Իսկ երեք ընկերը ետեւնէն ինկան: Բայց ընթացքնին՝ նոյն արագոտն կենդանիներուն քով շատ դանդաղ ըլլալով, աչքերնուն առջեւէն զանոնք շուտով կորսնցուցին:

Աս անասունները՝ որոնք ձեան տակէն մամուռ ժողվելով կ'ապրէին, ըստ նաւուղիղը, ձմեռը շատ չէին հեռանար իրենց որ-

ջէն, զորն որ սովորաբար ժայռերու այրք մը մէջ կը հաստատեն: Եթէ իրենց հետքը բռնելով յառաջ երթանք, գուցէ անդէրնին կրնանք գտնել: Նոյն անասնոց ետեւէն երթալով՝ դէպ ի ժայռերու շղթայ մը յառաջացան, ուր որ անանք մնած էին: Ասանկով հովիտ մը հասան, որն որ ժայռերուն մէջէն յառաջ կ'երթար. աս հովիտը ձիւնով ծածկուած էր, եւ ձեան վրայ եղջերուաց ոտքերու շատ նշաններ կը տեսնուէին. որմէ յայտնի կ'երեւար թէ անանք շատ անգամ անկից անցած դարձած են: Իրենք հովտին մէջէն մեծ դժուարութեամբ քալելով՝ մեծ այր մը հասան, որմէ քիչ մը վար հովտին բերանը՝ ուրիշ պզտիկ մ'ալ կար, ուր որ ուզեցին հանգչիլ ու կերակուր ուտել: Մեծ զգուշութեամբ կը շարժէին, որպէս զի եթէ կենդանիներէն դէպ ի նոյն կողմն եկող ըլլայ նէ՝ չխրտչին:

Գրեթէ ժամ մը սպասելէն ետքը շշուկ մը լսեցին եւ այրէն դուրս նայելով՝ տեսան որ արագոտն եղջերուաց գունդ մը հովտին մէջ յառաջ կու գայ: Անմիջապէս ուրախութեամբ այրէն դուրս ելան: Արագոտն եղջերուները զանոնք տեսնելուն պէս՝ կանկ առին, գլուխնին վեր վերցուցին սկսան հոտուըտալ, եւ քիչ մը ժամանակ անորոշ կենալէն ետքը՝ սկսան փախչիլ: Երեք բարեկամք անոնց ետեւէն գացին, եւ ժայռերու մէջ խորաձոր մը հասան, ուր երկու հետք

կայլին, մէկը հովանին հետ կը միանար, իսկ մէկալն ան էր՝ ուսկից որ կենդանիները փախած էին։ Այս կենդանիներէն հատ մ'ալ չէր երեւար. բայց նոյն տեղը ձեան վրայ իրենց ոտքի նշանները լեցուն էին, եւ կրնար մարդ ապահով ըլլալ թէ իրենց ապաստանարանը նոյն կողմերն են։ Նոյն ապաստանարանը շուտ մը գտան։ Անոնց տեղն ընդարձակ ու խոր այր մըն էր պզտիկ մուտքով։ Այս այրին քով ուրիշ աւելի պզտիկ մ'ալ կար, որն որ շատ համաձայն էր եղջերուաց ելլելն ու մտնելը դիտելու, միանգամայն հրացանով զանոնք զարնելու բաւական մօտ։

Թէպէտ ճամբորդներն եղջերուաց դարձին սպասելու համար կ'ուզէին կենալ, բայց վրանին գլուխնին սառուցով ծածկուած էր, սաստիկ կը մսէին ու կրակ վառելու միջոց չունէին. ընթացքնին ալ արդէն ութը ժամու չափ տեւած էր։ Արդ նոյն անգամ եղջերուաց ապաստանարանը գտնելով գոհ եղան, իսկ որսալը հետեւեալ օրուան թող տուին։

Ճամբան խօսակցութիւնը՝ միայն որսա-ցած եղջերուաց վրայ էր. որոնցմէ հատ մ'ալ ողջ կ'ուզէին բռնել։ Այրին մէջ ատ կենդանիներէն մէկ հատն երկայն ժամանակ ընտելցնելու համար բաւական մտածում ունէին։ Երբոր ան ալ կը մտածէին թէ կրնան նաեւ անկէ կաթ կթել, բերաններնուն ջուրը կը վազէր։

Հրացանով զարնելով բանեկնուն վրայ ապահով էին. անոր համար մտածմունքնին միայն ողջ բանելու միջոցներուն վրայ էր. ոտ ալ դիւրին բան մը կ'երեւար, եթէ կարենային անոնց ապաստանարաններն առջեւը որոգայթ մը դնել: Անոր համար ամէն հարկաւոր պատրաստութիւններն ընելու զբաղեցան: Աղիքներով հաստատուն չուան հիւսեցին, արկեղ մէջ գտնուած արագոտն եղջերուի մորթերէն որոգայթը կազմելու եւ բանածնին կապելու համար փոկ շինեցին: Ասոնք պատրաստելէն ետեւ՝ անմիջապէս հիւսիսայգի մը լուսաւորութեամբ իրիկունը ճամբայ ելան: Բոլոր պատրաստածնին բալխրին վրայ բեռնաւորեցին, որուն վրայ խորված մօ, կրակ վառելու փայտ ու հանքային ածուխ ալ դրին. Հետերնին նաեւ քանի մը գործիք առին, որոնք կրնային իրենց հարկաւոր ըլլալ: Մտքերնին դրած էին որ գիշերը կենդանիներուն քնացած ատենը՝ յանկարծ վրանին հասնին:

Աւանց պատահարի մը պզտիկ այրը հասնելով՝ հոն բանակնին դրին: Իմանալու համար որ կենդանիներն արդեօք այրին մէ՛ջն են՝ թէ չէ, Իվան կամացուկ մը ներս մտաւ, եւ անոնց հանած դղրդիւնէն ներկայութիւննին իմացաւ: Կրակոտ պատանին ան տարիքանի կը բաղձար անոնցմէ մէկ հատը զարնել, որ ուզեց զնաւուղիզը համոզել այրին մուտքին առջեւը կրակ վառելու, որ իրենք ներս մտնեն, որով կրնային դիւրաւ

քանի մը հատ մեկտեղ զարնել ։ Բայց Նաւուղիղը չուզեց անոր խորհրդին հաւանիլ, մտածելով որ եթէ ամենն ալ մեկտեղ դէպի մուտքը վազելու ըլլան, կրնան զիրենք գետինը ձգել, կոխկռտել ու մինչեւ մեռցնել ալ ։ Ինք խորհուրդ տուաւ որ կենդանեաց իրենք իրենցմէ դուրս ելլելուն սպասեն եւ ան ատեն ուզածնին զարնեն ։ Իվան կը մտածէր որ գոնէ որոգայթը շուտ մը լարուի, որով իր կարծեաց համեմատ շուտով կրնային հատ մը բռնել ։ Նաւուղիղն ասոր ալ դէմ կը դնէր, ըսելով որ աս բանս գլուխ հանելը դիւրին չէ, որովհետեւ արագոտն եղջերուները մուտքին առջեւն եղած ձայներէն վախնալով, դուրս կը յարձակին, որոգայթը կը փրցընեն կամ վրայէն կը ցատքեն ։ Ուստի հարկ եղաւ սպասել ։

Երեք բարեկամք մեծ կրակի մը քով շարուեցան, եւ մէջերնէն մէկը փոփոխակի միշտ կը լրտեսէր ։ Հազիւ երկու ժամ եղած էր, մէյ մ'ալ կենդանիները հաւանականաբար իրենց թշնամւոյն մօտ ըլլալը իմանալով, այրէն դուրս ոկսան նետուիլ, ու դէպ ի հովտին դիմացի ելքին կողմը փախչիլ ։ Աս տեսնելով՝ երեքը մեկտեղ հրացաննին պարպեցին. բայց միայն մէկը նպատակին հասաւ ։ Արագոտն եղջերու մը ինկաւ ու չկրցաւ ելլել ։ Ձագ մ'ալ ինկողին քովը կենալով՝ հեծծելու ձայներ կը հանէր, որովհետեւ մեռնողն իր մայրն էր ։ Իվան ու Ալեքսի դէպ ի այն հովտին

երկու ելքերը վազեցին, որպէս զի ատ ձագին փախչելու ճամբան բանեն. Նաւուղիղն ալ անոր վիզը չուան նետելու համար իրեն մօտեցաւ: Քանի մը անպատուղ փորձերէն ետքը՝ վերջապէս յաջողեցաւ. կենդանին առանց դէմ դնելու թող տուաւ որ ոտուքները կապեն:

Ճամբորդներն իրենց ըրած որսին վրայ գոհ էին: Ձեռքերնին երկու արագոտն եղջերու ունէին, մէկը՝ ողջ, մէկը մեռած: Ամէն բան բախտին վրան բեռնաւորելով՝ տուն դարձան: Եղջերուն յօշելն ամբողջ օրուան մը զբաղում եղաւ. որմէ կտոր մը նոյն օրը եփեցին: Իսկ ձագը՝ կապերն արձակածնուն պէս՝ խաղաղ մնաց, տուած մամուղնին կերաւ եւ շուտով ընտանեցաւ:

Առա անգամ փայտ բերելու համար պարանոցը կ'երթային: Օդը խիստ պաղ էր, ջերմաչափը 26 աստիճանի իջած էր. առանց ամպի էր:

Բերած փայտերնին ճեղքելու եւ ողոցելու համար քանի մ'օր անցընելէն ետքը, որ միջոցին խոշոր արջ մ'ալ մեռցընելով՝ շատ ճարպ, միս ու մորթ ձեռք բերած էին, եղջերու բռնելու համար նորէն դաշտն ելան: Երեք օր դուրսը մնալու համար ամէն հարկաւոր եղածը մէկտեղ առին: Առանց պատահարի մը հովիտը հասան. եւ պզտիկ այրը մտնելով՝ ամէն բան կարգաւորեցին. իսկ մեծ այրը պարապ էր: Աս տախթը գործածե-

լով մուտքին առջին որոգայթներին լարելու համար երկայն գամեր գամեցին, վրան ալ ջուր թափեցին։ Ջուրն անմիջապէս գամերուն վրայ սառեցաւ եւ ձիւնն ալ նստելով՝ գամերը չէին երեւնար։ Ամէն բան լմնցնալէն ետեւ՝ երեք բարեկամք պզտիկ պէրը դարձան, ուր արագոտն եղջերուաց դարձին սպասելով՝ հանդարտօրէն կը կենային։

Գրեթէ երեք ժամ ետքը եղջերուները մօտեցան. շատերն առանց որոգայթին մէջ բռնուելու ներս մտան։ Վերջապէս անոնցմէ մէկը՝ որն որ ուրիշներէն աւելի մեծ ու աւելի ծանրաշարժ էր եւ դանդաղ կը յառաջանար, ոտքը որոգայթին մէջ դրաւ, ազատիլ ուզելով՝ համդոյն աղէկ մը պնդեց, եւ փախչելու համար փուշ տեղ աշխատելէն ետքը բռնուեցաւ։ Մէկալներն աս տեսնելով՝ արագութեամբ փախան։ Որսորդները շուտ մը վրան վազեցին։ Նաւուղիղը զէնքը բռնելու համար եղջիւրներուն վրայ չուան մը նետեց։ Իվան ու Ալեքսի փոկով չորս ոտքը կապեցին, եւ այսպէս բալխրին վրան դնելով՝ տուն դարձան։ Բռնածնին էգ եղջերու մըն էր, եւ մեծութենէն ալ կը գուշակուէր որ յղի է։ Այրիններուն կողմը կապեցին. առջի ձագն անմիջապէս քովը մօտեցաւ։ Խեղճ անասունը մեծ վախի մէջ էր. եւ սաստիկ կը դողար, բայց փախչելու ջանք չէր ըներ. քիչ մը ետքը կերակուր ուտելու սկսաւ։ Նաւաբեկեալք կամաց

կամաց զինքն ընտանեցուցին, եւ մինչեւ որ մնամուռն իրենց ձեռքէն չառնէր՝ կերակուր չէին տար։ Այսպէսով քանի մ'օր ետքը բոլորովին ընտանեցաւ։

## ԳԼՈՒԽ ԺԲ.

### Տրտմութիւն եւ ուրախութիւն։

ԵՐԵՔ ընկերաց երկայն ատենէ վեր ունեցած բաղձանքը՝ ալ հիմայ կատարուած էր։ Երկու արագոտն եղջերու ունէին, որոնց մէկը մօտերն իրենց ձագ ու կաթ կը խոստանար։ Ուրիշ բան չէր մնար ընելու, բայց եթէ անոնց կերակուր հոգալ։ Նաեւ եղջերուի թարմ միս ունէին, եւ եթէ պաշարնին լմննալու ըլլար, կրնային դիւրաւ հոգալ, վասն զի նոյն կենդանեաց որջը գիտէին։ Աղուէսները ստոյգ է որ հրացանի ձայնէն վախնալով՝ ալ չէին գար, բայց անոնց տեղ արագոտն եղջերու ունէին, որուն ճարպոտը իրենց դդմակոան ալ շատ աղէկ կրնային համեմել։ Ասանկով ձմեռը հանգիստ անցընելու համար ամենեւին բան մը չէր պակսեր։

Բայց մարդուս վիճակն այնպէս է՝ որ մէկ հոգէ մը ազատածին պէս՝ ուրիշ մը վրան կը հասնի, որպէս զի սատ Աստուծմէ կախում ունենալը միտքէն չելլէ։ Պաղին սաստկութիւնն երթալով կ'աւելնար, եւ երեք բարեկամք նորէն այրին մէջ մնալու ստիպուած էին. սակայն արագոտն

եղջերուաց մամուռ պէտք էր հոգալ. ա-
րուն Նաւուղիղը շատ փութով եռեւէն
կ'իյնար։ Շատ անգամ երկայն ժամանակ
նոյն գործքին կը զբաղէր, թէպէտ երի-
տասարդք չէին ուզեր թող տալ, որ չըլ-
լայ թէ վնաս մը կրէ։ Իվան ու Ալեքսի
վերջապէս աս գործքն իրենց վրայ առին.
իսկ Նաւուղիղը նոյն միջոցին՝ խոհանոցն ու
տնային գործքերը պիտի հոգար։ Բայց
առտու մը երբոր նոյն գործքին համար
դուրս կ'ելլէին, նորէն ներս մտնելու ստի-
պուեցան, որովհետեւ պաղն անտանելի էր։
Օդն այնպէս կծու էր՝ որ շնչառութեան
արգելք կ'ըլլար, եւ շունչն երեսին ու
մուշտակին վրայ կը սառեցընէր։ Մերկ
ձեռքով հրացանը բռնած ատեննին՝ ձեռ-
քերնին անոր հետ կը կպչէր։ Աչքերնին
ալ շատ կը ցաւէր, եւ իրենց այնպէս կ'ե-
րեւար՝ իբր թէ երեսներնուն կաշին կը
ճաթռտի։ Այսպէս պաղ դեռ չէին զգա-
ցած. Նաւուղիղն իրենց պատուիրեց որ ամե-
նեւին դուրս չելլեն, մանաւանդ որ մու-
մուանին՝ մինչեւ խիստ պաղերուն անցնիլը,
թէեւ ամիս մը տեւէր՝ բաւական էր։ Այս-
պիսի ահագին օդի ատեն իրենք զիրենք
վառանդի մէջ գոցել հարկ չկար։

Նոյն միջոցին՝ ներսը զանազան տնային
գործքերու տուին իրենք զիրենք։ Խուղին
հին բնակիչներէն թող տրուած արջու եւ
տարապոսան եղջերուի մորթերը բաւական
դիւրաթեք ըլլալով, անոնցմէ հողաթափ

ու զգեստ շինեցին։ Ստոյգ է շինած զգեստ-ներն աղուոր չէր, բայց զիրենք տաքցը-նելու բաւական էր։ Այս աշխատութիւնն իրենց մեծ դժուարութիւն կը պատճառէր. որովհետեւ մորթերը դանակով կտրելու տախպուած էին, ասեղ ալ չունենալով՝ գա-մով կը ծակէին, եղջերուի աղիքէ շինուած լարը դերձանի տեղ կը գործածէին։ Գամը տաքցընելով ասեղ շինելը՝ Իվանին միտքը շատ ուշ ինկաւ։ Մարդս միայն կամք ու յարատեւութիւն որ ունենայ, տկար մի-ջոցներով ալ մեծամեծ գործքեր կրնայ գործել։ Հարկը՝ յաջողակ ու հնարագէտ վարպետ մըն է։

Այս գործքերուն զբաղած ատեններնին՝ նաւա-ուղիղը մէկէն մեծ տկարութիւն ու ախոր-ժակի պակասութիւն սկսաւ զգալ։ Արիւնը գլուխը զարկած ըլլալով՝ զինքը խիստ կը նեղէր. վերջապէս վրան տաքիկ հարբուխ մ'ալ գալով՝ անկողին մնաց. յառաջա-ցած հասակը, կրած արտաքոյ կարգի աշ-խատութիւնները, վատառողջ կերակու-րը, գուցէ նաեւ իր ամուսնէն ու որդիքնե-րէն հեռու գտնուելուն համար ունեցած տրտմութիւնը մէկտեղ գալով՝ աս հիւան-դութեան պատճառ եղան։ Մամուռ ժող-վելու ատեն առած պաղը փութացուցած էր հիւանդութեան երեւան ելլելը, որն որ երթալով կը սաստկանար։ Երկու եղբօրոր-դւոց սիրտը անձկութեամբ լեցուեցաւ։ Նաւաուղիղը հօր պէս կը սիրէին. նոյն դժ-

բախտ վիճակին մէջ իրենց բրած ծառայու-թեանց մեծութիւնը, մանաւանդ ամէն առթի մէջ առուած իմաստուն խորհուրդ-ներուն օգնութիւնը կը ճանչնային։ Ինքն էր նոյն ամայութեան մէջ իրենց միակ բա-րեկամն ու օգնականը։ Կը տեսնէին որ ա-ռանց անոր՝ նոյն անբնակ կղզւոյն մէջ շա-տոնց բաներնին բռուած էր։

Երկու երիտասարդք հիւանդին անկող-նէն ամենեւին չէին բաժնուեր։ Ո՛րչափ կը բաղձային իրենց հաւատարիմ բարեկամին վշտերը թեթեւցընել, նաեւ անոր ցաւե-րուն մէկ մասը կրելով։ Բայց հիմայ դիւ-քը հազալէն եւ իրենց սէրը ցուցընելէն զատ բան չէին կրնար ընել։ Արջի մուշ-տակներով կրցածնուն չափ փափուկ անկո-ղին մը շինեցին, վրան ալ աղէկ մը ծած-կեցին։ Գիշեր ցորեկ վառարանը վառած կը բռնէին, իրեն յաճախ թէյ կու տային եւ ամէն բաղձանքը գուշակելով՝ կատարե-լու եռանդուն կ'իյնային։ Բայց հիւանդն եր-թալով կը գէշնար. վրան սաստիկ տենդ մը եկած էր, եւ բոլոր անդամներուն վրայ խիստ ցաւ կը զգար։ Երիտասարդաց ձեռ-քէն ուրիշ բան չգալով, եռանդեամբ հա-սարակաց Հօրը դիմելով՝ նաւուղղին առող-ջութիւնը կը խնդրէին։ Բայց յոյսերնին բո-լորովին կտրեցաւ, երբ որ հիւանդն ասկէ տկարանալով՝ գրեթէ ալ չէր կրնար խօսիլ։

Աս վիճակին մէջ իր բարեկամներուն նշան բրաւ որ մօտենան, եւ մեծ դժուարու-

թեւամբ նստելով ու դողդոջող գլուխը ձախ թեւին կռթընցընելով՝ ախար ձայնիւ մը ըսաւ․ Տէրտէր՛ բարեկամք, կը զգամ որ քիչ մը ետքը ձեզմէ պիտի բաժնուիմ։ Աստուած զիս աս աշխարհէս կը կանչէ։ Բայց կրած նեղութիւններս ալ պիտի լմըննան։ Մի՛ լաք։ Նախախնամութիւնը ձեր վրայ կը հսկէ ու թող չըլլար որ կորսուիք։ Վստահ եղէք յԱստուած. Ինք միշտ ձեր օգնականն ու ամենէն ապահով պաշտպանն է․ ինչպէս որ մինչեւ հիմայ օգնեց, այնպէս ալ զձեզ ասկէ ազատելու միջոցները կը խրկէ։ Բայց նոյն երջանիկ վայրկեանը ես պիտի չտեսնեմ։ Ձեր հայրենիքը դառնալու որ ըլլաք, իմ կինս ու որդիքս ձեզի կը յանձնեմ, զիրենք մխիթարեցէք եւ որչափ որ կրնաք՝ իրենց օգնութեան հասէք, զիս յիշելով որ ամէն ժամանակ ձեզի բարեկամ եղայ ու ծառայելու պատրաստ։ Մեռնելու վրայ եղող բարեկամի մը վերջին հայցուածը կատարեցէք։ Մնա՛ք բարով, բարեպաշտ ու աշխատասէր եղէք, ան ատեն Աստուած ձեզի հետ կ'ըլլայ ու հարկաւոր եղածը պիտի տայ։

Աս խօսքերը շատ դժուարութեամբ խօսելէն ետեւ՝ նորէն անկողնոյն վրայ ինկաւ, աչուըները գոցեց, եւ բոլոր անդամները թանուած անդամալուծի պէս անշարժցան։ Ընչառութիւնը հազիւ կ'իմացուէր։ Երկու բարեկամք կարծելով որ ալ ամէն բան լմընցած է, սաստիկ պաղպաղութեամբ

մէջ ինկան, ակռան լալ ու հեծել․ վերջին վայրկենին մէջ իրենց ընկերին տրտմութիւնը չաւելցնելու համար վրան շատ մը արջի մուշտակներ ձգելէն ետքը՝ հեռացան։ Քովը միայն պզտիկ արագաւան եղջերուն մնաց, որն որ իրեն շատ ընտանեցած էր։

Երկու երիտասարդք ցաւերնուն սաստկութենէն այնպէս կը հեծեծէին, որ բոլոր այրը կը հնչէր։ Թէ որ մեր հաւատարիմ բարեկամը կորսընցընելու ըլլանք նէ, ի՞նչ պիտի ըլլանք, կ'ըսէին։ Աս ամայի կղզւոյն վրայ ի՞նչ յոյս կրնանք ունենալ։ Քիչ մը ետքը մեզմէ մէկն ալ անոր ետեւէն պիտի երթայ։ Հուսկ վերջը մնացողն ի՞նչ պիտի ընէ։ Աստուած մեզի ողորմի։ Մ՛եր վշտերը մարդու զօրութենէն վեր են։ Սաստիկ ցաւոց մէջ ինկած՝ ծնկան վրայ գալով, Աստուծոյ կ'աղաչէին որ կամ իրենց բարեկամն ազատէ, կամ զիրենք ալ մէկտեղ երկրիս վրայէն բառնայ, եւ այսպէս կրած նեղութիւններնուն վախճան մը տայ։

Քիչ մը վերջը ցաւերնուն սաստկութիւնը քիչ մը մեղմանալով, սաանկ ըսին. Հա՛յր երկնաւոր, մեզի մեծ վշտեր կը խրկես, բայց մեր խեղճ հօրը պատճառած ցաւերնիս ասոնցմէ մեծ տառապանաց ալ արժանի ենք։ Քու կամքդ ըլլայ։ Զօրութիւն տուր մեզի որ վշտերուն դիմանանք։ Ետքը իրարու ձեռքէն բռնելով՝ խօսք տուին որ համբերութեամբ յարատեւեն, մինչեւ ցմահ եղբայրաբար իրարու օգնեն։

Մարդս փոխել չկրցածը՝ պէտք է որ համ-
բերութեամբ կրէ, կ'ըսէին: Աստուած միշտ
հրաշալի կերպով մեզի օգնեց. ասկէ ետքն
ալ ինք մեր պաշտպանը կ'ըլլայ:

Արտերնին արտմութեամբ լեցուած ըլ-
լալով՝ չէին համարձակեր հիւանդին ան-
կողնոյն մօտենալու, վախնալով որ չըլլայ
թէ անոր իրօք մեռած ըլլալը տեսնեն: Դէպ
ի ժայռին ներքին կողմերը գացին, որպէս
զի եգ եղջերուին ուտելիք տան: Մէյ մ'ալ
տեսան որ եղջերուն ձագ մը հանած էր,
որն որ արդէն կաթ կ'ուտէր: Ուրիշ ատեն
ըլլար նէ՝ աս բանս իրենց մեծ ուրախու-
թիւն կը պատճառէր. բայց աս պարագայիս
մէջ վրանին ամենեւին ազդեցութիւն չը-
րաւ: Թէ որ մեր բարեկամն աս ձագին
մօրմէն կաթ ուտելը տեսնէր նէ, կ'ըսէին,
երեքնիս ալ կ'ուրախանայինք:

Մէյ մը վառարանին նայեցան, եւ ետքը
սկսան դուրսը զբօսանք մը փնտռել. բայց
պաղէն շուտ մը ներս մղուեցան: Ի վերայ
այսր ամենայնի չէին համարձակեր հիւան-
դին անկողնոյն մօտենալու: Կրակին քով
նստելով՝ տխուր խորհուրդներու մէջ մնացին:
Քիչ մը ժամանակ այսպէս կենալէն ետեւ՝
Իվան ըսաւ. Մեր բարեկամին ապերախ-
տութիւն կ'ընենք՝ զինքը վերջին վայրկեանին
մէջ թող տալով: Պէտք է որ մեր հաւա-
տարիմ բարեկամին մահուան ալ համբե-
րենք: Ասոր համար հարկաւոր եղած զօրու-
թիւնն Աստուած կու տայ մեզի:

Աս ըսելով՝ կանթեղը առաւ եւ Ալեքսիին հետ հիւանդին անկողնոյն քով գացին։ Բայց որչափ զարմացան եւ ուրախացան՝ տեսնելով որ անիկա սաստիկ կը քրտնէր, եւ շնչառութիւնն ազատ էր։ Աս զարմանալի փոփոխութիւնը պատճառողը՝ եղջերուի ձագն էր։ Հաւատարիմ կենդանին, ինչպէս ըսինք, շատ մը դէտ վարժած էր Նաւուզզին՝ որն որ ամէն օր իրեն կերակուր կու տար. ուստի անոր սատուքներուն վրան պառկելով՝ զինքն աղէկ տաքցուցած էր։

Բարեկամնիս դեռ կ'ապրի, պոռաց Իվան՝ ուրախութենէն ինք իրմէ ելած։ Աստուած գթած է, գոչեց Ալեքսի, մեր բարեկամը նորէն կեանքը ստացեր է։

Նաւուզիղը՝ թէպէտ տկար, բայց պայծառ աչօք մը երկուքին նայելով, թէյ ուզեց, վասն զի սաստիկ ծարաւ ունէր։ Կաթսային մէջ եռացած ջուր կար, Իվան շուտ մը աճապարեց թէյը պատրաստեց։ Անանկ կ'երեւար որ հիւանդը խորունկ քնէ մը արթընցած ըլլայ, բոլորովին քրտինքի մէջ էր եւ մեծ թեթեւութիւն մը կը զգար։

Երկու երիտասարդք ուրախութենէն չէին կրնար կենալ։ Նաւուզզին այսպէս յուսահատեալ վիճակէն յանկարծ աղէկի փոխուիլը՝ քիչ մնաց զիրենք կը խենթեցընէր։ Երբոր հանդարտութեամբ մը կրցան իրենց երջանկութեան մեծութիւնը մտածել, ծնկան վրայ ինկան եւ այսպիսի մեծ

ու անակնկալ շնորհքին համար Աստուծոյ շնորհակալ եղան։

Հիւանդին ամէն կարելի հոգերն ըրին, Երկուքն ալ փոփոխակի քովը կը հսկէին զինքը տաքութեան մէջ պահելու եւ տաք ըմպելիք տալու համար։ Հանդարտ քուն մը զինքն աւելի զօրացընելով՝ երկրորդ օրը շատ աւելի վրայ եկած կը տեսնուէր։ Իվան ձեռքը գաւաթ մը թէյով կաթ առած՝ հիւանդին մօտենալով, նաւուղիղը հաճութեամբ մը հարցուց թէ կաթն ուզե՞ս գտաք։

Իրեն պատմեցին թէ արագոտն եղջերուն ձագ մը հանած է, եւ այսօր առաջին անգամ Իվան աս կաթը կթած է։ Աստուած իմ, ըսաւ նաւուղիղը՝ ձեռուըներըը միացընելով, ես մահուան հետ կռուած ատենս՝ իմ առողջութիւնս հաստատելու համար նոր դարման մ՚ալ տուեր ես. Գոհութիւն քեզի։ Անկէ ետքը մսի ջուրն ու թէյով կաթը հիւանդին սովորական կերակուրն էր։ Իր շնչառութիւնն օրէ օր կ՚աղէկնար. տաք ըմպելիքներով կը ջանային աւելի եւս նոյնը դիւրացընելու։ Ամէն օր երկու անգամ շաքարօղիով թէյ կուտային։ Հիւանդն երթալով կ՚աղէկնար, եւ կերակուր կ՚ուզէր։ Երիտասարդք կը վախնային որ չըլլայ թէ արագոտն եղջերուին միոն իրեն դժուարամարս գայ. իսկ արջու եղոտ միս ու աղած ձուկ տալու աւելի եւս չէին համարձակեր։ Կաթը հի-

ւանդը կշտացընելու բաւական չէր ։ Ուստի ակամայ որոշեցին որ նոր ծնած եղջերուն մորթեն ։

Նոյն մէջէն հիւանդին կտոր մը տուին, որն որ մեծ համեմութեամբ կերաւ, հետն ալ քիչ մը հին գինիէն խմեց ։ Մօր անընդադար ջուրն ու եղջերուի ձագին միսը քիչ ժամանակի մէջ զինքը զօրացընելով, քիչ մը ետքը սկսաւ օրը քանի մը ժամ անկողնէն ելլել ։ Կամաց կամաց անկողինը բոլորովին թող տուաւ, եւ կը զգար որ զօրութիւնն երթալով կ'աւելնայ ։ Երկու երիտասարդք իր առողջանալը Աստուծոյ շնորհակալ ըլլալով եւ փոքր ճաշով մը կատարեցին ։

## Գ Լ Ո Ւ Խ Ժ Թ .

Նոր դէպք, գայլերու եւ արջերու հետ կռիւ ։

ՍԱՒՈՒՂՂԻՆ հիւանդութիւնն ու առողջանալն ամիս մը տեւած էր ։ Նոյն միջոցին ամենէն ցուրտ ատենն անցած էր, եւ երեք բարեկամք ալ կրնային իրենց բնակարանէն դուրս գործել եւ հեռու կողմեր ալ երթալ պտըտիլ ։ Սպաննուած արագասան եղջերուին միսը կերուած լմնցած էր ։ Նաւազինն ալ կամաց կամաց եղջերուի ձագին միսը լմնցուցած էր ։ Փայտի պաշարին վերջին ալ հասած էր ։ Անոր համար երկու երիտասարդք մտքերնին դրին որ արագասան եղջերուի որսի երթան . իրենց ընկերին զօ-

բուԹիւնը դեռ բոլորովին չէր նկած, եւ վախնալու իրաւունք ունէին որ չըլլայ Թէ շուտով պարզ օդ ելլելով՝ նորէն պաղի։ Ինք անանց յանձնեց որ արջերէն զգուշանան, որոնք սաստիկ պաղէն ու ձեան Թանձրութենէն կերակուր չգտնելով՝ աւելի կը գազանանային։ Ինք նոյն ատեն անոյին գործքերու կը զբաղէր։ Երկու տարագրան եղջերուներն իրեն այնպէս վարժած էին, որ այրին մէջ եղած ատեն՝ անկէն անեղ եւեւէն կ՚երԹային։

Օր մը երբոր Նաւուղիղն իրենց բնակարանին քովի այրին մէջ կը կենար, եզ տարագրան եղջերուն ղըլուխը վերցուցած՝ պատին քովէն յառաջ կ՚երԹար, եւ արտաքոյ կարգի բան զգալու պէս՝ կը հոտուըտար։ Վերջապէս ժայռին կամարին վերին կողմն եղած ծակի մը քով կեցաւ, եւ կըցածին չափ քիԹը վեր վերցընելով՝ սկսաւ հեւալ ու ոլել, իբր Թէ բանի մը սաստիկ կը փափաքի։ Նաւուղիղն աս գործողուԹիւնը տեսնելով, կը վախնար որ չըլլայ Թէ նոյն ծակը ժայռերէն դուրս ճամբայ մ'ունենալով՝ նոյն ատեն արջ մը ներս մտնելու վրայ ըլլայ։ Զէնքերը պատրաստեց, բայց խաբուելը շուտով իմացաւ, վասն զի կը տեսնէր որ տարագրան եղջերուն անհամբերուԹիւն ցուցընելու տեղ՝ իր առջեւի ոտուըները պատին վրայ դրած՝ նոյն ծակին հասնիլ կ'ուզէր։ Կանթեղը մօտեցընելով՝ պատին վրայ խորունկ ծակ մը տե-

տաւ։ Փորձեց որ մտադրելով վեր ելլէ. բայց պարապ տեղ, վասն զի ժայռը շատ ցից էր։ Ան ատեն միտքն եկաւ որ շատոնց սանդուղ մը գտած էր, զոր որ գուցէ այրին հին բնակիչներն ան ծակն ելլելու կը գործածէին. բայց այնպէս փտտած էր՝ որ այրած էին։ Կ'իմանար որ եղջերուին զգացածն՝ ուտելու բան մը պիտ'որ ըլլայ. բայց ինչ ըլլալը չէր կրնար գուշակել։

Երբ որ ինք ծակին հասնելու եղանակը կը մտածէր, Իվան ու Ալեքսի վրայ եկան։ Թալլերին վրայ մեծ արագոտն եղջերու մը պառկած էր։ Որսը Ներս առնելէն առաջ, Նաւուղիղն իրենց հեռաւորութեան ատեն պատահածը պատմեց։ Մէկզմէկ բռնելով՝ ջանացին որ ծակին հասնին, բայց անկարելի եղաւ։ Անհրաժեշտ հարկաւոր էր որ սանդուղ մը շինէին. բայց ինչպէս կրնային։ Իվան ու Ալեքսի մտքերնին դրին որ քիչ մը հանգչածնուն պէս՝ պարանոց երթան եւ հոնկից՝ յարմար փայտ մը բերեն։ Քիչ մը կերակուր ուտելէն ետեւ՝ ճամբայ ելան, եւ եղեւնի փայտով մը ետ դարձան։

Երկաթեղէններու մէջ գչիր մը գտած ըլլալով, անով ծառին վրայ մէյմէկ ոտք հեռաւորութեամբ ծակեր բացին։ Նոյն ծակերուն մէջ գաւազաններ անցընելով՝ շուտով մը սանդուղ շինեցին։ Ամենէն յառաջ Իվան կանթեղով մը, ետքէն ալ Ալեքսի Նաւուղ լապտեր մ'առած՝ Ներս մտան։ Աս

ծակը ժայռին մէջ շատ հեռու կ'երթայ, ըսաւ Իվան, եւ կ'երեւայ որ երթալով կը լայննայ: Իրաք ալ՝ չէր խաբուեր: Ցած ու նեղ բերնով մը բնական խաւոյ մըն էր, որն որ փոսան մը կը նմանէր: Մուտքին մէջ՝ շատ մը չորցած մամուռ ու դդալխոտ կար: Հաւանականաբար արագաոտն եղջերուն մամռոյն հոտն առած էր: Փնտռելով՝ շատ տակառներ ալ գտան: Ակեքսի նաւուղիղը կանչելով՝ գտածնին իմացուց, եւ տակառները բանալու համար կացին կամ մուրճ մ'ուզեց: Առջի բացուած տակառին մէջ ալիւր կար, որն որ շատ աղէկ պահպանուած էր. երկրորդին մէջ՝ սիսեռն, երրորդին մէջ՝ բակլայ, եւ այսպէս ամենուն մէջն ալ ուտելու պաշար կը գտնուէր:

Աս բանս երեք բարեկամաց մեծ ուրախութիւն պատճառեց, որովհետեւ երկայն ժամանակէ վեր աս տեսակ կերակրէ զրկուած էին: Հաւանականաբար խղլին վերջին բնակիչը նոյն ուտելիքներն առձեռն պատրաստ ունենալու համար՝ հոն դրած էր:

Հիմայ նաւաբեկեալներն աղէկ կերակուր կրնային պատրաստել: Երբեք այսչափ պաշար չէին ունեցեր. նաւուղիղը խոհակերութենէ աղէկ կը հասկընար, եւ գիտէր ալ որ աս տեսակ կերակուրներն իրենց զօրութիւնն աւելցընելու շատ օգուտ կ'ընէ: Միտքը դրաւ նաեւ որ հաց ալ չինէ, եւ եթէ ձեռքն ունեցած տկար միջոցներով կատարեալ յաջողցընել կարող

ալ չեղաւ նէ, գէթ փուռ մը նաւա-կան պատերազմաս չըներ, որն որ երկայն ժամանակէ վեր հայցէ զրկուած բարե-կամներուն շատ հաճոյ եկաւ: Նաւե-ալիւրով ու ճարպով աղէկ ապուր չըներ: Ճաշերնին աւելի կատարեալ ընելու հա-մար՝ մէյմէկ գաւաթ ալ գինի խմեցին:

Երեք նաւաբեկեալոց հիմակուան վիճակը կըզղին հասած ժամանակուան վիճակին հետ բաղդատելով, խիստ երջանիկ էր. բայց ամէն բան զգուշութեամբ կը գործա-ծէին՝ միշտ ապագան մտածելով: Իրենց գործքերն այնպէս կարգաւորած էին, որ ամենեւին պարապ չէին կենար: Երբոր օդը մեղմ կ'ըլլար, Ալեքսի եւ Իվան փայտ ժողվելու կամ որսի կ'երթային. Նաւաւուղէ-ղը խոհանոցի եւ ուրիշ ներքին գործքերը կը հոգար: Փայտ ժողվելը շատ դժուար-ցած էր, որովհետեւ թանձր սառուցի տա-կէն պէտք էր փրցընել հանել: Բայց գե-տինը սառած ըլլալով՝ բեռնաւորած բալ-խերը կընային դիւրութեամբ տեղերնին բե-րել: Շատ անգամ որսէն առանց երէի կու-գային. Ինչու որ արագոտն եղջերուներուն ոտքը վախցած ըլլալով՝ մեծապէս կը զգու-շանային, անոր համար իրենց ալ մեծ զգուշութիւն ու խոհեմութիւն հարկաւոր էր: Իվան եւ Ալեքսի ամէն արշաւանքներ-նուն մէջ պէտք էին մեծապէս զգուշանալ արջերէն ալ, որոնք կերակրոյ պակասութե-նէն՝ սաստիկ կատղած էին:

Նաեւ շատ անգամ գայլեր ալ կ'երեւային, որոնք զարհուրելի կերպով հաչելով՝ իրենց գալուստը կ'իմացընէին։ Օր մը երկու երիտասարդք պարտանոցէն փայտ բերած ատեննին, հեռուէն շատ գայլերու ձայն լսեցին, եւ այնպէս կ'երեւար որ երթալով կը մօտենան։ Գիտնալով որ անոնք կրակէն կը վախնան, բլուրին վրայ կրակ վառեցին եւ այնպէս ետ դարձան։ Գայլերը հեռուէն զարհուրելի կերպով հաչելով մինչեւ տնակը ետեւնէն եկան ու կռուելու չյանդգնելով՝ ելան գացին։ Բայց ետքը սաստիկ անօթութենէ ստիպուած՝ շատ անգամ տնակին մօտենալով, կերի համար աղուէսներու նետուած փորոտիքը ձեան տակէն հանելու կ'աշխատէին։ Ասանկով երկու հատ սատկեցուցին. բայց մորթերնին միայն քանի մը կրնար ծառայել. իսկ միսերնին ձեան վրայ նետեցին։ Հասարակօրէն կ'ըսուի որ գայլերու միսը՝ գայլէ զատ ուրիշ կենդանիները չեն ուտեր։ Բայց երեք բարեկամք քանի մ'օրէն տեսան որ նետուած դիերը բոլորովին կերուած ոսպառուած էին։ Վերջէն համոզուեցան որ արջերը, հաւանականաբար արտաքոյ կարգի քաղցէն ստիպուելով, կերած էին։

Իրիկուն մը հանդարտութեամբ քնացած ատեննին՝ նաւուղիղը, որն որ իր ընկերներուն պէս խորունկ չէր քնանար, դէպ ի կէսգիշերը աղաղակէ մ'արթընցաւ։ Իսկզբան կարծեց որ հովն կամ գայլերու

ձայն ըլլայ. բայց շուտով մը արջերու խիստ հաչիւն ըլլալն իմացաւ: Վախնալով որ չըլլայ թէ ան բազմաթիւ երեւցող արջերը մինչեւ բնակութեան դուռը հասնելով՝ կարենան ներս մտնել, ընկերներուն ձայն տուաւ: Որովհետեւ երկայն ատեններ արջերէ անհանգստութիւն մ'ունեցած չըլլալով՝ խրամին մէջէն ձիւնը մաքրելու հոգ չէին տարած, խրամը բոլորովին լեցուած եւ վրան սառուցէ թանձր կեղեւ մը պատած էր, այնպէս որ արջերը դիւրաւ կրնային վրայէն անցնիլ:

Իվան լուսամուտքը բացաւ՝ որ դուրսն եղածն իմանայ: Օդը հանդարտ, բայց սաստիկ պաղ էր, ձիւնը հիւսիսայգի լուսէն կը փայլէր: Նոյն լուսով տեսաւ որ հինգ հատ սաստիկ անօթի արջեր խրամին վրայէն յառաջ կու գային: Երեք բարեկամք հրացաննին առնելով՝ զարկին եւ երկուքը գետինը պառկեցուցին. բայց անոնք շուտ մը նորէն ելլելով՝ սաստիկ հաչելով մը ընթացքնին յառաջ կը տանէին: Մեկալ չզարնուողները քանի մը վայրկեան կեցան. բայց ետքէն աւելի եւս կատաղութեամբ յարձակելով՝ կէսէն աւելի լեցուած խրամէն ցատքեցին, եւ ներքին զառիվայրին վրայէն մագլելով՝ մինչեւ գաւիթը հասնիլ կ'ուզէին:

Բնակիչք նոյն միջոցին հրացաննին լեցընելով ու պարպելով՝ ուրիշ մը այնպէս աղեկ զարկին՝ որ ա՛լ տեղէն չշարժեցաւ:

Ան ատեն մէկալ երկու վիրաւորներն ա-
նոր վրան ինկան ու պատռելու սկսան :
Գետինը պառկողը՝ միայն ստորին վիրա-
ւորած ըլլալով , երկու թշնամեացը դէմ ինք
զինքը սկսաւ պաշտպանել : Նոյն կուսայն
ժամանակ պաշարեալները հրացաններն շատ
անգամ լեցընելով ու պարպելով , երեք
արջերը խիստ շատ վէրքեր առին , այնպէս
որ իրենք զիրենք չէին կրնար պաշտպանել .
բայց իրարու դէմ աւելի եւս զայրացած
էին : Իսկ մէկալ երկու արջերը , շատ առ-
խատութեամբ մագլելով՝ փոսին զառիվայ-
րէն վեր ելած գաւիթը հասած , եւ հրա-
ցաններուն յաճախ ձայնէն ու ընկերներուն
վիրաւորուելէն՝ աւելի եւս կատղած էին :
Երեք բարեկամք անոնց վրայ քանի մը
գնդակ ալ արձակեցին : Երեքն ալ մէկ
հատին նշան առած եւ երկու հոգի գլխուն
հանդիպցուցած ըլլալով , անիկայ ինկաւ .
եւ նորէն երեք գնդակ ալ ուտելով՝ սատա-
կեցաւ :

Հինգերորդը՝ որ ամէնուն վէրք չէր ա-
ռած , կատաղութեամբ մինչեւ տնակին
դուռը հասած էր , ուր որ հրացանով նշան
առնելը անկարելի էր : Դրան ստորին կը
զարնէր ու մարմնոյն բոլոր ծանրութեամբը
կռթընելով՝ ներս մտնել կը ջանար : Ներ-
սինները կը վախնային որ չըլլայ թէ դուռն
աս բռնութեան չկրնալով դիմանալ՝ կո-
տրի : Կենդանին վախցընելու եւ փախցը-
նելու համար կացնով դրան կը զարնէին .

բայց արջն իր հաստատութեամբն իմանա-լով որ ներսը մարդ ու արտաքսան եղջերուակայ, ամենեւին վտանգ մը բանի տեղ չէր դներ: Նաւուղիղն ըսաւ որ իրենց թշնա-միէն ազատելու մինակ մէկ միջոց կայ, այս էր՝ դիմացէ դիմաց կռուելով սատկեցընել:

Նաւուղիղն ու Իվան Նիզակնին ձեռ-քերնին առին. իսկ Ալեքսի իր ծանր կա-ցինն առած՝ դուռը շուտ մը այնպէս պինտ բանար՝ որ ինք ետեւ գտնուի: Առաջին երկուքն անասնոյն դիմացն ելլելով Նի-զակը մարմնոյն մէջ պինտ խոթէին, իսկ Ալեքսի կացինով գլուխն աղէկ մը պինտ իջեցընէր: Ասոնք այսպէս որոշելէն ետեւ՝ արջը բոլոր ծանրութեամբը դրան կռթընած տանէն՝ Ալեքսի յանկարծ բացաւ, որով կենդանւոյն յենարանը վերցուելով ներս ինկաւ. բայց շուտ մը ոտք ելլելով դէպ ի Նաւուղղին կողմը սկսաւ յառաջանալ: Ինք դիմացն երթալով՝ Նիզակը մինչեւ կոթը մարմնոյն մէջ խոթեց. Իվան ալ փորը մխեց. արջն ինկաւ, եւ նոյն վայրկենին՝ Ալեքսիէն ալ գլխուն վրայ սաստիկ հարուած մ'ընդունելով՝ ալ չկրցաւ ելլել: Նաւ-ուղիղն ու Իվան կացիննին առնելով, Ա-լեքսիին հետ այնպէս սաստիկ կ'իջեցնէին, ու շուտ մը արջին գլխու սկաւառակը ջախ-ջախեցաւ:

Մեծ վտանգէ մ'ազատեցանք, ըսաւ Նաւ-ուղիղը, որն որ կրնար գէշ վախճան ու-նենալ: Բայց Աստուած զմեզ պաշտպա-

նեց. գոհութիւն տանք իրեն։ Մեծ անխոհեմութիւն ու անզգուշութիւն ըրած էինք, որուն կատարածը՝ կրնար զարհուրելի ըլլալ։ Խրամը չէինք մաքրած. իսկ արջերն երթալով անօթութենէ աւելի կը զազանանան։ Ամէն բանէն յառաջ ասոր հոգ տանելու է։

Երկու երիտասարդք վախնալով որ՝ բաց օդի մէջ երկայն կենալը՝ նաւուղղին վնաս մը չտայ, ուզեցին որ անիկա տնակին մէջ արջերը մաքրելու պատրաստած ատեն՝ նոյն գործքն իրենք ընեն։ Շատ ընդդիմանալէն ետքը՝ հաւանեցաւ, եւ հինգ արջերը տնակը բերուեցան։ Երկու երիտասարդք սաստիկ գործունէութեամբ զբաղելով, բոլոր ձիւնը ներքին պատերին վրայ նետեցին, այնպէս որ յառաջուընէ աւելի մեծ պատուար մ'եղաւ։ Այսպէս դիզուած ձիւնը՝ բրչով սրածայր ալ կոտրելով, վրան ջուր թափեցին, որով սառուցէ պատ մը դարձաւ. ալ անկէ ետքը արջերուն վեր ելլելն անկարելի էր։ Շատ անգամ ուրիշ արջեր նաեւ բազմութեամբ ալ կու գային մինչեւ խրամ կը հասնէին. բայց տնակը հասնիլ չէին կրնար։

Փայտ բերելու կամ որս ընելու երթալը նաւաբեկեալներուն շատ վտանգաւոր էր։ Բարեբախտութեամբ՝ մինչեւ գարուն բաւական պաշար ունէին։ Այսպէսով գրեթէ միշտ իրենց տնակին կամ գուբին մէջ կը կենային։

# ԳԼՈՒԽ Ի.

## Մեծ մրրիկ եւ կործանութիւն։

ԱՅՍՊԷՍ չորս շաբաթ ալ անցուցին։ Օդը միշտ սաստիկ պաղ էր, մութ գիշերը՝ որն որ չորս ամիս վեր կը տիրէր, միայն երբեմն լուսնով ու հիւսիսայգով կը լուսաւորէր։ Նոյն ատենները չէ թէ միայն դուռը գոց պահելու պարտաւորած էին, այլ նաեւ լուսամուտն ալ. վասն զի այլազգ թէեւ վառարանն տաքաշէկ ալ բռնէին՝ տաքնալն անկարելի էր։ Եւ թէպէտ ամենէն խիստ պաղերն անցած էին, անանկով ալ դուռը կամ լուսամուտը բացածնուն պէս՝ այրին պատերուն վրայ բարակ կը սառէր, որով տնակին ու երկու այրերուն մէջ օդը կ'ապականէր եւ բնակչաց առողջութեան վրայ գէշ ազդեցութիւն կրնար ընել։ Միայն օրուան մէջ երբեմն երբեմն մաքուր օդ շնչելու համար՝ դուրս ելլելու կը պարտաւորէին. ուր երկայն ատեն ալ կարող էին կենալ, վասն զի օդն այնպէս կծու չէր, եւ մուշտակներնուն մէջ փաթթուելով՝ կրնային պահպանուիլ։

Արագոտն եղջերուաց ճարակը լմննալու վրայ ըլլալով՝ երեք բարեկամք գրեթէ ամէն օր ձեան մէջէն շատ դժուարութեամբ մամուռ ժողվելու կ'երթային. ձիւնը թանձր սառուցի կեղեւով մը ծածկուած ըլլալով, կացնով պէտք էր կտրել։ Բայց օդի մէջ մարմնոյ շարժումն իրենց շատ օգուտ

կ՚ընէր. իսկ երբոր ձեան տեւողութենէն կամ սաստիկ պաղէն քանի մ'օր ներսը կենալու ստիպուէին, բոլոր մարմիններնուն վրայ ծանրութիւն կը զգային ու վրանին սեւամաղձութիւն մը կը տիրէր։

Թէեւ հիմակուան վիճակնին՝ կղզւոյն մէջ բնակելու սկսած ժամանակուան համեմատութեամբ շատ տանելի էր, բայց ձմեռուան ու գիշերուան երկայն տեւելն իրենց մեծ ձանձրութիւն կը պատճառէր։ Անոր համար անձկութեամբ կը սպասէին գարնան գալուն, որն որ զիրենք ազատելու համար նաւ մը կրնար բերել։ Մարդս այսպէս է։ Մեծ հոգէ մը ազատելուն եւ աւելի աղէկ վիճակի մը մէջ գտնուելուն պէս՝ վայելած բարիքն անարգելով, կը սկսի նոր բաներու բաղձալ, որն որ իրեն հանգիստ չիտար։

Երեք ճամբորդք աս զգածմանց մէջ եղած ատեն, գիշեր մը նաւուղիղը զարհուրելի ձայներէ արթըննալով՝ կարծեց որ լսածն արջերու կամ գայլերու ձայն է, որոնք իրենց կը մօտենան՝ Անմիջապէս ընկերներուն ձայն տուաւ՝ որ հասարակաց պաշտպանութեան համար պատրաստուին։ Իվան դուռը բանալով՝ կ'ուզէր դիտել թէ ինչպիսի թշնամւոյ հետ պիտի կռուին. բայց մէկէն անանկ զարհուրելի հով մը փչեց, որ գրեթէ զինքը գետինը կը պառկեցընէր, որով իմացուեցաւ թէ ան մռընչիւնը՝ նոր ելած մեծ մրրկի մը ձայնն է։

կ՚ազատի, նաւերը կխտորաւթեամբ կու գան եւ զմեզ կ՚ազատեն ։ Յաստուած վստահ ըլ-լանք եւ աղաչենք որ մեր վրայ գթայ եւ զմեզ ազատելու մէկը խրկէ ։

Երկու երիտասարդք աչուընին ու ձե-ռուընին երկինք վերցընելով, ամէնքն ալ քանի մը վայրկեան բարեպաշտ խորհուրդ-ներու մէջ մնան, եւ ետքէն մօտաւոր ա-զատութեան յոյսը սրտերնուն մէջ խաղա-ղութիւն ձգեց ։

Վեց օր տեւեց մրրիկը. եւ բոլոր նոյն ժամանակը խուղէն դուրս ելլելն անկարելի եղաւ ։ Նոյն ատեն Մարտին առաջին կէսն էր ։ Ետքը երկինքը պարզեցաւ, լուսինն ալ ծայրերուն եաեւէն մահկի ձեւով երեւ-ցաւ . առաջին քառորդը կը մտնէր ։ Իվան ու Ալեքսի հանդարտութեան առջի օրերը փայտ բերելու համար պարտանցը գացին ։ Ծովեզրը ահեղ ու զարհուրելի տեսարան մը կը բանար անոնց առջեւը. ցամաքը նե-տուած ու ջախջախուած սառոյցները հովէն վրայէ վրայ դիզուելով՝ անհեթեթ ձեւեր ստացած էին, եւ զանոնք լուսաւորող լուսնոյ աղօտ լոյսն ալ անոնց այլանդակ կերպարանքը արտաքոյ կարգի բան կ՚ե-րեւցընէր ։

Երկու երիտասարդք եզերքին մօտենալով՝ սրածայր սառոյցներու մէջ սեւ զանգուած մը տեսան եւ քակուած նաւի մը կող կարծեցին ։ Աս տեսիլքէն՝ Հերայի մէջ ե-ղած իրենց ընկերներին մտքերնին ինկաւ,

եւ տեսան վախնալով որ չըլլայ թէ նաւակոծութեան ընկողքը՝ անզգլխացի՝ նաւապետին եւ իր նաւաստեաց դժբախտ վախճանին գոյժն իրենց տալու համար հոն նետուած ըլլան ։ Ուստի որոշեցին որ հեռուէն անսարսափ կերպով տեսածնին՝ երթան մօտէն աղէկ մը գիտեն ։ Մինչեւ հոն հասնելու ճամբան դժուար ու վտանգաւոր էր ․ սառնորիկ մերկէն նոր մղուած սառոյցները՝ շատ անհաւասար ու վեր վար էին, տեղ տեղ ալ այնպիսի միջոցներ թողուցած էին՝ ուր ծովը սառած չէր ։ Բայց երիտասարդները շատ արգելքներու յաղթելու եւ վտանգներէ չվախնալու վարժած էին ․ անկից զատ՝ յանդուգն Իվանին վառվռուն երեւակայութիւնը գրգռուած ատեն՝ ամենեւին վտանգէ մը չէր վախնար ․՝ իսկ Ալեքսի քիչ մը դիտելէն ետքը՝ ընկերին ետեւէն գնաց, միտքը դնելով որ նոյն վտանգաւոր արշաւանաց մէջ զինքը մինակ չթողու ։

Իրենց հետաքրքրութիւնը մեծապէս գըրգռող տաւարկային մօտենալով, խիստ ու անհամձոյ եւ իրենց անծանօթ հոտ մ՚առին, որմէ կարծես թէ կը խեղդուէին ։ Սակայն եւ այնպէս սուր սառոյցներու վրայ կոխելով եւ սառոյցներու տակէն ծառերը հանելու համար հետերնին բերած բրիչներուն ու թիակներուն վրայ կռթընելով ճամբանին յառաջ կը տանէին ։ Ինչպէս զարմացան միացին, երբ որ տեսան թէ ի-

րենց նաւ կարծածը՝ սառոյցներու վրայ նետուած ահագին կէտ մըն էր։

Աս վիթխարի գազանը՝ որ վաթսուն ոտքի չափ երկայնութիւն ունէր, քանի մը օր յառաջ սատկած կ'երեւար ու անտանելի գարշահոտութիւն մը կը բուրէր։ Երկու երիտասարդք վտանգաւոր ճամբանին յառաջ տանելով՝ մինչեւ ահագին անասնոյն քովն եկան, եւ զարմացմամբ կը զննէին անոր յաղթանդամ կազմածքն ու գլխոյն մեծութիւնը՝ որն որ մարմնոյն երեքին մէկին չափ կար։ Օձաձկան նման սեւ ու ողորկ մորթը շօշափեցին. եւ տեսան որ փափուկ էր, վրան եղած եղն ալ այնպէս կակուղ էր՝ որ ձեռքը մէջը կրնար մտնել. նաեւ կէտին մորթին վրայ կպած շատ խեցիներ ալ տեսան, որոնք կ'երեւար թէ անոր եղովը կ'ապրէին։ Վերջապէս ետ դառնալ ուզելով, եկած տեղնին կրած դժուարութիւններով ու զգուշութիւններով հեռացան։ Ըրած գիւտերնին նաւուղղին իմացընելու համար կ'անհամբերէին։

Ինք Ալեքսիին ու Իվանին պատմածը լսելով՝ զարմանք չցուցուց. վասն զի գիտէր որ շատ անգամ կէտերը մօրկէն ցամաք կը նետուին, որոնք կամ յառաջագոյն սատկած ըլլալով՝ մակընթացութեամբ ծովուն եզերքը կու գան, կամ սառուցի հարուածներն ու ալեաց բռնութիւնը զիրենք անզգայ ընելով՝ ողջ ողջ ցամաք կը նետէ, ուր շուտով կը սատկին։ Քամչաթգայի

բնակիչներն ալ բանով իբրեւ անակնկալ շահ մը կը դիտեն, որով երկայն ժամանակի համար առատ ու անսպառ կերակուր կ'ունենան: Թէպէտ նոյն ժողովուրդն անոր կարծր մսէն ու նաեւ եղած ճարպէն աղէկ կերակուր կը շինեն. բայց ծովու այս իրենց խրկած ընծան՝ շատ անգամ ահաւոր կ'ըլլայ: Ան կողման շատ բնակիչները կեաը թունաւորած նետով կը բանեն: Արդ եթէ կերածներին՝ նոյն կերպով ապականուած ըլլայ, անկէ շինած կերակրէն ուտողը դեղքերը կրնան յառաջ գալ: Շատ անգամ բոլոր գերդաստաններ այս միատասակար կերակուրն ուտելով՝ կը հիւանդնան կը մեռնին:

Նաւուղիղը՝ որն որ կիտորսութեան զայող նաւերու մէջ շատ հեղ ճամբորդութիւն ըրած ըլլալով՝ այս նիւթին մէջ աղէկ տեղեակ էր, ասոր վրայ եղած խօսակցութենէն յորդորուելով, իր երիտասարդ ընկերայը կետին կատարեալ նկարագրութիւնն ըրաւ:

Կէտը, ըսաւ իրենց, ծովու ամենամեծ ձկներէն մէկն է, եւ ջուր արտաքոյ անասնոց կարգը կը դրուի: Ջինքը զանազանող ուրիշութիւնն այն է՝ որ ակռայ չունի: Գլուխը, ինչպէս որ տեսայք, շատ խոշոր է. բերանն այնչափ մեծ է՝ որ ասոր տասներկու հոգի կրնան մէջը դիւրութեամբ ոտքի վրայ կենալ: Աս ընդարձակ ընդունարանը ծնօտի ահագին ոսկրներով բանըւած է. վերին ծնօտին ոսկրները կը բանեն

էր մօրուքը, որոնք իրեն աղբայի տեղ կը ծառայեն. անոնց գոյնը գորշ, սեւ ու դեղին է, զանազան գոյներու ճառագայթ-ներով: Կան կէտեր՝ որոնց մօրուքը յատակ կապոյտ է, ատոնք ձագ կը համարուին: Աս մօրուք բռնած հաստատուն նիւթը երկայն ու կարծր մազեր ունի, կամ նոյն իսկ մօրուքն ալ թելերէ բաղկացած է, ո-րոնք երթալով կը բարակնան: Վերին ծնօ-տին ամէն մէկ կողմը նոյն ոսկրներէն երկու հարիւր յիսուն հատ ունի. ատոնց ամենէն զօրաւորները՝ մէջտեղերը կը գտնուին եւ տասը տասնուհինգ ոտնաչափ երկայնութիւն ունին: Վարի ծնօտը նոյն ոսկրներէն չունի, այլ մեծ ու ճերմակ գունով ոսկրներով է. ատոր վրայ կը կենայ լեզուն՝ որն որ թոյլ ու սպունգանման եւ ճերմակ գունով ճարպի զանգուած մըն է եւ բոլորտիքը սեւ սեւ բծեր ունի:

Կէտը գլխուն վրայ, աչքերէն ու լողալու թեւերէն վեր, երկու ծակով մեծ ուռեցք մ'ունի, ուսկից անասունը սաստիկ զօրու-թեամբ ջուր դուրս կը սրսկէ: Աս գործողու-թեան ձայնը՝ որն որ շատ հեռուէն ալ կը լսուի, այրի մը մէջ մտնելով հնչող հովի ձայնին կը նմանի: Կէտը վիրաւորուած ատենը՝ ջուրն ամենէն բարձր կը սրսկէ եւ նոյն ժամանակուան հանած ձայնը՝ ծովուն յուղեալ ալիքներուն ձայնին կը նմանի: Աս ծակերէն շատ վար, գրեթէ բերնի ճեղքուածքին ուղղութեամբ կ'իյնայ մը-

թով մը պատուած աչուըներըը, որոնք եզան մը աչքէն շատ աւելի մեծ չեն ։ Ըստ ամենայնի աչուըներուն ետեւը՝ ուստի եւ բերնին անկեան մօտ են՝ կենդանւոյն մեծութեան համեմատ՝ թեւերը, որոնք թանձր մորթով մը ծածկուած են ու ճերմկկէկ շերտերով սեւ գոյն ունին ։ Երբ որ մարդ նոյն թեւերը կը կտրէ, մորթին տակ՝ երկայն մատուըներով ու մարդու բացուած ձեռքի նման ոսկրներ կը տեսնուին ։ Աս ոսկրներուն միաւորելու տեղերը՝ ձիգ ջղեր կան, որոնք գետինը զարնուած ատեն՝ վեր կը ցատքեն ։ Կէտը երկու թեւերը թիակի պէս գործածելով՝ երկու թիով նաւակի մը պէս կը լողայ ։ Գլուխը բոլորովին միացած է մարմնոյն հետ, որն որ նաւու կողի նման կորութիւն մ'ունի ։ Կենդանին ինք զինքը կը կառավարէ իր հորիզոնական պոչովը՝ որն որ երկու հաւասար ճիւղերու բաժնուած է ։

Սաստիկ շուտ կրնայ լողալ, եւ ջրոյն մէջ ըրած շարժումը, ջրոյն վրայ զարկած հորիզոնական պոչին պատճառաւ՝ կանոնագծական է ։ Կէտ մը փախած ատեն, փախչակի գլուխն, ուսն ու պոչը կ'երեւայ, ետքէն բոլոր մարմինը ջրոյն տակ կը թաղուի ու հեռու տեղ նորէն երեւան կ'ելլէ ։

Աս անասնոց գոյնն արեւու ատեն՝ շատ գեղեցիկ կ'երեւայ եւ մորթերնուն վրայ եղած ալեձեւ գծերն արծաթագոյն կը տեսնուին ։ Բայց իրենց գոյնը միօրինակ չէ ․ կան՝

որ ճերմակ ու սեւ մարմար կը ձեւացընեն, կամ՝ որ դեղին ու սեւ, կամ ալ՝ որ բոլորովին սեւ են, որոնց սեւը՝ տեղ տեղ պայծառ ու փայլուն կ'երեւայ, տեղ տեղ ալ՝ աժգոյն:

Աս ծովային հրէշը՝ Թէպէտ շատ զօրաւոր է, բայց ահագին Թշնամիներ ունի. ամենէն աւելի վախցած Թշնամին՝ սղոցաձուկն է: Ասոնց կռիւ մը բանալու՝ դիմացէ դիմաց չեն գար. հասարակօրէն սկըզբան յարձակողը՝ սղոցաձուկը կ'ըլլայ: Երբեմն կէտի մը դէմ անոնցմէ երկուքը մէկտեղ կը միանան: Որովհետեւ կէտը պոչէն զատ յարձակողական ու պաշտպանողական զէնք չունի, գլուխը ջրոյն տակ խոթելով՝ երբ որ կրնայ Թշնամւոյն զարնել, մէկ հարուածով մը կը սատկեցընէ. բայց Թշնամին սաստիկ՝ յաջողակ ըլլալով կը փախչի եւ վրան ելլելով իր զէնքն անոր ուսը կը մխէ: Շատ անգամ մինչեւ ճարպին տակը չկրնալով վիրաւորել՝ վէրքը Թեթեւ կ'ըլլայ: Ամէն անգամ որ սղոցաձուկը կէտը վիրաւորելու համար վրան կը յարձակի, կէտը ջրոյն տակ կը սուզանի: Բայց Թշնամին ետեւէն իյնալով՝ դուրս ելլելու կը ստիպէ. ան ատեն կռիւը կը սկսի եւ մինչեւ որ կէտն աչքին առջեւէն չի կորսուիր, կռիւը չի դադրիր: Կէտը միշտ ետ ետ քաշուելով՝ կը կռուի, եւ ջրոյն վրայ Թշնամիէն աւելի աղէկ կը լողայ: Աս ձկէն սպաննուած կէտերին այնպէս դարշելի կը հոտին՝ որ հոտը

շատ հեռու ալ կ'երթայ։ Կ'ըսուի որ ողո-
ցանձուկն եւ ուրիշ նոյն տեսակ ձկերը կէտի
լեզուն արտաքոյ կարգի կը սիրեն, եւ մինչեւ
անասնոյն կենդանի եղած ատենն ալ՝ նոյնն
ուտելու եռանդ կ'ըլլան։ Ասոր համար ա-
նանցմէ մէկը կը ջանայ նախ գլուխը կխային
անդէն բերանը խոթել. եւ երբոր երկու
ծնօտներուն մէջ կը մնայ, ակռայի նման բաց
կը բռնէ, որով մէկալները նոյն ծակը մեծ-
ցընելով ներս կը մտնեն եւ լեզուն կ'ուտեն։
Քիչ մը ետքը խեղճ անասունը սաստիկ
ցաւերով կը սատկի։

Աս մանրամասն ստորագրութիւնն ընելէն
ետքը՝ նաւուղիղն ըսաւ. Վաղը ամէնքս
մէկտեղ երթանք նայինք որ ապականելէն
կամ արջերուն, գայլերուն ու ծովու հոր-
թերուն ճարակ ըլլալէն յառաջ՝ կրնանք
մի աղէկ կտոր մը հանել. նաեւ ձեզի աս
անասունին որսալու վրայ ալ մանրամասն
ծանօթութիւն մը կրնամ տալ։

Երկրորդ օրը՝ նաւուղղին հարկաւոր սե-
պած ամէն գործիքները հետերնին առնե-
լով երեքը մէկտեղ խոյած հրեշին քովը գա-
ցին։ Իրենց ձեռքին ունեցած տկար գործիք-
ներով ան ահագին անասունը մանր մանր
չկրնալով կտրտել, քանի մը տեղէն թանձր
մորթը ճեղքեցին. մորթին ու մսին մէջ-
տեղը գտնուած ճարպին մէջ սուր գործիք-
ներ խոթեցին ու առատ եղ հանելով՝ պզտիկ
տակառներու, մնացածը ասոր համար կա-
րուած մորթերու մէջ լեցուցին. կացնով

նաեւ մեծ կասր մ՚ալ փախուցին, հանգըր-նելով իրենց կանթեղին եղ պատրաստելու համար: Եւ որովհետեւ ուտելու առատ պաշար ունէին, անոր համար նոյն կենդա-նւոյն անախորժ միսէն չուզեցին առնել. աս-կէց զատ՝ առած եղերնին այնչափ շատ էր, որ անկից աւելի բան հետերնին չէին կրնար առնել: Մնացածը վայրենի կենդանեաց եւ արդէն օդին մէջ խոյացող յափշտակիչ թռչնոց թողուցին:

Երբ որ տուն դարձան, նաւուղիղը կիտ-որսութեան վրայ աս երկայն տեղեկութիւնը տուաւ: Պաղքերը կամ Պիրքայիայի նա-ւավարները՝ ծովու թագուհւոյն (կիտին) դէմ առաջին պատերազմ բացողները կը սեպուին. դէթ աս վտանգաւոր որսին մէջ ունեցած յաջողակութեամբ ու համար-ձակութեամբ այնպիսի համբաւ մը առա-ցած են, որ նոյն շահաւոր վաճառականու-թիւնը փորձել ուզողները՝ նաւաստեր, ղե-կավարն եւ ուրիշ գլխաւոր գործողներն անոնցմէ կ՚առնէին: Հոլանտացիք ու Անգ-ղիացիք աս սրտոտութենէն մեծ շահ ըրե-լու սկսան. ետքէն Ամերիկացիք նոյն գործքն ընդարձակելով՝ առջինններուն գոնէ հաւա-սարեցան: Գաղղիացիք ամենէն վերջը աս գործքին ձեռք զարկին. բայց անանկով ալ սկսած առեւտուրը՝ ութը տարուան մէջ՝ Գաղ-ղիա 114 նաւ մտաւ, 31,000 տակառ եղով:

Աս երկայն ու վտանգաւոր ճամբորդու-թեան համար հաստատուն շէնքով ու-

կազմածքով նաւեր, բազմաթիւ ու քաջ նաւաստիքը, վերջապէս այս գործքիս հարկաւոր շատ կահ կարասիք պէտք են։ Կէտ մը տեսնելուն կամ անոր ջուր ցայտեցընելը լսելուն պէս, բոլոր որսորդները վեցական կամ եօթնական հոգի պզտիկ նաւակներնու մէջ կը նետուին։ Թիավարելով՝ ձկան մօտեցած ատեններն, նաւակին առջեւի կողմը կեցող ձկնորսը երկաթանին կ'արձակէ։ Հասարակօրէն կը ջանան որ երկաթանին ականջներուն քով կամ թեւերուն եւ կամ կռնըկին մէջտեղը զարնեն։ Երկաթանւոյն ճօթը՝ նետի նման ու երկսայրի է. իսկ ետեւի կողմը թանձր է, որպէս զի միսը կտրելով դուրս չելլէ։ Նոյն գործւոյն կոթը փայտէ է։

Կէտը վիրաւորած ըլլալն իմանալուն պէս՝ սաստիկ շուտութեամբ երկաթանւոյն կապուած չուանը քաշելով այնպէս ջրոյն տակը կը սուզանի, որ նաւակին առաջքը ծռելով՝ գրեթէ ջրոյն կը հաւասարի. եւ եթէ չուանը բանալով ետեւէն թող տալու սաստիկ մոռացութիւն չըլլայ նէ, նաւակն ալ մէկտեղ ծովուն յատակը կը տանի։ Ամէն մէկ նաւակ չուանի կոյտ մ'ունի՝ չորս կամ հինգ մաս բաժնուած, որոնց ամէն մէկը 80—100 գրկաչափ երկայնութեամբ կ'ըլլայ։ Կէտը ջրոյն տակն իջնալու ատեն՝ որսորդները, մեծ զգուշութիւն կ'ընեն որ իրենց երկայն չուանը չխառնակի կամ մէկ կողմը շատ չերթայ, ապա թէ ոչ

նաւակն անշուշտ կը տուգանի։ Չուանն ըստ ամենայնի նաւակին մէջտեղէն պիտի արձակուի. եւ երկժանին նետողը՝ նաւակին քսուած տեղը միշտ ապնգով կը թրջէ, որպէս զի չըլլայ թէ չուանին շարունակ քսուելէն եւ սաստիկ երագութենէն բռնկի։ Ուրիշներն ալ նոյն բանին կը հսկեն. իսկ հմուտ նաւակավար մը՝ նաւակին ետեւի կողմը նստելով, միտ կը դնէ թէ չուանը ո՛ր կողմանէ կը ձգուի եւ անոր համեմատ՝ նաւակը ղեկով կ՚ուղղէ։ Առանց չափազանցութեան կրնայ ըսուիլ որ այսպէս վիրաւորած կէտ մը քաշուած նաւը՝ հովէ աւելի շուտութեամբ կ՚երթայ։

Այսպէս անասնոյն ետեւէն կ՚իյնան մինչեւ որ յոգնի կամ սատկի եւ կամ գէթ ա՛լ կարող չըլլայ աւելի հեռու երթալ։ Երբեմն 2000 գրկաչափ չուան կ՚առնէ մէկտեղ կը քաշէ։ Թէ որ անասունը սառոյցներու մէջ մտնէ, անոնց մէջէն բացած ճամբէն կ՚երթան. իսկ եթէ սառուցէ շարժուն կղզիներուն տակ քաշուելու ըլլայ, շատ անգամ հարկ կ՚ըլլայ որսը թողուլ, երկժանին զօրաւոր քաշելով հանել եւ կամ չուանը կտրել։

Կէտ մը երկժանով զարնուած ատեն՝ ուրիշ նաւակները հարուածը տուող նաւին կը մօտենան։ Երբոր չուանը փարձելով կը տեսնեն որ թոյլ է, կամ նաւակին առջեւի կողմը շատ չիծուիր կոր, կը սկսին վեր քաշել։ Չուանին վեր քաշուած ատենը

Երբեմն կէս մը միեւնոյն ատեն երկու նաւու երկթանիներով կը զարնուի: Ան ատեն երկու նաւերն ալ անոր վրայ հաւասար իրաւունք ունենալով՝ կէսպուակէս կը բաժնեն: Հարուածը տուող նաւակին հեռ զացող ամէն նաւակներն ալ կիտին վեր [illegible]ուն կը սպասեն. եւ նոյն ատեն ամէնքն ալ պէտք է որ նիզակով սատկեցընելու ջանան: Աս ժամանակն ամենէն վտանգաւորն է. որովհետեւ թէպէտ կէտն երկթանին արձակող նաւակը կը քաշէ կը տանի, բայց ան նաւակէն շատ հեռու կը մնայ. անոր հակառակ զինքը նիզակով խոցել ուզող նաւակները՝ գրեթէ անասնոյն վրայ կամ՝ քովերը գտնուելով, անոր շարժման ու տատանելուն համեմատ՝ խիստ հարուածներ ընդունելէն չեն կրնար պրծիլ: Պոչովն ու թեւերովն այնպէս կատաղի կերպով ջրոյն կը զարնէ, որ ջուրը ցատքեցընելով՝ փոշիոյ պէս կը տարածէ: Պոչին մէկ հարուածն ալ նաւակ մը խորտակելու բաւական է: Բայց մեծ նաւերն աս հարուածէն վախնալու բան մը չունին. իսկ ինք մեծ նաւին տուած հարուածէն շատ բան կը կրէ: Նիզակները՝ գրեթէ երկու գրկաչափ փայտէ ու գրկաչափ մ'ալ սուր երկաթէ շինուած են, եւ այնպէս չափաւոր ալիտի մխուի, որ ծուի՝ բայց չկոտրի: Նիզակը մխելէն ետքը վէրքը լայնցընելու համար ասդին անդին կը շարժեն: Երբեմն կը հանդիպի որ երեք կամ՝ չորս նաւակներու

բոլոր նիզակները կիտուի մը մարմնոյն մէջ մխուած կը մնան։

Հիւսիսային ծովու ձկնորսներն ուրիշ կերպ մ'ալ կը գործածեն։ Ձկան վրայ առանց չուանի պզտիկ երկաթանի մը կ'արձակեն, որուն վրայ իրենց անունը նշանակուած կ'ըլլայ. գազանը զինքը վիրաւորող երկաթանին հեռու առած՝ կը փախչի, եւ արիւնը կորսնցնելով՝ քանի մ'օր ետքը կը սատկի։ Կիտորսները զինք գտնելու որ ըլլան, ան նաւուն կը դարձընեն՝ որուն անունն որ երկաթանւոյն վրայ գրուած է։ Թէ որ շատ նաւերէ հարուած ընդունած ըլլայ նէ, նաւապետները ժողով մը գումարելով ան նաւին կու տան, որ նաւէն հարուածն որ աւելի մահացու եղած կը համարուի։

Անասունը սատկածին պէս՝ պոչը կը կտրեն, որովհետեւ խոտորնակ ըլլալով նաւակին ընթացքը կը կամացընէր. նոյնէն ալ թեւերէն՝ զօրաւոր սոսինձ կը շինուի։ Ետքէն կէտը նաւակի մը ետեւը կապելով, նոյն նաւակն ալ ուրիշ չորս կամ հինգ նաւակի կցելով մեծ նաւը կը դառնան։ Հոն հասածնուն պէս՝ կէտին գլուխը նաւին խելաց կողմը, իսկ պոչի կողմը՝ դէպ ի նաւին առաջակողմը կը կապուի։ Աւելի հոգը կ'ըլլայ ծնօտին վրայ, անոր ակռայի տեղ բռնող ոսկրները ձեռք բերելու համար։ Նոյնեն անուորդի մը օգնութեամբ նաւին վրայ կը հանեն։ Աս ոսկրները անասնոյն մնացած մարմնոյն չափ կ'արժէ։ Ետքէն լեզուն կը

կտրեն, ու մարմնոյն վրայէն բոլոր ճարպը կը հանեն։ Ճարպին ամէն մէկ կտորը մարմնոյն բոլոր երկայնութեանը երկայն երկայն կը կտրուի. ետքը ոտնաչափի մը մեծութեամբ՝ քառակուսի քառակուսի, վերջապէս աւելի մանր կտրտելով՝ տակառներու մէջ կը լեցընեն։ Աս գործքին համար 4—6 ոտք երկայնութեամբ մեծ դանակներ կը գործածեն։ Կէտը կտրտելու համար անմիջոյն վրայէն քալողները՝ անոր ողորկ ու ճարպային մարմնոյն վրայ չահելու համար՝ տակը սուր դամերով կօշիկներ կը հագնին։ Ոմանց ճարպը ճերմակ կ'ըլլայ, ոմանց՝ դեղին, ոմանց ալ՝ կարմիր։ Ճերմակին մէջը բարակ ջղեր ըլլալուն համար՝ դեղինին պէս առատ եղ չտար, իսկ դեղինին ամէնէն աղէկն է։ Ճարպը բոլորովին առնուելէն ետքը՝ կէտին կմախքն իր ծանրութեամբը ջրոյն տակ երթալով, բոլոր որսորդներուն ցնծութեան աղաղակաւն աներեւոյթ կ'ըլլայ։ Բայց աս կմախքը քանի մ'օր ծովուն տակ կենալէն ետքը, ուռելով՝ ջրոյն երեսը լողալու կը սկսի՝ որով ձկանց, թռչնոց ու արջերու ճարակ կ'ըլլայ։

Աս գործողութիւնը լմնցընելէն ետեւ՝ նաւը ճամբայ կ'ելլէ, եւ նաւահանգիստ մը մտնելով կամ հաստատուն սառուցի մը քով կենալով, ճարպը հալեցընելու կը սկսին։ Աս գործքին որսորդներէն ոմանք նաւուն մէջ կ'ընեն. բայց կրակ ելլելու վախէն՝ առ հասարակ ցամաք երկիրը նաւէն նա-

խամմեծար ընել կու տայ։ Շատ անգամ կիտորսներն ալ գործքին համար Շբիցպերկի կողմերը կը կենան։ Թէպէտ կրնայ ճարպը տակառներուն մէջ թող տալով որ ինք իրեն խմորելով՝ եղ դառնայ. բայց հասարակօրէն փայտէ մեծ ամանի մը մէջ կը դնեն, անկէ ալ լայն ու տափարակ կաթսայի մը մէջ։ Կրակով աղէկ մը եփելէն ետքը՝ պզտիկ ամաններով կ'առնեն՝ մեծ մաղի մը մէջ կը լեցնեն, որմէ միայն հեղուկը կ'անցնի. իսկ մնացածը կը նետուի։ Մաղին տակը՝ կէս մը ջրով լեցուն՝ փայտէ մեծ աման մը կը դրուի, որուն մէջ եղը կը պաղի, կը զատուի եւ աւելորդ աղտոտ մասերը ջրոյն տակ կը նստին, իսկ զուտ եղը ջրին երեսը կը մնայ։ Նոյն եղն աւելի եւս զտելու համար մեծ ամաններէն դարձեալ խողովակով մը՝ նոյն մեծութեամբ ուրիշ ամանի մը մէջ կը վազցնեն, անկէ ալ երրորդի մը մէջ, որոնք նոյնպէս մինչեւ կէսը ջրով լեցուն կ'ըլլան։ Վերջապէս անկէ ալ չորրորդի մը կ'անցնի, ուսկից տանելով՝ պահելու տակառներուն մէջ կը լեցնեն։ Հալեցնելու ատեն ճարպէն կորսուածը հարիւրին քսան է։

Աս կերպով կը վարուին Եւրոպացի որսորդները. իսկ կիտուին գտնուած կողմերուն բուն բնակիչքը՝ նոյն անասունին որսալու ուրիշ եղանակներ ունին։ Կրօնէնլանտացիք կիտորսութեան գացած ատեննին՝ իրենց ամեններէն գեղեցիկ զգեստը կը հագնին. ու-

բավհետեւ իրենց ձեռնածուները կ՚ըսեն որ եթէ մէկն աղուոր կամ մեռելի գղած զգեստներով նոյն օրաին երթայ նէ, կէտը կը փախչի, եւ տանելու ալ ըլլայ նէ՝ ջրոյն երեսը չ՚ելլեր: Կանայք ալ աս որ-տոյն մէջ կը մնեն. ասոնց գործքն է ծավալին պատմուճանը պատրաստ բռնել, եւ կաշուով ու մորթով պատած նաւերը նորոգել: Այր ու կանայք առանց վախի մը նաււերով գազանին գիմացը կ՚ելլեն. վրայէն մեծ ծովահորթի կաշիէ տիկեր կախուած երկքժանին անտանոյն վրայ կ՚արձակեն, որով կէտը չիկրնար ջրոյն յատակն իջնալ: Ինք փուչ տեղ աշխատելով՝ յոգնելու ժամանակ, նիզակի հարուածներով բանը կը լմնցընեն: Ան ատեն այր ծով կը նետուին, ծովաշան մորթէն շինուած ծովու զգեստով, որուն կօշիկը, բուն մաշկինը պատող մանն ու գլխանոցն իրարու հետ աղէկ կարուած միացած են: Այսպէս մինչեւ գլուխնին նոյն զգեստով ծածկուելով, ծովաշան մը կերպարանք կ՚ունենան, եւ գազանին բոլորտիքը կ՚երթան կու գան՝ առանց ընկղմելէն վախ մ՚ունենալու, որովհետեւ հագածնին՝ լողալու զգեստ ըլլալով, նոյնով կրնան ծովուն երեսը ոտքի վրայ ալ կենալ ու քալել: Թէպէտ դանակնին անպիտան է, բայց տակայն մօրուքի ոսկրները յաջողութեամբ կը կտրեն կ՚առնեն: Ետքէն այր, կանայք, տղայք աւարէն մաս մ՚ունենալու համար, կը սկսին խառնիխուռն,

եղը կորսնել. վասն զի ամէն մարդ նաեւ հանդիսատեսաց որոնք իրաւունք ունին։ Այս խառնակութեան մէջ՝ իրար չվիրաւորելու մեծապէս փոյթ կը տանին. բայց այնպէսով ալ՝ որսէն ոչ ոք առանց վէրքի ետ կը դառնայ։

## ԳԼՈՒԽ ԻԱ.

Արշալոյս եւ պաղին մեղմանալը։

ԳԻՇԵՐ մը, երբ ձորը բոլորովին զատ կերպարանք մ'առաւ։ Փայտերու ծառերը ձիւն չէր մնացած, բայց լուսնոյ լուսովը փայլուն ու սառուցով պատած կ'երեւային։ Ճառ բլուրներուն ձիւնն անձրեւէն հալելով՝ իրենք երեւան կ'ելլէին։ Ա՛լ հիմակ արագաւոր եղջերուաց համար մամուռ ժողվելը դիւրին էր։ Իվան ու Ալեքսի նորէն փայտ ժողվելու համար պարանոց դացին։ Այնչափ ատեն բանտարկուածի պէս անակին մէջ կենալու տաղտուկէն ետեւ՝ որչափ հաճոյական էր իրենց դուրս ելլելնին, որչափ ազատ կ'երեւար հիմայ չորս կողմը, ուր ձիւնը խիստ նուաղած էր։ Պարանոցին տեղերն ալ փոխուած էր։ Ան սարսափելի բարձրութեամբ սառուցէ լեռները՝ որոնց հիմը ծովուն յատակը կ'երեւար, հիմայ ծովուն մէջ ազդին արդին լողալով՝ իրենց զօրաւոր հարուածներովը ծովին երեսի սառուցները կը խորտակէին։ Տեղ տեղ վրայէ վրայ դիզուած սառուցներ կային, որոնք

քաղքի մը աւերակներուն կը նմանէին. իսկ ուրիշ կողմեր՝ սառուցի դաշտերու մէջ ապակիին տակին ջրոյ հոսանքներ կ'երեւային, որոնք հովէն մղուելով՝ ջերմին սառոյցներուն վրայ կը թափէին։

Երկու երիտասարդք բալխոնին փայտէ աղէկ պաշարով մը լեցնելով՝ տուն դարձան։ Լուսինը ժայռերուն ետեւէն երեսը կը ծածկէր, եւ մթընշալու կը սկսէր։ Մէյ մ'ալ յանկարծ արեւելեան կողմը երկինքին վրայ կարմրութիւն մը տեսան, որն որ երթալով կը շատնար։ Նորէն արեւուն ճառագայթները տեսնուեցան եւ արշալոյս ըլլալն իմացուեցաւ։ Կը յուսային որ արեւն իրենց հորիզոնին վրայ կը բարձրանայ. բայց դեռ շատ ցած ըլլալով՝ միայն իր ցոլացումը քիչ մը լոյս պարգեւեց, որն որ լուսնկայէն աւելի լոյս կու տար։ Այս հանճարական երեւոյթը՝ որչափ կարճ էր ալ նէ՝ իրենց սիրտը մխիթարական յուսով մը լեցուց. վասն զի իմացան որ վերջապէս սկսաւ դառնալ ցորեկուան լոյսը՝ որմէ երկայն ատենէ վեր զրկուած էին։

Աճապարելով եկան սա ուրախալի լուրը նաւուղղին ալ հաղորդեցին, որն որ հազիւ կրնար հաւտալ. բայց երկրորդ օրը իր աչքովն արեւուն ելլելը տեսնելով՝ համոզուեցաւ. նոյն օրը ճառագայթները քիչ մ'ալ աւելի բարձրացան։ Հինգ ամսուան չափ արեւէն զրկուելէն ետքը՝ ինչ սքանչելի տեսարան էր արշալոյսը տեսնելը։ Կուզի

մը, երկայն ժամանակէ վեր աչքը ծածկող վարագոյրը քաշուեցաւ անոր, բնութեան զարմանալի տեսարանը տեսնելով՝ զգացած ուրախութեան նման ուրախութիւն էր աս երեւութին պատճառած ուրախութիւնը։ Աս նոր բարերարութեան համար ալ Աստուծոյ շնորհակալ եղան. եւ ան ժամուն մէջ երախտագիտութեամբ յիշեցին թէ ինչպէս զարմանալի կերպով զիրենք պաշտպանեց, եւ նոյն մութ ու երկայն գիշերուան ատեն՝ իրենց ամէն հարկաւոր եղածները հոգաց։

Հետեւեալ օրերը արեւը բոլոր պայծառութեամբը տեսնուեցաւ եւ հորիզոնին վրայ աւելի երկայն կեցաւ։ Վերջապէս մէյ մ'ալ ելաւ ու ալ չմտաւ։ Մէկալ կիսագունդը լուսաւորելէն ետքը՝ հետզհետէ հիւսիսային բեւեռին կը մօտենար։ Արեւն երկրագնդին միայն կէսը կը լուսաւորէ, ան ալ՝ իր ճառագայթներուն ուղղահայեաց իյնակած տեղէն՝ ամէն կողմ 90 աստիճան։ Գարնան ու աշնան ատենը՝ երբոր ինք ճշդիւ հասարակածին վրայ կը գտնուի, իր ճառագայթները հաւասարապէս երկու բեւեռին ալ կը տարածէ։ Որովհետեւ ամառը դէպ ի հիւսիս կը դառնայ ու նոյն կողմերը կը մնայ, ի հարկէ ան կողմերը շարունակ ցորեկ կ'ըլլայ. միեւնոյն ժամանակ՝ հարաւային կողմը երկայն գիշերուան խաւարի մը մէջ թաղուած կ'ըլլայ։

Արեգական երեւնալուն հետ օդն ալ

շարթէ շարթ կը փոխուէր, եւ ամէն կողմ՝ նոր կերպարանք մը կը առնուր: Արեւուն հորիզոնին վրայ կարճ ատեն մնացած առաջին օրերը՝ օդը դեռ պաղ էր. բայց-ալ այն խիստ պաղը չէր՝ որն որ անդամները կ'ընդարմացընէ ու շունչը կ'առգելէ: Երեք բարեկամք հիմակ երկայն ատեն բաց օդի մէջ կրնային կենալ. կրնային միանգամայն արածելու տանիլ իրենց արագոտն եղջերուները, որոնք նորէն կենդանութիւն առնալով՝ ձեան տակէն ուրախութեամբ մամուռ կը փնտռէին: Որչափ աւելի որ արեւը հորիզոնին վրայ կը կենար, այնչափ ալ օդը կը մեղմանար, սառոյցներն ալ մամռուտներուն վրայէն կը հալէին: Իրիկունը շատ անգամ ամէն կողմ՝ թանձր միգամ մը կը պատէր, որն որ ետքէն տաք անձրեւի մը կը դառնար, եւ քանի մ'օր անձրեւելով՝ երկրին սառոյցներէն ազատելը կը փութացընէր:

Երեք աքսորելոց բնակած հովիտը զուարթ տեսք մ'առած էր: Երկիրը գեղեցիկ կանաչով ծածկուեցաւ, որովհետեւ լոռն ու մամուռը շուտ կ'աճէին: Արեւուն երթալով աւելի կը բարձրանար եւ աւելի երկայն ատեն կենալով՝ խոտն ու դդալխոտը կը բուսցընէր: Արագոտն եղջերուներն ալ նոյն խոտի օթոցին վրայ ուրախութեամբ ժողվուելով՝ նոր բուսած փափուկ խոտերով կը ճարակէին: Միայն ծովուն կողմը դեռ զարհուրելի կերպարանք մ'ունէր:

Ստոյգ է՝ տեղ տեղ սառոյցները հալած էին, բայց տակաւին ահագին լեռներ կային, մեծատարած միջոցներ թանձր սառուցով ծածկուած էին, որն որ արտաքոյ կարգի տեսարան մը կը ձեւացընէր։ Մէկ կողմը բնութիւնն իր երիտասարդական գեղեցկութեամբը կ'երեւար, մէկալ կողմը՝ ձմեռուան բոլոր խստութեամբը։

Սառնամանեօք ծածկուած պարանոցն ալ աչքին հետաքրքրական կերպարանք մը կ'երեւցընէր. իրարու վրայ անհեթեթ կերպով դիզուած սառոյցները, նայուած կողմանց համեմատ՝ երբեմն աշտարակներու եւ անվանելի բերդի կերպարանք ունէին, երբեմն գետնաշարժէ կործանած քաղքի մը աւերակներու տեղը, երբեմն ալ միջին դարու մենաստանի մը ճարտարապետական շինուածքին երեւոյթը։ Սառոյցներուն՝ արեւէն կէս մը հալած գագաթները, զանազան կանոնաւոր ու անկանոն զարդեր կը ձեւացընէին, եւ կամ նաեւ ամենաճարտար քանդակագործի մը մեծ համբերութեամբ հազիւ յառաջ բերել կրցած ամէն սքանչելիքը կ'երեւցընէին։ Լուսոյն՝ աս սառուցի զանգուածէ պատկերներուն մէջ յառաջ բերած սքանչելի ու զանազան երեւոյթները՝ զարմանալիքն աւելի եւս կը կրկնապատկէին։ Նոյն ընդարձակ հայելւոյն ու թափանցիկ զանգուածին վրայ, փոփոխակի ամէն գոյներն ալ կը ցոլանային եւ անոնց մէջէն կը փայլէին. մէկ կողմը՝ ոսկւոյ, ու-

ըիշ կողմը՝ ծիրանեւոյ գոյն մը կը շողար․ հոս՝ որդան կարմիր հարուստ գոյնը, հոն փափուկ կապուտակը կը փայլէր։ Օրը քանի մը անգամ լուսոյ ճառագայթից զանազան ուղղութեամբ զարնելովը փոխուող այս երեւոյթները հրապուրիչ ու նորանկերպ լուսանկար մը կը պատճառէին։

Նաեւ արեւը կէսգիշերուան ատեն տեսնելն ալ զարմանալի տեսարան մըն էր։ Արեւը մինչեւ կէսօր միօրինակ դէպ ի վեր կը բարձրանար․ նորէն վար կ՚իջնար՝ ետքէն առանց հորիզոնին վրայէն կատարեալ աներեւոյթ ըլլալու։ Արեւը շարունակ տեսնելը՝ չբացատրուելու զգածմունք մը կը պատճառէր․ լուսոյ ատեն կը պառկէին, լուսոյ ատեն կ՚ելլէին։

## ԳԼՈՒԽ ԻԲ․

### Նոր հոգեր ու պատրաստութիւններ։

ԳԱՐՆԱՆ գալը՝ մեր աքսորեալց արտին մէջ Շբիցբերկի կիտորսաց վրայ նաւ տեսնելու յոյսը գրգռեց։ Աստուծմէ միշտ կը խնդրէին այս շնորհքը՝ որն որ իրենց ազատութիւն պիտի տար։ Բայց կրնար ըլլալ որ ամենեւին նոյն կողմերը նաւ չգար, կամ կղզւոյն այնպիսի մէկ կողմը մօտենար, որ իրենք կարող չըլլային տեսնել։

Երկու երիտասարդք իրենց գերութենէն ազատելու բաղձանքնին շատ անգամ կը յայտնէին։ Իսկ նաւուղիղը՝ որն որ նոյն-

պէս որանին մէջ ուրիշ բաղձանք չունէր, բայց եթէ շուտով իր ամուսնոյն ու որդւոյ հետ միանալ, իրենց յայտնապէս ըսաւ թէ բաղձանքնին դեռ շուտով չիկրնար կատարուիլ, վասն զի կիտորններուն Շրիցպէրկ գալու ատենը դեռ հասած չէ։ Ջիբենք յորդորեց որ համբերութիւն ու Աստուծոյ կամաց հետ համակերպութիւն ունենան. վասն զի կրնայ ալ ըլլալ որ նոյն ատեղը երկրորդ ձեռք մ'ալ անցընելու սախպուլին։ Աւելի չարագուններն պէտք է որ պատրաստ ըլլանք, կ'ըսէր։ Թէպէտ մեր ազատութենէն պէտք չէ որ յուսահատինք, բայց յոյսն ալ շատ պէտք չէ դրդուել։ Այսպէս վարուելով, եթէ բաղձանքնիս կատարուելու ըլլայ, աւելի կ'ուրախանանք. իսկ եթէ անոր հակառակ՝ նաւ գալու չըլլայ եւ հոս տարի մ'ալ կենալու պատրաստ չըլլանք, տրտմութիւննիս շատ մեծ կ'ըլլայ։ Արդ պէտք ենք այնպէս վարուիլ՝ իբր թէ ամբողջ տարի մ'ալ աս կղզւոյն վրայ պիտի մնանք։ Մեզի ու մեր արագուան եղջերուաց համար պաշար պէտք ենք ժողվել. եւ այնպէս երկայն բնակութիւն մը տանելի ընելու համար ամէն բան պատրաստել։ Թէ որ նոյն պաշարները չպառած՝ նաւ մը մեզի ազատութիւն բերելով, աս կղզիէն ելլենք, գէթ անով գարնան ժամանակ զբաղած եւ փախած կ'ըլլանք դատարկութենէն, որն որ մեր միտքը հոգեր բերելով՝ զուարթութիւննիս կրնայ

յափշտակել։ Մեր չքաւորութեան ատեն առաջին բնակիչներէն մնացած պաշարները մեզի մեծ օգնութիւն եղան։ Չի՞կրնար մի ըլլալ՝ որ մեր ազատելէն ետքը՝ աս ամայի կղզւոյն վրայ ուրիշներն ալ իյնան։ Հալածատացւոց թաղուցածներովը մենք մեր կեանքը պահեցինք։ Մենք ալ մեր կողմանէ կրնանք ուրիշներուն կեանքը պահել։ Ուրեմն խիւղը՝ մեր ամէն պատրաստել կարող եղած պաշարներով՝ պատշաճ վիճակի մէջ թողունք։

Թէպէտեւ նաւուղղին ու խօսքերը երիտասարդներն ուրախացընելու յարմար չէին, բայց խօսածներուն վրայ որչափ աւելի կը մտածէին՝ այնչափ ալ տուած խրատներուն իմաստութիւնը կ՚ըմբռնէին։ Ուստի այնպէս սկսան գործել՝ իբր թէ տարի մ՚ալ Շբիցպերկի վրայ պիտի կենային։

Գարնան ատեն՝ իրենց առաջին գործքն եղաւ տնակնին մաքրել ու մաքուր օդ տալ, որովհետեւ վեց ամիս էր որ պաղերուն պատճառաւ՝ ո՛չ դուռ եւ ո՛չ պատուհան կրցեր էին բանալ։ Ծխէն, մխին շոգիէն ու եղջերուաց շնչառութենէն օդն ապականած էր։ Եղջերուները դուրս ձգեցին, եւ երկու այրերուն մէջ կրակ ու քիչ մ՚ալ վառօդ վառելով՝ օդը մաքրեցին։ Ուտելու պաշարնին ու մուշտակնին դուրս հանելով՝ վերջիններն աղէկ մը ծեծեցին ու թօթուելով՝ արեւու մէջ փռեցին. ամէն ամաններն ալ մաքրեցին։ Նոյն գործողութիւն-

ներն իրենց զգեստներուն ու ճերմըկեղէն-ներուն վրայ ալ կատարեցին։ Ետքէն տնակին ներսն ու դուրսը աղէկ մը մաքրե-ցին ու կարգաւորեցին։ Շատ գործածու-թենէն ապականած վառարանն աւրելով՝ նորէն աւելի հաստատուն եւ աւելի պատ-շաճագոյն մը շինեցին։

Նոյն ատեն միանգամայն արագոտն եղ-ջերուներն ալ կրթեցին։ Աս կենդանի-ները շատ հեզցած ու ընտանեցած էին. նշան տրուածին պէս՝ կու գային եւ իրենց տերանց ետեւէն ամէն տեղ կ'երթային։ Սպանուած արագոտն եղջերուաց մորթէն պախուրց ու փոկ շինեցին։ Կենդանիները հեզութեամբ մը թոյլ տուին որ պա-խուրցն իրենց անցընեն ու բալխրին լծեն, որուն վրայի բեռն ամէն օր կ'աւելցընէին՝ առանց շատ ծանրացընելու։

Խզլին մօտերը քիչ մը երկիր փորելով, ոսպ ու սիսեռ տնկեցին, եւ քիչ մը ետքը նաեւ բակլայ ալ տնկելու միտք ունէին։ Փորած տեղերնէն շատ մամուռ ժողվեցին եւ չորցընելով՝ կաշիէ պարկերու մէջ լե-ցուցին։

Աս գործքերով ամիս մ'անցաւ։ Որով-հետեւ պարանոցին վրայի սառոյցներն եր-թալով կը հալէին, ձուկ բռնելու համար կարթի լար պատրաստեցին։ Հին բնակչաց գործիքներուն մէջ կարթ գտած էին. սատկեցուցած կենդանիներուն աղիքները կերի տեղ գործածեցին։ Աս փորձն աղէկ

յաջողեցաւ. ան օրուընէ ետքը՝ ամէն օր իրենց ուռկանին վրայէն ձուկ չէր պակսեր։ Այնչափ առատ ձուկ կը բռնէին, որ սկսան մէկ մասը չորցնել, մաս մ՚ալ ծախել։

Իրենց տնակը մաքրած ատեննին՝ շատ անգամ՝ յղկուած տախտակ պէտք ըլլալով, ծովեզրէն բերելու պարտաւորեցան։ Երեքն ալ զինեալ եւ եղջերուները բալխրին լծելով՝ ճամբայ ելան։ Թէպէտ եւ արեւը խիստ զօրաւոր էր, բայց կը տեսնէին որ երկիրը բոլոր խոնաւ, տեղ տեղ ալ ճախճախուտ էր, եւ մամուէն, դդալխոտէն ու քանի մը Թփերէ զատ՝ բան չէր բուսցըներ։ Իրենց համար ուրախալի գիւտ մ՚եղաւ առաջին անգամ ան կղզույն վրայ աղկիոն ու ծովու ծիծառ տեսնելը։ Առանցմէ մէկ քանի հատ զարնելով՝ աղէկ խորոված մը պատրաստեցին։

Պարանոցին քով՝ քառասունուչորս ժամ անցընելով՝ շատ փայտ ժողվեցին։ Ծովէն առատ ձուկ կը բռնէին. հապա Թէ կարթը կը ձգէին՝ մէյ մ՚ալ ձուկ կը բըռնուէր։ Հոն կեցած ատեննին՝ ուտելիքի վրայ մտածելիք չունէին. արդէն կերակուր եփելու մէջ ալ աղէկ վարժած էին։ Կերակուրնին ուտելէն ետեւ՝ մուշտակներնուն փաթթուելով՝ երկրին վրայ կը քնանային։

Աշխատութենէն հանգչելէն ետեւ՝ պարանոցին քովերը կը պտըտէին։ Անգամ մը աւանիկ պտըտելու ատեն՝ բարձր տեղ

մը գտան, որն որ Նաւի փրցուած ողո-Նափայտի կը Նմանէր, եւ կ'երեւար որ մեծ երկրի մը զանգուած ըլլայ։ Մինչեւ Նոյն ատեն մեր երեք բարեկամաց Նոյն կղզւոյն մէջ տեսած ամէն բլուրներն ու լեռները՝ որածայր ժայռերէ էին։ Բայց հոս հատ մ'ալ տեսան, որն որ խոտով ու մամռով ծածկուած, քովերն ալ խոնաւ ու ճախճախուտ էր։ Վրան ելլելով տեսան որ գագաթը մէջն ինկած էր։ Ճեղքը քննելով՝ տեսան որ բոլոր բլուրը սառուցէ բաղկացած էր եւ միայն վրան կեղեւի մը պէս՝ մամռով ծածկուած հող կար։ Վերի ծագն արեգակէն տաքնալով՝ հալած եւ ջուրը շատ կողմերէ առուի պէս վազելով՝ չորս կողմը ժողվուած էր։

Այս կործանած բլրէն իմացան որ երկրին մեծ մասը՝ գուցէ հազարաւոր տարիներէ վեր չհալող սառոյցներէ բաղկացած էր։ Կղզւոյն վրայ ասդին անդին տեսնուող ժայռերը՝ իբր թէ անոր կմախքներն էին. իսկ ան բոլոր ծովուն երեսին վրան գտնըւող դաշտերն ու ձորերը՝ սառուցով ու վրան քիչ մը կեղեւի պէս հողով ծածկըւած էին, Նոյն հողն ալ յառաջ եկած էր ծովուն բերած ու դիզած անկերէն եւ փայտերէն, որոնք ետեւէ ետեւ փտտելով՝ հող դարձած էին։ Անոր համար ամենեւին ծառ կամ տունկ մը խորունկ արմատ չէր կրնար ձգել, եւ գետնին ալ միշտ խոնաւ ու պաղ կը մնար։ Իրենց տնկած սխտորն

ու տողն ալ՝ քիչ մը արմատ ձգելէն ետքը՝ ապականեցան եւ հազիւ եղջերուաց ուտե-լու խոտ տուին։

Նոյն անտառուտները երեք բարեկամաց մեծ ծառայութիւն կ՚ընէին իրենց ժող-ված ծառի բները տուն կրելով։ Առան-ձին առանձին մէյմէկ գերանի մը լծուելով ալ՝ հեզութեամբ կը քաշէին։

Տունը բաւական այրելու եւ շէնքի փայտ կրելէն ետքը՝ սկսան մեծ փութով կար-գաւորել։ Շարժական կամուրջը քիչ մը ապականած ըլլալով՝ նորոգեցին. այրին մուտքին ալ՝ կրկին դուռ մը շինեցին, որ-պէս զի պաղէն աղէկ պատսպարուին։

Հիմակ ալ պէտք էր ուրիշ պաշարներ ալ պատրաստել, որոնց համար սրտոտու-թիւն ու ձեռնարկութիւն պէտք էր ընել։ Ձկնորսութիւնը Ալեքսիին սովորական զբաղմունքն էր. եւ այնչափ առատ ձուկ կ՚որսար՝ որ չէ թէ միայն իրենց ամէն օրուան կերակրոյն բաւական կ՚ըլլար, այլ նաեւ բաւական չոր ու մնած ձուկ ալ կը պատրաստէին։ Որսն աւելի դժուար էր, վասն զի արագոտն եղջերուները գարնան տեղերնին փոխած եւ ասդին անդին խառնաշառ տեղեր ցրուած էին։ Իվան երկայն ժամանակ պտըտելէն ետքը հաւ մը զարկաւ, որով բաւական ատեն ուտելու կերակուր ունեցան։ Բայց որով-հետեւ տաքին պատճառաւ արագոտն եղ-ջերուին ու ձկան միսը պահելը դժուար

կ'ըլլար, սկսան անապականն պահելու միջոց մը փնտռել: Նաւուղիղը հնարք մը գտաւ: Իր խորհրդեան. համաձայն՝ խցամին տակը տատուցի մէջ շտեմարանի պէս փոս մը փորեցին, որուն բերանը մեծ ու լայն քարով մը գոցեցին: Աս փոսը հիւսիսային կողմը. բացած էին, որպէս զի արեգական ճառագայթներուն տակ չիյնայ, եւ այնպէս շինուած էր՝ որ տակը ժողվուած ջուրը կրնար վազել երթալ: Այսպէսով միսն ու ձուկը միշտ թարմ կը մնային:

## ԳԼՈՒԽ ԻԳ.

Նաւ տեսնելու միջոցներ ու արշաւանքներ:

ՓԱՑՑԻ ու կերակրոյ աղէկ պաշար պատրաստելէն եւ բոլոր տնային գործքերը լմընցընելէն ետքը, Նաւուղիղն առաջարկեց որ կղզւոյն վրայ մեծ արշաւանք մ'ընեն: Ասով երկու դիտում ունէր. նախ կղզին աղէկ մը ճանչնալ, երկրորդ իրենց համար օգտակար եղող ուրիշ բաներ փընտռել: Կրնար ըլլալ նաեւ որ կիտարաններն իրենց կեցած կողման հակառակ կողմը ցամաք ելած ըլլային եւ Նախախնամութիւնն իրենց ընթացքը դէպ ի հոն ուղղէր:

Աս արշաւանաց համար օդը շատ յարմար էր, որովհետեւ Մայիսի վերջերն ըլլալով՝ սաստիկ տաքերը դեռ չէին կոխած: Երկայն ժամանակէ վեր չմնոտող արեւը՝ օրէ օր կը բարձրանար. եւ երեք բարեկամք

գիտէին որ Յունիսի 21ին իր վերջին աստիճանի բարձրութեան հասնելէն եւ վերջին աստիճանի տաքութիւն պատճառելէն ետեւ՝ կամաց կամաց իջնալու կը սկսէր մինչեւ որ աներեւոյթ ըլլար ։ Նաւուղիղը գիտէր որ կիտորսները Մայիս ամսոյն մէջ նոյն կողմերը կու գան եւ մինչեւ Շփիցպէրկ կը յառաջանան ․ իսկ երկայն օրն անցածին պէս՝ շուտով ետ կը դառնան , գիտնալով որ անկէ ետքը հիւսիսային կողմը կենալը վտանգաւոր է ։ Ուստի երեք աքսորեալց ազատութեան յոյսը՝ Մայիսի վերջին կէսէն մինչեւ Յունիսի կէսին մէջ սահմանաւորած էր ․ եւ կրնայ մտածուիլ որ իրենց ամէն օրուան աղօթքին մէջ չէին դադրիր Աստուծմէ խնդրելէն որ իրենց յոյսը պարապ չելլէ ։

Նաւ մը տեսած ատեննին , նոյն կղզւոյն մէջ ազատութեան սպասող մարդիկներ գտնուելնուն նշան տալու համար հարկաւոր եղածը հետերնին ունին ։ Շատ դժուարաւ կրցան իրենց խղէն մինչեւ ժայռին ամենաբարձր գագաթը ճամբայ մը բանալ , ուսկից որ ծովին պարանոցը կ'երեւար ։ Դիտելու համար սրոշեալ ատեն փոփոխակի հոն կ'ելլէին ։ Արագաւան եղջերուաց օգնութեամբ նոյն բարձր տեղը շաճի ծառ մը հանելով , վրան արջու մորթ մ'անցուցին , որն որ ծովուն վրայ շատ հեռուէն ալ կրնար տեսնուիլ ։ Աս նշանէն քիչ մը հեռու փայտ դիզելով՝ պատրաստեցին , որ

հարկ եղած տանն՝ շուտով կարենան կրակ վառել ։ Եւ որովհետեւ մուխը շատ հեռուէն ալ կը տեսնուի , անոր համար եթէ մղոններով հեռուէն ալ նաւ մ՚անցնելու ըլլար , նշմարելով կրնար դիրենք ազատելու նաւակ մը խրկել ։

Երկք բարեկամաց աս գործողութիւններուն մէջ ունեցած զգածմունքը՝ չէկրնար խօսքով բացատրուիլ ։ Վախն ու յոյսը փոփոխակի իրենց վրայ կը տիրէին ։ Մտածելով որ նաւ մը իրենց նշանը կրնայ իմանալ ու նաւակը խաւրել , ուրախութենէն սրտերնին կը զարնէր ։ Արդէն իրենց երեւակայութեան մէջ կը տեսնէին որ նաւակը հասած է , իրենք ալ թեւերնին տարածած՝ իրենց մոտացածին ազատիչը կը գրկէին ։ Մէյ մ՚ալ ետքէն երբ որ կը մտածէին թէ կրնայ ըլլալ որ իրենց կղզւոյն կամ բնակարանին կողմերն ամենեւին նաւ մը չմօտենայ , եւ իրենք նոյն տխուր տեղը ձմեռ մ՚ալ անցընելու ստիպուին , բոլոր քաջասրտութիւննին կը մարէր , աչքերնին արցունքով , սրտերնին ալ տրտմալի խորհուրդներով կը լեցուէր , եւ միայն Աստուծոյ կամացը հեռ ունեցած բարեպաշտ համակերպութեան տեղի կու տային ։

Աս մտածմունքներով իրենց երկայն արշաւանքը սկսան ան ճամբով՝ որով որ նաւէն իրենց բնակարանն եկած էին ։ Կերակուրներն եւ ուրիշ հարկաւոր բաները՝ արագոտն եղջերուները կը կրէին ։ Իրենց առ-

ջի անգամ՝ ջուր շնորհող առուին եւ առաջին գիշերին անցուցած այրին քով, եւ առջի արջուն հետ կռուած տեղերնին քիչ մը երկնկէկ կեցան : Աս ամէն տեղերն իրենց միտքը տխուր յիշատակներ կը բերէին, բայց միանգամայն առիթ կու տային իրենց շնորհակալութիւնն առ Աստուծոյ մատուցանելու :

Իրենց նաւէն ելած ատեն, նոյնին կեցած տեղը դիտակով դիտեցին, եւ յաջողութեամբ կղզին հասած ըլլալնուն համար կրակով նշան տուած ժայռերնուն վրայ ելան : Համատարած ծովուն վրայ իրենց աչքին առջեւը՝ միայն սառուցէ լեռներ կը տեսնէին, որոնք թեթեւ հովէն ու ալիքներէն կը տատանէին : Նաւու եւ ոչ նշմարանք կար : Նոյն կողմերը նաւի կոտրտուկ ակնան փնտռել., որպէս զի իմանան որ արդեօք իրենց կղզին գալէն ետեւ ելած մրրկով նոյն նաւը խորտակուած է : Բայց չկրցան անանկ բան մը տեսնել, որմէ կարող ըլլային հետեւցընել թէ նոյն կողմերը նաւ մը խորտակած ըլլայ :

Առաջին անգամ՝ իրենց դժբախտ ընկերներուն նշան տալու համար կրակ վառած ժայռին վրայ առագաստ եղջերուի մորթով կայմ մը տնկեցին, որով իրենց հոն ըլլալուն նշանը՝ կղզւոյն մօտեցող նաւին կ'ուզէին տալ : Աս ընելէն ետեւ՝ իրենց բնակարանը դարձան. Ճամբան շատ գդալխոտ ժողվեցին, եւ ճարպով առողջարար ու հա-

մով կերակուր եփեցին ։ Զորոյն մէջէն անցնող գետակին ափանց վրայ շատ Չերկատեան դաշտն, որուն թարմն երկայն տանէնէ վեր չէին կերած ։

Քանի մ'օր հանգչելէն ետքը՝ մազերնին դրին որ ծովուն քովէն կրցածնուն չափ հեռու ճամբորդութիւն ընեն ։ Աստր համար հետերնին ութը օրուան կերակրոյ պաշար առին ։ Որովհետեւ ծովեզրը կարգաւ ժայռեր կային, կը յուսային որ հանգչելու համար այր մը կրնան գտնել ։ Բոլորին ամէն հարկաւոր բաներով բեռնաւորելով՝ եղջերուները լծեցին ։ Կ'ուզէին ճամբանին այնպէս յառաջ տանիլ, որ ծովուն մէկ մասը միշտ աչքերնին ըլլայ, որով քանի մը մղոն հեռուէն անցնող նաւ մ'ալ աչքերնէն չփրծի ։ Վերջին օրերուն հանգստեան տանենը, ժամ մ'ալ չէին անցըներ առանց մէջերնէն մէկը դիտակով դիտելու համար ժայռին վրան խոյկելու. բայց ամենայն ինչ անօգուտ եղած էր ։

Ջերմեռանդն աղօթքով մը Աստուծոյ ողորմութիւնը խնդրելէն ետքը՝ ճամբայ ելան ։ Ծովեզրէն քալելը՝ յաճախ մինչեւ ծովուն մէջ երկընցող ժայռերուն համար խիստ դժուար էր ։ Նոյնպիսի տեղեր բեռերնին իրենք անձամբ տանելու կը ստիպուէին, վասն զի ան ղատախիյր ու խորտուբորտ տեղերը՝ արագաստն եղջերուք պարապ բոլորին խոկ դժուարաւ կրնային քաշել ։ Երբեմն ճամբանին երկու կողմը ժայռով

պատուած ծառի մէջէն կ'ըլլար, որով ծովուն առաջքը կ'արգիլուէր։ Այսպիսի տեղեր երկայն ժամանակ չէին հանգչեր. հապա աւելի ան տեղերը կը կենային, ուր որ ծովը տանելու արգելք մը չէր ըլլար։ Նոյնպիսի տեղերը հանգչելով՝ կրակ կը վառէին, բռնած ձկերնին կ'եփէին, կամ ծովու քովերը հրացանով զարնուած թռչունները կը խորովէին։ Շատ անգամ ծովուն քովերը փայտ գտնելով կը գործածէին, իսկ ուր որ չէր գտնուեր՝ բոյսերին վրայիններէն կը վառէին։

Իրենց այս ճամբորդութեան առաջին օրը երեք անգամ կենալէն եւ գոնէ տասը մղոնի չափ ճամբայ ընելէն ետքը, իրենց ու եղջերուաց հանգչելու համաձայն քիչ մը խորունկ այր մը գտան, որուն քովերը եղջերուաց համար բաւական ճարակ կար։ Ստոյգ է որ արեւելեան կողմը ժայռ մը դուրս ցցուած ըլլալով՝ ծովուն առաջքը կը խափանէր, բայց արեւմտեան կողմանէ առջեւնին շատ բաց էր։ Երեք բարեկամը աղէկ կերակուր մ'ուտելէն ետեւ՝ պառկեցան։

Ալեքսի եւ Իվան ճամբէն շատ յոգնած ըլլալով՝ շուտ մը քուն մտան։ Իսկ Նաւուղիղը, որն որ աւելի ուշ քնացած էր, որոտմանն նման ձայնէ մը արթնցաւ։ Միտ դնելով՝ երկրորդ ու երրորդ անգամ ալ նոյն տեսակ ձայն լսեց, որն որ ժայռերուն մէջ կը հնչէր։ Շուտ մը վեր ցատքեց, երկինքը

զննեց, բայց պարզ ու մաքուր էր։ Ուրեմն որոշուած չէր կրնար ըլլալ։ Անմիջապէս իր բարեկամներն ալ արթնցուց, որոնք՝ ինչպէս յոգնած մարդիկներուն կ՚ըլլայ, յուզեալ քնոյ մը մէջ նոյն ձայնը լսած էին։ Խուզզըան երազի մէջ իրենց մտքին առջեւ նաւ մը կը ներկայանար, եւ այնպէս կ՚երեւակայէին որ իր գալն աւետելու համար՝ երեք թնդանօթ արձակելով՝ զիրենք նաւը կը հրաւիրէր։ Ոտք ելլելով՝ աչքերնուն զօրածին չափ ծովը դիտեցին. արեւելեան կողմանն ժայռին վրան ելան, բայց ո՛չ աչքով եւ ո՛չ դիտակով նաւ կամ նաւու նշմարանք տուող բան մը կրցան տեսնել։ Այնպէս յոյսերնին պարապ ելլելով, անզերնէին դարձան եւ նորէն պառկեցան. բայց հանդարտաբար չկրցան քնանալ, վասն զի թնդանօթի ձայնը միշտ ականջներնուն կը հնչէր։

Երկրորդ օրը կանուխ ճամբայ ելան։ Միշտ խորաձորի մը մէջէն կը քալէին, եւ որչափ որ յառաջ կ՚երթային՝ այնչափ ալ դուրս ցցուած ժայռերը ծովու տեղը կը խափանէին։ Ետքէն ծովափնեայ տեղ մը լայն դաշտ մը գտնելով՝ ճամբանին հոնկից յառաջ տարին։ Նոյն ճամբէն երկու ժամու չափ յառաջ երթալով, աջ կողմի ժայռերուն մէջէն անցք մը զիրենք ուրիշ ժայռերով պատուած դաշտ մը հանեց։ Հոն կենալով՝ կարթերնին նետեցին որ կերակրոյ համար ձուկ որսան։ Արագաստն եղջերուներն ալ լուծէն արձակելով՝ արօտ

թող տալուն, որ իրենք իրենցմէ երթան ճարակ գտնեն ։

Աս յած ժայռերով պատուած ձորը՝ աչքին գեղեցիկ տեղ մը կը ներկայացընէր ։ Մէջէն հեզիկ մրմունջով առու մը կ'անցնէր, որուն ափունքը թփերով լեցուն էր ։ Երկու կողմերը գեղեցիկ խոտաշատ դաշտեր կային, Ջրային թռչուններն ալ եղերքը կը թռչտէին ։ Նոյն ձորոյն գեղեցկութեան ու բարեբերութեան վրայ այնպէս զարմացան, որ իրենք զիրենք երկրին ուրիշ մէկ կողմը փոխադրուած կը կարծէին ։ Շրջապերկի վրայ կողմ մ'ալ այսպէս գեղեցիկ եւ խոտաշատ տեղ տեսած չէին. Հոն գգալխոտ, Ջրկոտեմն եւ ուրիշ իրենց անծանօթ տնկեր ալ կային. Հողին թանձրութեան ալ իրենց անտակին քովի հողէն աւելի ըլլալուն վրայ չէին տարակուսեր ։ Բոլոր ձորն այնպէս աղուոր երեւցաւ իրենց, որ որոշեցին թէ երկայն ատեն Շրջապերկի վրայ կենալու ստիպուին նէ, ամարուան մեծ մասը նոյն տեղն անցընեն ։

Նաւուղիղը մէկ' բանին չէր հաճեր. այսինքն թէ ձորն այնպէս ամէն կողմանէ ժայռերով պատուած ըլլալով, ծովուն վրայ ազատ ու բաց տեղ չունէին, որն որ իրենց համար էական բան մըն էր, առանց որոյ՝ ան կողմանէ անցնող նաւերը կրնային իրենց աչքէն պրծիլ ։

# ԳԼՈՒԽ ԻԴ.

## Նաւ մը։

ԵՐԵՔ բարեկամք կաթսայի մը բոլորտիքը շարուած էին, որուն մէջ ձուկ ու դդալխառն կ'եփէին։ Զորին գեղեցկութեան վրայ այնպէս զմայլելով կը խօսէին, որ միտ չէին դրած թէ եղջերուներն իրենց աչքին առջեւէն աներեւոյթ եղած էին։ Մէյ մ'ալ յանկարծ հրացանի մը ձայնէ արթնցան եւ տեսան որ պզտիկ արագաստն եղջերուն դիմացի կողմը պատող ցած բլուրներուն վրայէն փայլակի արագութեամբ ցատքելով՝ կու գայ։ Մէկալ եղջերուն ալ ուրիշ կողմանէ կու գար։ Հեռուէն ալ մարդիկներու ձայն մը կը լսուէր։

Երեքն ալ յանկարծ վեր ցատքեցին, որ եղածն իմանան։ Օտար մարդիկներու ձայնն իրենց ականջներուն քաղցր հնչում մըն էր։ Պզտիկ եղջերուին եկած կողմը նայելով՝ չորս հոգի տեսան, որոնք հրացանով զինուած ու նաւավարի զգեստ հագած էին, եւ ժայռերուն վրայէն կը քալէին։ Երեք բարեկամաց բերնէն ուրախութեան աղաղակ մը փրթաւ. գլխարկնին շարժելով՝ օտարականաց կը պոռային որ իրենց քովը գան։ Այնպէս ապշած էին որ հազիւ իրենց աչքին կրնային հաւատալ. տեսածնին՝ երազ կամ իրենց երեւակայութեան ծնունդը կը համարէին։ Բոլոր անդամնին անդամալուծի պէս բանուեցան,

ոտներնին ալ սատանիկ կը զարնէր։ Բայց անտառնին ցնորական երեւոյթ չէր, ազատութեան ժամը հնչած էր։ Օտարականք ալ գլխարկնին բարձրացընելով՝ ուրախութեան աղաղակ մը փրցուցին եւ ժայռերէն վար անձագարելով՝ դէպ իրենց կողմը կը վազէին։ Երեք բարեկամք ուրախութենէն չէին կրնար բառ մը զրուցել։ Տղերնին անշարժ կեցած՝ արտասուալից աչուընին մէյ մը դէպ ի երկինք կը վերցընէին, մէյ մը եկողներուն վրայ կը դարձընէին։

Վերջապէս նաւուղիղը խօսելու սկսաւ. Հառաչելով. Տէր Աստուած, գոչեց, որչափ բարի ու ողորմած ես։ Եղբք երկքն իրարու փաթթուելով, Աստուած մեր աղաչանքը լսեց, ըսին, եւ մեր վշտերուն վերջ տուաւ։ Բարութիւնն ու կարողութիւնն անբաւ է։ Աս ըսելով՝ օտարականաց կողմը սկսան վազել։ Բայց արդէն եկողներէն մէկը հեռուէն իրենց անուններնին կու տար, ձայնն ալ իրենց ծանօթ էր։

Տէր Աստուած, կանչեցին, եկողը նաւապետն է։ Ուրեմն զմեզ իրմէ բաժնող մրրկէն՝ վնաս մը չէ կրած։ Ան է, ստուգիւ ան է։ Եւ շուտով մը վրան վազելով՝ անոր փաթթուեցան։

Երկայն ժամանակէ վեր իրարմէ բաժնուած բարեկամներուն իրար տեսած ատեն ունեցած ուրախութիւնն ո՞վ կրնայ ստորագրել։ Երկայն ատեն այնպէս լռութեամբ մէկմէկու փաթթուած մնացին։ Վերջապէս

ոգւոյն ուրախութեան արցունք թափել, եւ Աստուծոյ իրենց ըրած բարերարութեան մեծութիւնը ճանչնալէն՝ երկինք արձակած նայուածքով յայտնեցին։ Բոլոր կրած վշտերնին մոռնալով՝ երջանկութեան ծովու մը մէջ կը լողային։

Վերջապէս նաւապետը խօսելու սկսելով՝ ըսաւ. Սիրելի՛ բարեկամք, ձեզ գտնելովս կրկնապատիկ երջանիկ կը սեպեմ զիս։ Ձեր իմ նաւէս բաժնուելէն ետքը՝ ծանր հոգ մը միշտ սիրտս կը ճմլէր. ձեզ ձեր հօրը անէն հանելով՝ աս ճամբորդութեան ձեռք զարնել տալուս համար՝ միշտ կը չարչարուէի։ Աս պատճառաւ ձեզ նորէն ձեր աստուածապաշտ հօրը բազկացը հասցընելու համար միտքս դրած էի որ ամէն բանի ձեռք զարնեմ։ Անոր համար դարունն եկածին պէս՝ դէպ ի Շիլիացւոց ճամբայ ելայ։ Կղզւոյն արեւելեան կողմը ծոցի մը մէջ նաւս խարիսխ նետած է։ Արդէն երէկ գիշեր նաւի մը գալուստը ձեզի իմացընելու համար երեք թնդանօթ արձակեցի։ Ձեզ փնտռելու համար նաւակով մը մինչեւ հոս եկայ։ Ցամաք ելլելէս ետքը ժայռերուն վրայէն արագոտն եղջերու մը տեսնելով՝ քայլերս դէպ ի սա կողմը դարձուցի։ Եւ նոյնն ատեն կենդանի մը կարծելով՝ հրացանս ուղղեցի, բայց չկրցայ հանդիպցընել։ Ետեւէն ինկանք, եւ աս ձեր զանուած գեղեցիկ հովիտն հասնելով՝ ձեզի հետ միացանք։ Մ՛իտքս ան էր, որ ձեր ինչ

եղածն իմանալու համար բոլոր կղզին պտը-տիմ։

Երեք բարեկամք նաւապետը գրկելով՝ իրենց համար յանձն առած աշխատութեան ու փութոյն համար շնորհակալ եղան։ Նաւե-անոր ընկերներուն ձեռքերնին երկընցուցին, եւ ասանկ բարերար անձանց մէջ գտնուելնուն վրայ մեծապէս կ'ուրախանային։ Ա՛ս ուրախալի դիպուածին մէջ նորէն ամենախնամ Նախախնամութեան ընթացքը՝ պայծառ տեսան։ Նաւապետին կղզւոյն արեւելեան կողմը գալն ու հոն ապահով ծոց մը գտնելով՝ խարիսխ նետելը պատահական բա՞ն էր։ Աստուած-մէ չէ՞ր մի՝ որ նաւապետին նաւակն այնպիսի կողմ կեցաւ, ուսկից մեր դիւցազանց քովը գալը դիւրին եղաւ։ Նաւապետին ընթացքը երեք բարեկամաց կեցած տեղն ուղղողը՝ անբան անասուն մըն էր։ Պատահական բա՞ն էր դաշտին գեղեցկութեան վրայ այնչափ զմայլելնին՝ որ- մինչ իրենց բոլորտիքն արածուող եղջերուաց հեռանալը չիմացան։ Ո՞վ էր պղտիկ եղջերուն ըստ ամենայնի ան բլրին վրայ հանողը, ուր որ նաւապետն ու իր ընկերները զինքը կրնային տեսնել, եւ ոչ ուրիշ բլրի վրայ՝ ուր նոյնպէս ճարակ կրնար գտնել։ Նաւաբեկեալք լռութեամբ իրենց մտքին մէջ աս հարցումներն ընելով, սրտերնին Աստուծոյ վրայ երախտագիտութեամբ լեցուեցաւ։

Նաւապետն իր մարդիկները խրկեց որ երթան նաւակն իրենց գտնուած հովտին քովը բերեն։ Նոյն միջոցին ինքն ու երեք բարեկամքը՝ իրարու վիճակին վրայ զանազան հարցումներ կ'ընէին։ Բայց հազիւ կրնային միայն երեւելի դիպուածներն իրարու հաղորդել, որոնք երկու կողմանէ ալ զարմանալի էին, եւ երկուքին մէջն ալ աստուածային Նախախնամութեան գործքերը կ'երեւային։

Նաւակը քիչ մը վերջը հասաւ։ Նաւապետն աղէկ միս, պաքսիմատ, գինի ու շաքարօղի բերել տուաւ, եւ նաւաստիներէն մէկն աղէկ կերակուր պատրաստեց։ Ո՜հ, ինչպէս անուշ կու գար երեք բարեկամաց նաւական կերակուրը, պաքսիմատն ու գինին, որոնցմէ երկայն ատենէ վեր զրկուած էին։ Բայց իրենք ալ նաւապետին առջեւն անանկ բան մը հանեցին՝ զորն որ շատ ատենէ վեր չէր ճաշակած։ Եղջերուէն կաթ կթելով՝ թէյ եփեցին եւ երկուքով խառն ըմպելիք մը մատուցին։

Կերակրոյ ժամանակ՝ խօսակցութեան նիւթն էր երեք բարեկամաց գլխէն անցածները։ Իրենց բնակարանը, տնային կարգադրութիւնները, ինչպէս եւ ուր տեղ ուտելիք գտնելնին, եւ Աստուծոյ իրենց ինչպէս օգնելն ու նաեւ երբեմն զարմանալի կերպով օգնութեան հասնիլը՝ մէկիկ մէկիկ նկարագրուեցան։ Նաւապետն ու իր մարդիկն ալ պատմութիւնը մանրագրու-

թեւամբ լողալով՝ երկու դժբախտներուն բարեպաշտ գգուածմանց վրայ շինուեցան : Պատմածներն՝ նաւաստեաւին այնպէս արտաքոյ կարգի բան կ'երեւար, որ ուզեց անձամբ անոնց բնակարանն ու պաշտօնը տեսնել : Որոշուեցաւ որ նաւակով մինչեւ պարանայն երթան,' եւ անկէ ոտքով մինչեւ անտառը յառաջանան : Բեռները, եղջերուներն ու բալխերը մէկանեղ նաւուն վրայ բեռնաւորելով՝ անկէ բաժնուեցան :

## ԳԼՈՒԽ ԻԵ.

### Հերոյ նաւուն ելաւին ելածները :

ԿԱՒԱՐԳԵԼՈՒ տանն՝ նաւաստեան իրենցմէ բաժնուելէն ետքը գլուխն եկածները պատմեց : Նաւուղիղն Իվանին ու Ալեքսիին հետ հաստատուն երկիր մը փնտռելու գացած տանն՝ նաւը սառոյցներու մէջ անշարժ կը կենար : Դէտերուն ժայռին գլուխը նշան տալու համար վառած կրակն ու երկու հրալից փամփուշտը նաւաստիքը տեսնելով եւ իմանալով որ անոնք բոլոր նաւաստեաց բնակելու յարմար այր մը գտած են, սկսան նաւը պարպելու պատրաստութիւն տեսնել : Կտորտած կայմերէ լաստեր ու բալխիրներ շինեցին, որոնց վրայ պաշարները բեռնաւորելով՝ սառուցեալ դաշտին վրայէն պիտի քաշէին : Բոլոր նաւաստիքը՝ տակառները, արկղներն ու նաւին մէջ գտնուած ամէն կահ կարասիքը

դուրս հանելու կը ջանայէին, որպէս զի շուտով բալլխիրներու վրայ բեռնաւորեն։ Նոյն միջոցին նաւապետն իր թղթերն ու նաւարկութեան գործիքները կը ժողվէր։ Արդէն որոշած էր թէ նախ որո՞նք կղզին պիտո՛ր երթան եւ ի՞նչ պիտի տանին։ Մէյ մ'ալ երկրորդ նաւուղիղը վար իջնալով՝ պլպլութեամբ մը իրեն ըսաւ որ կղզին երթալը պէտք է աճապարել, վասն զի ամէն նշաններուն նայելով՝ օդը պիտի փոխուի եւ սաստիկ մրրիկ պիտի փրթի։ Նաւապետը շուտով մը ծածկին վրայ ելլելով՝ տեսաւ որ հովը հիւսիսային արեւմուտքէն կը փչէր։ Օդը խոնաւ էր եւ ձիւնելու կը սկսէր։

Արդէն քանի մը բաներ շուտով դուրս հանելու հրաման տուած էր, մէյ մ'ալ հովը սաստկացաւ. կղզւոյն քովէն նաւը պատող սառոյցները դղրդելով՝ փրթան, եւ սկսան նաւը սաստկութեամբ ցամաքէն հեռացընել։ Ա՛լ անկէ ետեւ բալլխիրներով բեռները փոխադրելու ձեռք չէին կրնար զարնել։ Երթալով վտանգը կ'աւելնար. վասն զի հովը հիւսիսային արեւմուտեան սաստիկ փոթորիկի մը փոխուած էր, որն որ սառոյցն ու նաւը՝ խրկուածներուն զանըլ-ած կղզւոյն հակառակ ուղղութեամբ կը տանէր։

Ա՛լ ան ատեն նաւապետն ըսաւ. Աստուած օգնական ըլլայ մեր երեք ընկերներուն. վասն զի եթէ միրիկը շուտով չդա-

գրի նէ, ալ չենք կրնար անոնց հետ միանալ: Հիմայ մենք պէտք է որ զմեզ մրրկին ձեռքը թողունք: Նաւէն ելլելը անկարելի է, բայց յուսահատիլ պէտք չէ որ կորսընցընենք, վասն զի նաւին էական մասերն անվնաս մնացած ըլլալով՝ կրնանք սառոյցներէն ազատիլ եւ բաց ծովուն մէջ մնալ: Աս խօսքերը նաւաստեաց քաջալերութիւն տուին. բայց նաւապետն այնչափ չէր յուսար որ ազատին: Միշտ կը վախնար որ մրրկին բռնութենէն նաւը չընկղմի եւ սառոյցներէն ալ չջախջախի: Ասկէ զատ՝ նաւը կայմ չունէր. խել ղեկը սառուցի հարուածներէն այնպէս ապականած էր, որ բաց ծովու, եւս առաւել սառոյցներու մէջ չէր կրնար կառավարուիլ. եւ այսպէս հովին ձեռքը խաղալիկ պիտի ըլլար: Այս ամենայն կը տեսնէր նաւապետը, բայց իր անձկութիւնները չէր ուզեր նաւաստեաց յայտնել, որ զիրենք ալ չվհատեցնէ: Անոնց առջեւն ինք զինքն ապահով կը ցուցընէր եւ անոնց հետ ուրախութեամբ կը խօսէր, պարտքերնին կատարելու եւ իր հրամանաց ճշդիւ հնազանդելու կը քաջալերէր. վասն զի գործունէութեամբ եւ ամէն մարդ իր պարտքը կատարելով՝ կրնային վտանգին յաղթել:

Նաւին համար ամէն հարկաւոր կարգադրութիւններն ընելէն ետքը՝ նաւապետը վար իջաւ, եւ իր աշխատակցաց ու Լոնտոնի ծովակալութեան նամակներ գրելով,

Արխանկելէն Շբիցպէրկ բռած ճամբորդու-թիւնը կը ստորագրէր. ատոնց քով գրա-նաւէ օրագիրն ալ։ Աս ամէն գրուածնե-րը պզտիկ տակառի մը մէջ դնելով՝ ամէն կողմանէ աղէկ մը ձիւթով գոցեց։ Միտքն ան էր՝ որ եթէ ատենէր թէ ալ ազա-տութեան յոյս չկայ, տակառը ծով ձգէ. կը յուսար որ նոյնը կրնայ ալիքներէն մղուե-լով՝ դէպ ի ցամաք երկիր մը մօտենալ եւ գտնուիլ։ Թէ որ նաւը կորսուելու ըլլար, տակառն միակ միջոց մըն էր իր վրայ տեղե-կութիւն տալու։ Աս միջոցն ամէն նաւա-պետ վերջին վտանգի ատեն կը գործածէ։ Ծովափնեայ տեղեր սովորութիւն է որ մէկն այսպէս տակառ կամ տիկ մը գտնելուն պէս, առանց բանալու՝ կը տանի տէրու-թեան կը յանձնէ, ան ալ բանալով՝ նա-մակներն իրենց տէրը կը հասցնէ։

Բայց մրրիկն երթալով կը սաստկանար երկինքն ալ սեւ ամպերով միշտ աւելի կը ծածկուէր։ Սակայն կ'երեւար որ պաղը քիչ մը կը նուաղի։ Ան սառուցէ դաշ-տը՝ որուն վրայ նաւը մնացած էր, սկսաւ խորտակիլ եւ սառուցի խոշոր կտորներ անկէ կը փրթէին։ Հովը միշտ նաւը ցա-մաք երկրէն կը հեռացնէր։ Նոյն ատեն նոր վտանգ մ'ալ վրայ եկաւ։ Տակի սառու-ցով մէկտեղ արդէն ծովուն մէջ մնացած նաւուն ահագին սառոյցներու հարուածէն կրնար խորտակիլ։ Աս կերպով նաւն ե-րեք օր երեք գիշեր հովէն կը մղուէր։

երթալով այս յոյսը նաւաստեցաւ։ Ամե-նեւին նշան չէր երեւար։ Ուստի եւ յոյ-սերնին միայն նաւակին վտանգաւոր ճամ-բորդութեան վրայ մնաց։ Այս փորձին հա-մար ալ երկրորդ օրն որոշուեցաւ։

Նաւաստեաց վրայ վհատութիւնը տի-րած էր. եւ շատերը մտքերնին դրեր էին որ մահուընէ ոխտի չկարենան ազատիլ։ Մէյ մ'ալ ճամբայ ելլելուն առջի գիշերը պահապանութիւն ընող նաւավարը դահա-վիժութեամբ վար նետուելով, Նշա՜ն մը, պոռաց, Նշա՜ն մը. Հարաւային արեւմտեան կողմանէ նշան մը։

Նաւապետն ալ բոլոր մարդիկներովը նաւածածկին վրայ ելլելով՝ տեսեւէ տեսեւ շատ հեռուէն փամփուշտներ արձակեցին։ Հարաւային արեւմտեան կողմէն ալ հե-ռուէն երկու հրացանէ փամփուշտներ տեսան։ Նա՛ւ մը, նա՛ւ մը, ա՛լ փրկուեցանք, աղա-ղակը բերնէ բերան կը պտըտէր։ Ուրա-խութենէն ինչ ընելիքնին չէին գիտեր։ Ծունկան վրայ ինկալով՝ երախտագիտութեան արտասուօք, իրենց հասած անակնկալ օգ-նութեան համար Աստուծոյ շնորհակալ եղան։ Վերջապէս հեռուէն կրակ մ'ալ տեսան, եւ թնդանօթի որոտմունք մը լսուեցաւ։ Նաւապետը նոյնպէս պատաս-խան տուաւ, եւ մէկալ նաւէն նորէն թնդանօթ մ'արձակուեցաւ։ Այսպէս փո-փոխ նշան տալը՝ մինչեւ առաւօտ տեւեց։ Առաւօտուն կանուխ անձկութեանց մէջ

ապաստող դժբախտները տեսան որ նաւ մը իրենց օգնութեան հասնելու համար մակոյկը ծով կ'իջեցընէր: Ճերայն նաւաստիները սառոյցներու վրայէն՝ զիրենք ապաստողներուն դիմացը գացին: Մակոյկը շուտ մը սառոյցներուն քովը հասաւ: Նոյնը խրկողը՝ Ցանխիմարգացի կիտորսի նաւ մըն էր, որն որ նոյն կողմերն ուշացած էր: Բոլոր նաւաստիք՝ իրենց նաւէն առնել կրցածնին մէկտեղ առած՝ նոյն նաւը գացին, որն որ անմիջապէս դէպ ի Գոբէնհակ ճամբայ ելաւ: Նաւապետն ու իր նաւաստիքն անկէ Անգղիա անցան, ուր գլուխնին եկած դժբախտութիւնն ամէն կողմ հրատարակուեցաւ:

Նաւապետն Անգղիա հասածին պէս, նամակ մը գրեց Օգսբուրկին, որն որ իր որդւոյն ու եղբօրորդւոյն վրայ շատ անհանգիստ կ'ըլլար, եւ անոնց վրայ գիտցածը ծանոյց, հաստատելով որ երկրորդ տարին նորէն դէպ ի հիւսիսային բեւեռը ճամբորդութիւն ընելով, զանոնք գտնելու համար Շբիցպերկ խարիսխ կը նետէ: Նոյն լուրը նաեւ նաւուղղին կնոջն ալ տալով՝ նաեւ ստակ ալ խրկեց, որ անոր հեռաւորութեան ատենն՝ կինն ու որդիքը խեղճութեան մէջ չմնան:

Անկէ ետեւ սկսաւ նոր արշաւանացը համար պատրաստութիւն տեսնել: Իր երեք ընկերաց վիճակը զինքը շատ անհանգիստ կ'ընէր, վասն զի կը տեսնէր որ Ի-

տան, սկսաւ կղզեաց քովերէն երթալով՝ մեռ տեղերը նաւ զամնուիլն իմացընելու համար երբեմն երբեմն թնդանօթ արձակել: Հոն հասած ատեն՝ նաւաբեկելոց բնակած տեղւոյն հակառակ կողմը խարիսխ ձգեց: Եղբը մակոյկի մը մէջ մտնելով՝ ցամաք ելաւ եւ սկսաւ զիրենք փնտռել: Նախախնամութիւնը զիրենք զարմանալի եղանակաւ մը իր դիմացը բերաւ:

## ԳԼՈՒԽ ԻԶ.

### Երէց Բարբէնամ կղզին կ'ելլէ:

ԱՅՍ պատմութեան ատենը՝ մակոյկը կղզին քովերը հասաւ: Նաւապետն ու իր ընկերներուն այրը մտնելով՝ մէջի կարգաւորութեան վրայ շատ զարմացան: Իրենց աչքին հանդիպած բաները խօսակցութեան նիւթ կու տային, որմէ մինչեւ Աստուծոյ մեծ բարերարութիւնն ու անձին հարկաւորութեան մէջ իրենց օգնութեան հասած ըլլալը կը տեսնուէր: Բոլոր պաշարներն աչքէ անցան եւ որոշուեցաւ թէ հետերնին ինչ պիտի առնուն եւ ինչ պիտի թողուն: Նաւապետը՝ որն որ խոհեմ ու միանգամայն շատ գութ ունեցող մէկն էր, մտածելով որ իր երեք բարեկամաց դժբախտ դէպքէն ուրիշ նաւորդներու ալ կրնայ պատահիլ, անոնց համար ձմերուան պաշար ուզեց թողուլ: Նաեւ երեք բարեկամաց հոն բնակած ատեն գործա-

ծած բոլոր գործիքներն ալ հոն ձգել ու-
զեց: Նաւուղղին յանձնուեցաւ որ այրին
նկարագրութիւնը չինէ, մէջն եղած տա-
րկայից ալ ցանկն առնէ, նաեւ կերա-
կուր հոգալու եւ նոյն կղզւոյն մէջ բնա-
կելու ամէն տեղեկութիւններն ալ տայ:
Իսկ Իվան նոյնն անգղիերէն թարգմանեց:
Գրուած տեղեկութիւնները թիթեղէ տուփ
մը մէջ գոցելով՝ այրին մէջ տեղանին վրայ
դրին, որպէս զի հոն իյնող դժբախտ նաւ-
որդք դիւրաւ գտնեն: Թէպէտ եւ ժա-
մանակը նաւապետին համար շատ թանկա-
գին էր, ի վերայ այսր ամենայնի մինչեւ որ
այս ամենայն կարգաւորուեցաւ նէ՝ հոն
կեցաւ:

Անկէ ետքը հետերնին տանիլ ուզած-
նին՝ նաւակին մէջ տեղաւորեցին: Ասոնց
մէջ նաեւ իրենց համար շինած զգեստներն
ալ կային, զորոնք՝ նոյն կղզւոյն մէջ բնա-
կելնուն յիշատակին համար՝ քովերնին պա-
հել կ՚ուզէին: Նաեւ այնպիսի ուտելիք-
ներն ալ առին՝ որոնք կենալով կրնային
ապականիլ: Արագաւոն եղջերուներն ալ՝
որոնք այնպէս հեզ ու ընտանի էին, ուզե-
ցին մէկտեղ առնել: Նաւապետը թոյլ
տուաւ որ անոնք ալ մակուկին մէջ առ-
նուին: Բայց յառաջագոյն հարկ եղաւ որ
անոնց համար մամուռ ու խոտ ժողվեն եւ
չորցընեն, որպէս զի ճամբան իրենց կերա-
կուր տան:

Բոլոր աս պատրաստութիւնները լմըն-

նալով, երեք բարեկամքն իրենց հրաժարա-
կանը տուին առ կղզւոյն՝ որն որ այնչափ
սրտաշարժ յիշատակներ կը թողուր իրենց
վրայ ։ Աստուածային Նախախնամութեան՝
նոյն ատեղն իրենց ըրած ամէն բարիքնե-
րուն համար շնորհակալ եղան ։ Արտօսր-
նին շարժելով իրենց աչքին առջեւը կը
բերէին այն ամէն վտանգները՝ որոնցմէ զի-
րենք Աստուած ազատած էր ։ Ամէն ան-
ցածնին՝ իրենց վրայ երախտագիտութեան
նոր զգածմունք մը կը զարթուցանէր ։
Մակոյկ չմտած՝ գետինին իյնալով՝ պագին
եւ իրենց արցունքովը թրջեցին այն տաւուցէ
գետինը՝ զորն որ ընդ միշտ կը թողուին ։
Մինչեւ որ նաւ հասանէ՝ աչքերնին միշտ
կղզւոյն վրայ էր, եւ սրտերնէն անցածը՝
իրենց կերպարանքով ու թափած արցունք-
ներով կը յայտնէին ։ Նաւուն մէջինները
զիրենք ուրախութեան աղաղակներով ընդ-
ունեցան ։ Հոն շատ բարեկամներ գտան,
որոնց հետ առաջին ճամբորդութիւննին
ըրած էին ։ Ամէնքն ալ նաւապետը կը
գովէին զանոնք գտնելու ետեւէ իյնալուն
համար, եւ գործքին աղէկ յաջողելուն հա-
մար որոնց իրեն ուրախակից կ'ըլլային ։

Նաւապետը հրաման ունէր կրցածին
չափ աւելի դէպ ի հիւսիս յառաջանալու եւ
չէր կրնար յառաջուընէ իմանալ թէ ար-
դեօք պիտի կարենայ նոյն գործքը յաջող-
ցընել, կամ թէ գլուխն ինչ պիտի գայ ։
Կը բաղձար որ երեք բարեկամները՝ որչափ

կարելի է նէ շուտով՝ երենց հայրենիքը հասցընէ. իսկ իր արշաւանաց ատեն զանոնք հետը տանելով՝ նոյն վախճանին չէր կրնար հասնիլ: Ուստի որոշեց որ նախ քիչ մը դէպ ի հարաւային կողմը նաւէ, ուր յոյս ունէր թէ կիտորսաց նաւ մը կը հանդիպի ու զիրենք ան նաւուն յանձնելով՝ Արխանկել կը խրկէ: Աս վախճանին համար Պաֆֆինի ծոցէն անցաւ, որն որ հիւսիսային Ամերիկայի ծայրն ու Կրէնլանտայի մէջն է: Օդը շատ յաջող էր, որով սառոյցներէն նեղութիւն չկրեցին:

Նաւը նոյն ամսոյն երկերներուն մէջ բնակող Էսքիմոյւոց ու Կրէնլանտացւոց հետ շատ անգամ բան գործ ունենալով, մեր բարեկամներին անոնց բարուց վրայ աղէկ տեղեկութիւն ունեցան:

## ԳԼՈՒԽ ԻԸ.

### Կրէնլանտացիք ու Էսքիմոյք:

ԱՍ ազգերուն հասակը կարճ է, եւ գրեթէ միշտ հինգ ոտնաչափէ վար, բայց վայելուչ համեմատութեամբ: Դէմքերնին-կլայն ու տափարակ է, կլոր ու գէր այտերով՝ որոնց ոսկրը դուրս ցցուած կ'ըլլայ: Աչքերնին՝ պզտիկ ու սեւ, բայց քիչ փայլուն է. բերաննին՝ մեծ, շրթունքնին՝ թեթեւ մը դուրս դարձած. քթերնին՝ պզտիկ է, բայց տափակ չէ: Գլուխնին մեծ է, երկայն, կակուղ ու սեւ մազերով:

Էրիկ մարդիկ գրեթէ մօրուք չունին, վասն զի բուսածին պէս՝ կը փրցընեն։ Երեսներնուն գոյնը ձիթապտղոյ գոյն է, եւ երբեմն կենդանի կարմրութիւն մը կ՚ունենայ։ Տղաք բաւական ճերմակ կը ծնանին, բայց միօրինակ վերջին աստիճանի աղտոտութեամբ ապրելով՝ շուտ մը մութ գոյն մը կը ստանան։ Ստուգիւ ալ միշտ եղի ու ճարպի մէջ են, իրենց կանթեղին թանձր մուխին քովը կը նստին եւ խիստ ցանցառ կը լուացուին։ Իրենց գունոյն ալ թխութիւնը կրնայ նաեւ կերած եղոտ ու ճարպոտ կերակուրներուն ալ տրուիլ, որոնք այնպէս իրենց երակներուն մէջ կը թափանցեն՝ որ քրտինքնին եղ ու ձուկ կը հոտի, ձեռքերնին ալ՝ ծովահորթի ճարպ, զորն որ միշտ կ՚ուտեն ու կը շօշափեն։

Կրէնլանտացւոց ձեռքերն ու ոտքերը պզտիկ ու լեցուն են. ուսերնին՝ լայն է, մանաւանդ կանանց, որոնք տղայութենէ ծանր բեռներ կը կրեն։ Գէր ու արիւնոտ մարմին մ՚ունին. սա բնածին ուրախութեամբ ու թանձր մուշտակներու փաթտուելով, գլուխնին ու վզերնին բաց՝ պաղ օդերու տակ կը պտըտին։ Տներնուն մէջ միայն կէս մէջքերնէն մինչեւ ծնկուըները ծածկուած կը պտըտին. բայց այս վիճակին մէջ իրենց մարմնէն բուրած հոտն անտանելի է։

Զգեստնին շատ հետաքրքրական է եւ ղանկանք շինելու համար գործածած անօթի-

տան գործիքներուն նայելով՝ չափաւոր վայելուչ։ Բոլորն ալ տարագաւոր եղջերուի, ծովահորթու եւ թռչնոյ մորթերէ կը շինեն։ Կրկնոցնին Եւրոպացւոց այլատանի զգեստին կը նմանի. միայն անոր չափ երկայն ու լայն չէ, առջեւի կողմանէ ալ մինչեւ կզակը կարուած է։ Նոյնին վերին կողմը գլխարկ կամ՛ կնգուղ մը կայ, զորն որ անձրեւի կամ՛ պաղի ատեն՝ գլուխնին կ'անցընեն, եւ առասանով մը ուզածնուն չափ երեսներնուն վրայ կրնան ամփոփել։ Կանանց պարեգօտն արանց կրկնոցէն քիչ մը տարբեր է, գլխարկն ալ աւելի մեծ. իսկ վարի կողմը՝ կլոր կարուած ըլլալու տեղ առջեւէն ետեւէն երկայն պոչածայր կ'ըլլայ եւ երբեմն մինչեւ գետին ալ կը քաշուի։ Ասկից զատ՝ կանանց պարեգօտը գոյնզգոյն մորթի կտորներով զարդարուած է՝ զորոնք խիստ աղուոր ու նաեւ գեղեցիկ ճաշակով քովէ քով կը դնեն։ Աս զգեստը Հասարակօրէն ծովահորթու մորթէն կը շինուի. բայց երբեմն նաեւ արագաւոր եղջերուի ու թռչնոյ մորթ կը գործածեն՝ զանոնք ճարտարութեամբ մը միացընելով։ Էսքիմացիներէն ոմանք ալ զգեստին տակէն՝ ծովահորթի փամփուշտներէ շինուած շապիկ մ'ալ կը հագնին։ Վարտիքնին՝ ծովահորթու կամ՛ արագաւոր եղջերուի մորթէն է. վերի կողմը խորշ խորշ ու մարմնոյն բոլորտիքը կապուած։ Հողաթափներն ու կօշիկներն ալ նոյն նիւթերէ կը շինեն, միայն ներքանը՝

ծովածիրու մորթէն է․ կօշիկներին վերին կողմանէ չուանով ծնկան վրայ ամփոփելով կը կապեն, իսկ հողաթափներին՝ կաճեղներնուն վրայ:

Ծովու մէջ սովորական զգեստէն զատ՝ ոտեակ մը տառատակ ալ կը հագնին, որուն վերարկուն, վարտիքը, զանկապանները, հողաթափները մէկտեղ միացած ամբողջ մըն է: Այս տառատակը ծովաշան լերկ մորթէն շինուած է եւ այնպէս աղէկ կարուած՝ որ ջուրը չիկրնար թափանցել: Կուրծքին վրայ պզտիկ ծակ մը կայ, ուսկից՝ ջրոյն վրան կենալու համար որչափ որ հարկաւոր կը համարին նէ՝ կը փչեն, ետքէն ալ խցով մը կը գոցեն:

Էրիկ մարդիկ մազերնին կը կտրեն եւ շատ անգամ՝ առջեւի կողմը կ'ածիլեն ալ, որպէս զի գործելու ատեն իրենց նեղութիւն չպատճառէ: Բայց կնոջ մազերն ածիլելն անպատուութիւն է, ի բաց առեալ՝ սգոյ ու ամուսնութենէ հրաժարելու ատեն: Ասոնք մազերնին երկու բաժնելով՝ ապակւոյ կտորներով գլխոյն վերի կողմը կը ժողվեն ու կը հիւսեն: Աս ապակիէ ուլունքը Կրէնլանտացւոց ադամանդն է, ասոկից մանեակ, գինդ, ապարանջան կը շինեն, նաեւ զգեստնին ու հողաթափնին ալ զարդարելու կը գործածեն: Շատ հարուստները ճակատնին դերձանէ կամ մետաքսէ ժապաւէնով այնպէս մը կը պատեն, որ երկու կողման խոպոպիքը՝ որն որ իրենց ա-

ամէնէն մեծ զարդերն են ; չեն ծածկուիր ։ Վերին աստիճանի գեղեցկութեան բաղձացողները՝ պէտք է որ երեսներնուն վրայ ծխէ սեւցած դերձանով բանուածք մ'անցընեն, որն որ իրենց կզակին, այտին, ատից ու ձեռաց բոլորակը մորթին ու մսին մէջէն կ'անցուի ։ Երբ որ նոյնը մորթին տակէն կը հանուի, սեւ նշան մը թողուած կ'ըլլայ ։ Մարք շատ անգամ իրենց աղջիկներուն վրայ պզտիկուց սա գործողութիւնը կը կատարեն ։

Ձիւնէն ցոլացած սաստիկ լոյսը բարեխառնելու համար՝ տեսակ մը ճարտարագործ ակնոց կը գործածեն, զորն որ Ձեան ակունք կը կոչեն ։ Աս ակնոցը մէկ ամբողջ փայտէ բաղկացած է, եւ ներքին կողմը քթին ու աչաց դաշտը ցցուածն ամփոփելու համար՝ փորուած ։ Ըստ ամենայնի երկու աչաց վրայ՝ խոտորնակ եւ շատ նեղ, մէկ միատեսակ երկայնութեամբ ծակ մը կայ, ուսկից որ առարկաները դիւրաւ կը տեսնեն՝ առանց ձիւնէն անհանգստութիւն կրելու ։

Կրէնլանտացիք ամառը վրանաբնակ են, իսկ ձմեռուան համար տուն ունին ։ Աս տուներուն լայնութիւնը՝ երկու գրկաչափ, երկայնութիւնը՝ չորսէն մինչեւ տասուերկու գրկաչափ կ'ըլլայ . բարձրութիւննին ալ մարդու մը հասակին չափ ։ Նոյն տուները քանի մը ճամբորդներուն բանծին պէս՝ գետնէ տակ չեն շիներ, այլ բարձր տեղեր, եւ

գլխաւորաբար զառիվայր ժայռերու վրայ, որպէս զի ձիւնէն կամ բոլորովին եւ կամ քառ մասին ազատ ըլլան: Աւելի ծովուն մօտերը կը շինեն տները, որպէս զի գիւղին ըլլայ ձկնորսութիւնը՝ ուսկից որ կ'ապրին: Պատերին իրարու վրայ դիզուած քարերէ կը շինեն՝ գրկաչափ մը լայնութեամբ եւ հողով ու խոտով կը ծեփեն: Ասոր վրայ բնակու-թեան երկայնութեան համեմատ՝ գերան մը կ'երկընցընեն. Թէ որ գերանը կարճ ըլլայ, երեք չորս հատ իրարու հետ փակե-լով կը կապեն եւ տակէն ցցերով կը հաս-տատեն: Աս գերաններուն վրայ շեղ հե-ծաններ, անոնց մէջ ալ՝ նեղ ու երկայն տախտակներ կը դնեն: Անոնց վրայ թփե-րով ու հողակուշտերով ծածկելով վրան բարակ ու թեթեւ հող կը ցանեն: Քանի որ տաւած կ'ըլլայ՝ աս շէնքերը հաստատուն կը մնան. բայց ձեան հալելն ու ամառուան անձրեւները շէնքը կը խախտեն, եւ աշուն եկածին պէս՝ պատերն ու ծածկը պէտք կ'ըլլայ նորոգել: Տները ո՛չ դուռ ունին եւ ո՛չ ծխան. դրան տեղ՝ մէջտեղը երկու կամ երեք գրկաչափ լայն մուտք մը կը թողուն: Աս մուտքը հողէ ու քարէ շինուած կա-մար մըն է, որն որ տանը հովէն ու պաղէ ենթակայ ըլլալու՝ մէջի ապականած օդը մաքրելու կը ծառայէ, որովհետեւ անկիւ-նաչափի ձեւով կամ թմբկաձեւ կամար մըն է, որուն մուտքը տան առջեւէն հաւասար հեռաւոր կ'ըլլայ. կամարին ալ այնպէս ցած

է, որ եւ ոչ ներսի կողմանէ ծռելով կըր-նան ներս մտնել, այլ չորս թաթի վրայ գալով՝ կը մտնեն կ'ելլեն: Պատերը՝ վրան-ներն ու նաւերը ծածկելու գործածուած հին մորթերով կը ծածկեն, եւ ծովահորթի ոսկրներէ շինուած տեսակ մը գամով կը հաստատեն: Աս մորթերը խոնաւութենէ կը պահպանեն:

Տան մէջտեղէն մինչեւ կռնըկի պատը՝ գետնէն մէկ ոտնաչափ բարձր տախտակա-մած մը կայ: Նոյն տախտակամածը, յարկը բռնող ցցերուն վրայ լարուած մորթերով խորշ խորշ բաժնուած է, որոնք առանձինման սենեակներ կը կազմեն: Ամէն մէկ սենեկին մէջ մէյմէկ ընտանիք կը բնակին: Իւրա-քանչիւր տուն երկքէն մինչեւ տասն ըն-տանիք կ'ունենայ: Նոյն տախտակամածին վրայ մորթ ծածկելով՝ վրան կը քնանան: Հոն բոլոր օրը կը նստին, այրք՝ ոտքերնին տախտակամածէն վար կախած, իսկ կանայք՝ արեւելցոց պէս ոտքերնին ծնկուըներնուն տակն ամփոփելով: Ձկնորսութեան գոր-ծիքներն եւ ուրիշ կարասիքը բոլոր էրիկ մարդիկ կը շինեն. իսկ կանայք՝ կերակուր եփելու եւ կար կարելու կը զբաղին: Տան առջեւի կողմը երկու քառակուսի ոտնաչա-փի մեծութեամբ պատուհաններ կան. քա-վէքով կարուած ծովու ձկանց աղիքներն ապակւոյ տեղ կը ծառայեն: Նոյն աղիք-ներն այնպէս թափանցիկ եւ իրարու հետ այնպէս աղէկ կարուած են, որ լուսոյն

՛արգիլեք՝ չեն ըլլար եւ ներքը ոչ հով կը մտնէ եւ ոչ ալ ձիւն։ Պատուհաններուն տակ, ներքին կողմը, պատին երկայնութեանը տախտակամած մ'ալ կը գտնուի, ուր որ օտարականք կը նստին եւ կամ կը պառկին։

Իւրաքանչիւր գերդաստան իր յատուկ կրակարանն ունի․ բաժանումներն ընող ցցին առջեւը, գետնի վրայ, խաշոր գերան մը կը դետեղեն, անոր վրայ շիտակ քար մը, անոր վրայ ալ՝ մարմարէ կանթեղը կրող եռոտանի մը։ Կանթեղը մէկ տանաչափ լայնութիւն ունի եւ մանհկաձեւ շինուած է․ տափակ հաւկթաձեւ փայտի մը մէջ զետեղուած է, որուն մէջ կը ժողվէ կաթած եղը։ Իսկ կանթեղի պատրոյգը՝ տեռակ մը բարակ ու շատ աղէկ վառող մամուռ է։ Տունն ալ կանթեղով կը լուսաւորի ու կը տաքնայ։ Ամէն մէկ կանթեղին վրայ՝ մարմարէ կամ քարէ կաթսայ մը կախուած է չորս շուանով․ կանթեղին երկայնութիւնը մէկ տանաչափ է, իսկ լայնութիւնն՝ ութը մատ։ Իւրաքանչիւր ընտանիք իր կերակուրն անոր մէջ կ'եփէ։ Կանթեղին բոցը կը ծառայէ նաեւ լուացքն ու կօշիկները չորցնելու, զորոնք յարկէն կախուած վանդակի նման բանի մը վրայ կը տարածեն։ Աս կանթեղները՝ որոնք միշտ կը վառին, թէպէտ քիչ՝ բայց միակերպ տաքութիւն կը պատճառեն։ Սակայն նոյն կանթեղին, կաթսային մէջ եղած ձկան ու մսին, պատին վրայ տարածուած մորթերուն,

չորցընելու համար դրուած պղնձամաններուն ու կօշիկներուն տարօրինակ հոտն օտարականներուն շատ անախորժ են ։

. Ցնէն դուրս մնացած մ՚ունին, որուն մէջ իրենց օրուան կերակուրները կը պահեն . իսկ բուն մեծ պաշարնին՝ ձեան տակ կը պահուի ։ Ցան մծուները կը տեսնուի ցցի մը կապուած նաւակնին, որուն քով կը գտնուին իրենց շէնքերն ու ձկնորսութեան գործիքները ։ Սեպտեմբեր ամսէն սկսեալ մինչեւ Ապրիլ կամ Մայիս ամիսն աս բնակարաններին մէջ կը կենան . եւ երբոր նոյն տանիքները ձիւնը հալելով՝ տան կործանելուն վտանգ կ'ըլլայ, բնակիչք կը ակոսին վրաններու տակ բնակիլ ։

Իսկ ամառուան բնակարաններին այսպէս կ'ըլլան ։ Նախ գետինը շրջանակ քարերով ու երկայն քարակուռ ձեւով տաղաւարակ մը կը շինեն ։ Աս քարերուն մէջ տասնէն մինչեւ քառասուն երկայն ցցեր կը զամեն, որոնք՝ մարդու հասակի բարձրութեան հասած ատեն՝ կը միացընեն շրջանակի մը հետ եւ ամպհովանի մը կը ձեւացընեն, որուն գագաթը բուրգի ձեւով կ'ըլլայ ։ Ասոր վրայ ծովահորթու կրկին մորթ կ'անցընեն . իսկ հարուստներն իրենց վրանին ներքին կողմն ալ տարագոյն եղջերուի մորթով կը պատեն, որն որ զարդի տեղ ալ կը ծառայէ ։ Դրան մորթ՚ը մինչեւ գետին կը հասնի . եւ որպէս զի հովը չկարենայ վրանը վեր առնել, նոյն մորթերուն ծայրերը

մնմնալով ու ծանր քարերով գետնի վրայ կը հաստատեն ։ Իսկ դրան տեղ մուտքին առջին՝ վարագոյր մը կը կախեն ։ Այս վարագոյրը բարակ ու թափանցիկ աղիքներէ շինուած եւ շատ աղէկ կարուած է . եւ ճերմակ կաշիէ օղակներով կը կախուի ։ Նոյնը՝ թէ՛ ներսը լուսաւոր կը պահէ եւ թէ՛ օդէն կը պաշտպանէ ։ Վարագուրէն ներս մտնելուն պէս՝ գաւիթ մը կ՚ըլլայ, որուն մէջ ուտելիքները կը պահուին ։ Կերակուրը վրանին մէջ չեն եփեր, այլ դուրսը, բաց օդը, պղնձէ կաթսաներու մէջ եւ փայտով ։

Իւրաքանչիւր վրանի մէջ հասարակօրէն միայն մէկ ընտանիք կը բնակի . բայց երբեմն քիչ մը մեծկակ եղողներուն մէջ շատ աղքատ ըլլալէն կամ ազգականութեան պատճառաւ՝ երկու ընտանիք ալ կը բնակին . այնպէս որ վրան մը մինչեւ քսան հոգի կրնայ ընդունիլ ։ Պառկելու տեղերը ձմեռուան բնակարանին մէջ եղածներուն շատ կը նմանին . միայն թէ վրանին մէջինները շատ աւելի աղէկ ու մաքուր են ։

Իսկզբան Կրէնլանտացիք նետով ու աղեղով որսի կ՚երթային . բայց երբ որ Եւրոպացիք սկսան իրենց հրացան ծախել, ալ իրենց հին զէնքերուն համարումն ինկաւ ։ Ձկնորսութեան համար փայտի կտորներէ ու կիտի աղրայէ շինած երկժանի կը գործածեն ։ Անոր ճոթն եղած երկաթէ ոսկրը ձկան մարմինը մտնելէն ետքը կոթէն

կրնայ բաժնուիլ. բայց նոյն ոլորքը կազմած
է չուանով մը՝ որուն մէկալ ծայրը ձկնորսին
նաւակին մէջն է եւ նոյն ծայրին օղով լե-
ցուն փամփուշտ մ'ալ կայ ։ Այս փամ-
փուշտը ջրոյն վրայ լողալով՝ կը ցուցընէ որ
վերաւորուած անասունը ջրին տակ որ կողմը
կը փախչի ։ Ձկնորսները հասարակօրէն ե-
րեքժանուոյ նման ուրիշ մեծ նիզակ մ'ունին,
որուն կոթն ալ ոլորքէն կրնայ բաժնուիլ.
անկէ զատ նաեւ փոքր նիզակ մ'ալ ունին,
որուն ճոթը երկայն սրոյ ծայր մը կայ ։

Հիմայ Արէնլանտացւոց ձկնորսութեան
գործածած նաւակին անցնինք ։ Ումիաք կո-
չուած մեծ նաւերը՝ քառասուն ոտնաչափ
երկայնութիւն, չորս հինգ ոտնաչափ լայ-
նութիւն, երեք ոտնաչափ ալ խորութիւն
ունին, երկու ճոթերնին՝ սրածայր է, իսկ
յատակը՝ շիտակ ։ Այս յատակին երեք տախտա-
կէ կը բաղկանայ, որոնք նաւուն ծայրերն ի-
րարու հետ կը միանան ։ Նոյն երեք տախտակ-
ները տեղ տեղ գերաններով հաստատուած
են . երկու կողման տախտակներուն վրայ ալ
կարճ ցցեր հաստատուած են, որոնց վրայ
նաւուն ծնօտները շինուած են ։ Այս ծնօտնե-
րը հաստատուած են երկու տախտակներով.
որոնք նաւին երկու ծայրին իրարու միացող
երեք տախտակին հետ կը միանան ։ Այս
հինգ գլխաւոր կտորներուն վրայ կիսափ մօ-
րուքներէ շինուած երեք մատնաչափ լայնու-
թեամբ բարակ տախտակներ հաստատուած
են . եւ ամէն տախտակները, թէ՛ ներքուստ

ու թէ արտաքուստ, ծովահորթի մաքուր մորթով ծածկուած են։ Բայց երկաթէ գամի տեղ, որն որ ժանգոտելով՝ մորթերը կընար ծակել, փայտէ սեպ ու կիտի փոկ կը գործածեն։

Կրէնլանտացիք այս նաւը մեծ յաջողութեամբ, առանց գործեաց, առանց կանոնի կամ կարկնի շուտով կը շինեն։ Իրենց ունեցած գործիքները՝ բոլոր բոլոր են, սղոց մը, քանդակագործի մը՝ որուն կոթ անցուած ասեղն՝ կացնի տեղ ալ կը ծառայէ, գչիր ու սրածայր կորոց՝ մը։ Երբոր նաւ շինողը՝ ատաղձագործի գործքերը՝ կը լմընցընէ, իր կինը նոյնը նոր ու կակուղ մորթերով կը պատէ, իսկ ծակերը՝ երկայն ատենէ մնացած ու ծըթուած ճարպով կը գոցէ։ Եւ այսպէս այս նաւերը՝ ամբողջ փայտէ շինուած նաւերէն՝ նուազ ջուր կ'առնեն, վասն զի բոլոր ծակերը կ'ուռին ու կը գոցուին։ Թէ որ ժայռի մը հանդիպելով՝ ծակ մը բացուելու ըլլայ, շուտ մը կը գոցեն։ Բաց անկէ՝ նաեւ ամէն տարի ալ նաւը կը նորոգեն։ Այս նաւերուն թիավարները կանայք են, հասարակօրէն չորս հոգի, իսկ հինգերորդ մը ետեւի կողմը նստելով՝ թիակով մը կը ղեկավարէ։ Թէ որ յայտնի վտանգ մը վրայ չհասնի՝ երիկ մարդիկ երբեք չեն թիավարեր։

Թիակները կարճ ու լայն են եւ փոկով մը նաւին երկու կողմերը հաստատուած։ Նաւուն առաջքը կայմի պէս դերան մը

կայ, տասը վրայ աղիքներէ քամէքով կարուած տաւաղասա կը բանան, որուն բարձրութիւնը՝ մէկ, իսկ լայնութիւնը՝ մէկուկէս գրկաչափ է։ Միայն հովը նաւուն ետեւէն փչած ատեն՝ տաւաղասա կը գործածեն, որով Եւրոպայի նաւակի մը չեն կրնար հասնիլ. մինչ հակառակ, հովը հակառակ կամ խաղաղ եղած ատեն՝ թիակներով Եւրոպացւոցմէ շուտ կը նաւեն։ Առնաւերով՝ մէկ նաւահանգստէ մէկային երթալով, երբեմն տասը մինչեւ քսան հոգի, վրաններով, կահուք կարասեօք եւ ուտելիքներով, ծովեզրէն՝ մինչեւ երեք չորս հարիւր մղոն ճանապարհութիւն կ'ընեն։ Այս ճանապարհութեան ատեն՝ օրը տասնուերկու մղոն կ'երթան։ Գիշերները նաւէն կ'ելլեն, վրանները կը կանգնեն. իսկ նաւը ցամաք քաշելով՝ մէջը ծանր քարեր կը դնեն որ հովը չտանի։ Թէ որ նոյն տեղը նաւը կեցընելու անյարմար ըլլայ, վեց կամ ութը հոգի գլուխներնուն վրայ առնելով՝ աւելի յարմար տեղ կը տանին։

Քոյաք կոչուած պզտիկ նաւակները՝ տասն՚ ութը ոտնաչափ երկայնութիւն ունին, երկու ծայրերնին սրածայր, որով ատայնանկի կկոցի կը նմանին. մէկ ոտնաչափ խորութիւն եւ առ առաւելն մէկուկէս ոտ լայնութիւն ունին։ Նաւակին կողը՝ երկայն բարակ տախտակներէ շինուած է, որոնք շրջանակներով պատած ու կէտի ոսկրով կամ անասնոց ներքիններով հաստատուած

են ։ Բոլոր նաւակը մորթէ պարկի մէջ դրուածի պէս՝ թէ՛ ներսէն թէ՛ դրսէն մորթով պատած է ։ Նաւակին թէ՛ յառաջքը եւ թէ՛ խելքը կէտի ոսկրներով ամրացած է, որպէս զի քարի կամ ժայռի զարնուած ատեն՝ չճեղքի ։ Նաւակին մէջտեղը՝ փայտէ կամ կէտի ոսկրէ շրջանակով ծակ մը կայ ։ Ձկնորսը մորթով ծածկուած տախտակի մը վրայ նստելով՝ ծնկուըները նոյն ծակէն ներս կը խոթէ ։ Յետքէն իր ձկնորսութեան զգեստովը կամ անոր հետ միացուցած ուրիշ մորթով մը նոյն ծակին այնպէս ամրախից կը գոցէ, որ ջուրը չկրնար ներս մտնել ։ Իսկ իւր երեսներն եւ ուսերը զգուշութեամբ գոցած՝ ինչ օդ որ ըլլայ նէ՝ ըլլայ, ձիւն, հով, մրրիկ՝ չխնայիր, ծովու մէջէն կ՚երթայ ։ Նիզակը նաւակին քովը կը կենայ՝ փոկով մը կապուած, դիմացը՝ մասնաւոր պատրաստուած անուի մը վրայ պատած չուանն ալ պատրաստ է, իսկ չուանին ծայրի փամփուշտն ալ՝ ետեւի կողմն է ։ Իր նաւակը կառավարելու եւ յառաջ տանելու համար՝ տասը ոտնաչափ երկայնութեամբ, երկու ծայրն ալ տափակ ու լայն, մէկ հատիկ թիակ մ՚ունի, որուն ճոթերը հասարակօրէն կէտի ոսկրէ փղյելուչ ղարդերով զարդարուած է ։ Թիակն երկու ձեռքով բռնելով եւ կանոնաւոր ու միօրինակ շարժմամբ մը փոփոխակի երկու կողմն ալ գործածելով, զարմանալի յաջողակութեամբ ու երագութեամբ ջուրը

ուստակը հանգնելու հասակին կը հասնի, այսինքն՝ երբոր իր բոլոր կենաց մէջ գործածելու արուեստին համար բաւական զօրութիւն, համարձակութիւն ու յաջողակութիւն կը ստանայ, նախ ծովահորթու որսի կ'երթայ, որն որ երեք եղանակաւ կ'ըլլայ, կամ առանձին նաւակի մէջ, կամ մեծ նաւով ընկերութեամբ, կամ ձմեռը սառուցի վրայ: Առաջին տեսակն ամենէն աղէկ ու ամենէն հասարակ եղանակն է: Իր կահ կպրանիքով նաւող ձկնորս մը՝ ծովու հորթ մը տեսածին պէս, կը ջանայ որ անասնոյն՝ հովէն ու արեւէն դէմ գտնուած ատենը, որ առեն առջեւէն զինքը վիրաւորելու համար եկող մարդը չ'իմանար, յանկարծ վրան հասնի: Ձկնորսը մեծ ալիքի մ'ետեւ պահուըտելով, վիրաւորելու համար՝ երկժանին, չուանն ու փամփուշտը պատրաստ բռնած՝ մինչեւ հինգ վեց քրկաչափ՝ անասնոյն կը մօտենայ: Թիակը ձախ, իսկ երկժանին կռթէն՝ աջ ձեռքը կ'առնէ: Թէ որ երկժանին նպատակին աղէկ հասնելով՝ անասնոյն փորը կը մըխուի, ան ատեն բունն ելլելով՝ ծովին երեսը կը լողայ: Հարուածը տրուածին պէս, ձկնորսն՝ աւարին ծովուն տակ մնացած կողմը փամփուշտն ալ կը նետէ: Եթէ երկժանւոյն բունը ծովուն երեսէն կ'առնէ, նաւակին մէջ կը դնէ: Անասունը փամփուշտը քաշելով՝ երբեմն ջրոյն տակն ալ կը տանի. բայց շատ դժուարութեամբ

սատկեցընեն ։ Անասունը ջրոյն վրայ երեւ-
ցածին պէս՝ բոլոր որսորդներն աղաղակ-
ներով վրան կը թափին. ծովահորթը նա-
բէն կը սուզանի. մորթին եւսեւէն երթալով
կը բացուին, մատղրութիւննին միշտ ան
տեղը դարձընելով, ուսկից որ կը կարծեն
թէ անասունը դուրս պիտի ելլէ, որն որ
գրեթէ մղոն մը հեռուն կը հանդիպի ։
Երբոր զարհուրած անասունը երկրի վրայ
երթալ ապաստանիլ կ'ուզէ, ան տեղը
կեցող կանայք ու տղայք գլխուն քար ու
գաւազան կը նետեն, իսկ եռսեւի կողմանէ
այրք նիզակով կը խոցեն ։ Աս որսորդութիւ-
նը՝ Կրէնլանտացւոց շատ հաճոյ ու զուար-
ճացուցիչ է, վասն զի երբեմն ամէն մէկը
մինչեւ տասը ծովահորթ կը բռնէ ։

Աս կերպ որսը՝ գլխաւորապէս աշնան
կ'ըլլայ. իսկ ձմեռը՝ սառոյցներու վրայ կ'որ-
սան ։ Որովհետեւ ծովահորթը ձմեռը շունչ
առնելու համար սառոյցները կը կոտրէ ու
կը ծակէ, Կրէնլանտացի մը կու գայ ծակին
քով պզտիկ աթոռի վրայ կը նստի, ոտքն
ալ ուրիշ աթոռի մը վրայ դնելով՝ որ
պաղ չառնէ ։ Անասունը քիթը դուրս
հանելուն պէս՝ երկժանուով մը կը զարնէ կը
վիրաւորէ ։ Շուտով մ'ալ քովի սառոյց-
ները կոտրելով՝ կենդանին ճանկով դուրս
կը քաշէ եւ շատ հարուածներով կը սատ-
կեցընէ ։ Երբեմն մարդ մը տեսակ մը բալ-
խրի վրայ՝ մեծ ծակին քով երեսի վրայ կը
պառկի, որ ծակէն որ անասունին ոտքեւէն

ւելի կլոր, ոմանցը աւելի երկայն ու նիհար կ'ըլլայ: Կնճիթներուն տակ մօրուք ունի, քանի մը մազ ալ քթին քովերը եւ քանի մը հատ ալ՝ ընկուզի պէս՝ աչուըններուն վրայ: Աչուըները մեծ, խորունկ ու պայծառ են: Զանազան գոյներով ծամահորթ-կայ. շատերը վագեր պէս խայտաբղէտ կ'ըլլան, ոմանք ճերմակ պիսակներով՝ սեւ, ոմանք ալ դեղին կամ գորշ կամ կարմիր: Ակռանին շան ակռաներու պէս սուր, եւ անոնցմէ աւելի զօրաւոր են, որով թեւի հաստութեամբ գաւազան մը կրնան կտրել. մազիկնին՝ երկայն, սեւ ու սրածայր, իսկ պոչերնին՝ կարճ է: Շան կերկերեալ ձայնին պէս կը հաչեն. իսկ ձագերուն ձայնը՝ կատուի մլաւելուն նման է: Աս անասունը թէպէտ երկակենցաղի տեսակ է, բայց ծովուն մէջ կը կենայ եւ ձուկ կ'ուտէ: Միայն քնանալու համար ցամաք կամ սառուցի վրայ կ'ելլէ. արեւու մէջ այնպէս խորունկ կը քնանայ ու կը խորդայ՝ որ մէկէն բռնելը դիւրին է: Առջեւի տոտքներովը քալելով եւ ետեւիններով ցատքելով՝ հաշմ ընթացքով մը այնպէս կը վազէ, որ մարդ հազիւ կրնայ ետեւէն հասնիլ: Սովորական երկայնութիւնը՝ 5—8 ոտնաչափի մէջ է: Մարմնոյն մէջտեղը հաստ է, իսկ երկու ծայրերը կոնաձեւ կը վերջանան, որով շատ դիւրաւ կրնայ լողալ:

Աս է Արենլանտացւոյ մը բոլոր կենաց մէջ որոնած անասունը, որով իր ամէն

կարօտութիւնները կը լեցընէ ։ Միսն ուտելու կը գործածէ, ճարպը՝ լուսաւորուելու, մորթը՝ հագնելու, վրան շինելու եւ նաւերը պատելու ։ Արեւելեանացին տղայութենէ սրտոտութեան կը վարժի, որն որ իր կենաց գլխաւոր զբաղումն ու մեծագոյն զուարճութիւնը կ'ըլլայ ։ Տղայ մը ձեռքն ու ոտքը գործածելու սկսածին պէս՝ հայրը ձեռքը նետ ու աղեղ մը կու տայ, որ նպատակին նշան առնէ. ծովու քով արընկուած նպատակի մը քարով զարնել կը սորվեցընէ. իրեն գաւակ մը կը պարգեւէ, որն որ զուարճութեան կը ծառայէ ։ Տասը տարուան եղած ատեն՝ իրեն նաւակ մը կը հոգայ, որուն մէջ աղուն թիավարելու, որսոյ ու ձկնորսութեան եւ վերջապէս ծովու աշխատութիւններն ու վտանգները փորձելու կը զբաղի ։ Իսկ տասնուհինգ կամ տասնուվեց տարուան եղած ատեն՝ հօրը հետ ծովահորթ որսալու կ'երթայ ։ Բռնած առաջին հրէշը, իր բոլոր ընտանեաց ու դրացիներուն կոչունք տալու կը գործածուի ։ Արեւելեանացի մը քսան տարուան եղած ատեն՝ իր նաւակն ու կահ կարասիքը կը շինէ ։ Անկէ ետքը ամուսնանալու ալ չ'ուշանար. բայց հասարակօրէն ծնողաց քովը կը կենայ, եւ անտեսութեան վերին կառավարութիւնը մայրը կ'ընէ ։

Իսկ աղջիկները մինչեւ որ տասնուհինգ տարուան ըլլան. եթէ ջուր քաշելու չեն զբաղիր նէ, շատախօսութենէ, երգելէն ու

կաքաւելէն զատ բան չեն ըներ։ Ցանոու-հինգ տարուան կ'ըլլան նէ՝ պէտք է որ տղայք հոգան, կերակուր եփեն, մորթերը պատրաստեն. եւ քանի որ հասակնին կ'առնեն՝ նաւի մէջ թիավարել ու ասուն շինել ալ պիտի գիտնան։

Էրիկ մարդիկ ծովու վրայ որսի ու ձկնորսութեան կ'երթան. ցամաքը ելլելէն ետքը ալ ամենուն բանի մը ձեռք չեն զարներ. ապահած անասուններին ցամաքը քաշելն իսկ իրենց արժանաւորութենէն վար կը համարին։ Մնացած բաները բոլոր կանանցը կ'ընեն, մասնաւորութենէ սկսեալ՝ մինչեւ կօշկակարութիւն։ Ասոնք բոլոր իրենց գործքերուն համար՝ մահկաձեւ դանակէ, փայլեցընելու ոսկրէ կամ փղոսկրէ, մատնոցէ ու երկու երեք ասեղէ զատ բան չունին։ Տուն շինելու ատեն՝ արհեստաւորութեան բոլոր գործքերը կանանց է, իսկ առաջնորդութիւնը՝ այրանց։ Ծանր քարերն ուսերնին շալկած՝ կիներուն իրենց առջեւէն անցնիլը այրք անտարբերութեամբ մը կը տեսնեն։ Բայց ասոր փոխարէն՝ իրենց ամէն վաստըկածին կամ բռնածին տէրութիւնը կանանց կը թողուն, միայն կետի եղը դուրս հանելով, զորն որ այրք անձամբ կը ծախեն։ Երբոր տան մէջ պաշարնին լմըննալով՝ ուտելու բան չըլլայ նէ, այր եւ կին միաբան կը համբերեն եւ միատեղ ալ կը մեռնին։ Միայն իրենց տղոց վիշտը զիրենք անհնարին կը նեղէ։ Ընտանիք մը որդի չունեցած ա-

ընտանիքները մէկտեղ կը բնակին, մէկ տանե-
րուն մէջ բնակող մի եւ նոյն արենէ յա-
ռաջ եկած մարդիկներուն մէջ չգտնուած
միաբանութիւնն ու խաղաղութիւնը կը տի-
րէ։ Իրենց սրտէն՝ ուրիշներուն ալ այնպէս
սիրով ու փութով պարգեւ կու տան, որ
ոչ ոք խնդրելու կը համարձակի. եւ այս
աղքատ երկրին մէջ հիւրընկալութիւնը՝
մուրացէն յառաջ կը կանխէ։

Արենդլանտացւոց վաճառականութիւնը
շատ պարզ է եւ կը կայանայ իրենց աւե-
լորդ եղածը՝ պակասածին հետ փոխելու մէջ։
Բայց իրերուն գինը չգիտնալով՝ տղայոց պէս
բան քանց կը վարուին։ Ամէն նոր տեսած
բաներնին ձեռք բերել ուզելով՝ քանի փո-
խանակութիւն կ'ընեն, եւ ամէն մէկ տուր-
եւառի մէջ կը կորսնցընեն, ձեռուընին
գործածած գործիքնին՝ անօգտի բանի մը հետ
փոխելով եւ իրենց համար եղածը՝ հարկա-
ւորին տեղ տալով։ Իրենց տարեւորը
տեսակ մը վաճառատեղւոյ մէջ՝ կ'ըլլայ,
ուր որ որոշեալ ժամանակ մը բոլոր ազգը
կը ժողվի. այս ժամանակն ամէն տարի
ձմերուան մէջ է։ Արենդլանտացիք այս վա-
ճառատեղը՝ պանդխտութեան մը պէս կ'եր-
թան. վաճառքնին դուրս կը հանեն, եւ ա-
նոր տեղն առնել ուզածնին կը պահանջեն։
Հարաւային բնակիչները՝ կէտ չունին, իսկ
հիւսիսայինները՝ փայտ։ Արենդլանտի հա-
րաւային ու նաեւ արեւելեան եզերքէն նա-
ւերով կ'ելլեն եւ երեք չորս հարիւր մղոն

# ԳԼՈՒԽ ԻԲ.

Դարձ։ Խոստովանութիւն կեղծին։

ԹԷՊԷՏ ալ երկիրն աւելի եւս դիտելը մեր բարեկամաց շատ ցանկալի էր, բայց իրենք անհամբերութեամբ կը բաղձային իրենց հայրենիքը հասնիլ։ Արդէն նոյն կողմերն եկող նաւերուն կեցած տեղերէն շատերուն գացած էին. մէյ մ'ալ վերջապէս Ֆէրուէլի գլուխը մօտենալով, որն որ Գրէնլանտայի հարաւային կողմն է, նաւ մը տեսան։ Ընթացքնին դէպ ի անոր ուղղեցին, եւ մօտենալով՝ տեսան որ կիտորսութեան համար նոյն կողմերն եկած Ռուսի նաւ մըն էր, որն որ արդէն Նորուեգիայի կողմերը պտըտած ըլլալով՝ Արխանկէլ դառնալու վրայ էր։

Նաւապետը մակոյկ մը խրկեց աղաչելով որ իր երեք Ռուս բարեկամներն ընդունի։ Ռուս նաւապետն իսկզբան այն երեք ճամբորդներուն անունն իմանալ ուզեց. եւ երբոր իմացաւ ու գլուխնին եկածը լսեց, ուրախութեամբ խնդիրը կատարեց, վասն զի երիտասարդներուն ազգական էր, եւ արդէն Արխանկէլ լսած էր որ նաւուղղին հետ անգղիացի նաւով մը Շբիցպերկ գացած եւ հոն նաւաբեկութեան հանդիպելով՝ դժբախտ կեանք մը կ'անցընեն, եթէ մեռած ալ չեն նէ։ Ինքն ալ անձամբ կղզիներուն մէջ զիրենք փնտռած էր. բայց յաջող ելք մը չէր ունեցած։

Երկք բարեկամաց՝ նաւապետէն ու նաւաստիներէն բաժնուիլը՝ խիստ սրտաշարժ եղաւ ։ Մասնաւորապէս նաւապետին կրկին կրկին շնորհակալ ըլլալով, խոստացան որ զինքն երբեք չմոռնան ։ Ուստի նաւ մտածնուն պէս՝ Ալէքսի ու Իվան սկսան իրենց հօրը վրայ նաւապետին բիւր հարցումներ ընել ․ նաւուղիղն ալ ՚իր ամուսնոյն ու որդւոց վրայ տեղեկութիւն կը խնդրէր ։ Նաւապետն իմացուց թէ Անգղիայէն Հնդոյ նաւապետին՝ Օգարովին ու նաւուղղին կնոջը գրած գրերը իրենց մեծ ուրախութիւն պատճառած էին ․ բոլոր Արխանկելի մէջ հռչակուեցաւ որ Շբիցպերկի վրայ հայրենակիցներ կան ․ եւ շատ նաւավարներ խոստացան որ կ՚երթան զիրենք կը գտնեն ու հայրենիքնին կը բերեն ։

Քանի որ իրենց հայրենեաց կը մօտենային, այնչափ ալ իւրաքանչիւրին սրտին մէջ իրենները տեսնելու բաղձանքն աւելի կը սաստկանար ։ Բայց ճամբորդութիւնն իրենց բաղձացածին պէս շուտով չեղաւ ։ Նաւը շատ անգամ հակառակ հովերու հանդիպելով՝ ստիպուեցաւ Իսլանտայի մէկ նաւահանգիստը մտնել, որպէս զի յաջող հովի սպասէ եւ միանգամայն նաւին կրած քանի մը վնասները նորոգէ ։ Մեր ճամբորդները նոյն միջոցին ատեն ունեցան այն տեղերը պտըտելու եւ թէ՛ երկրին թէ՛ բնակչաց վրայ տեղեկութիւններ առնելու ։

Աս կղզին պէտք է՝ իբրեւ խորաջներով

լեցուն ընդարձակ լեռ մը մնացել, որն որ ծոցը խիստ շատ հանքեր, ու ապակի դարձած եւ նաւթային նիւթեր կը պահէ։ Իր մակերեւոյթը՝ մշտնջենաւոր ձիւնով ու սառուցով լեցուն ճերմակ լերանց գագաթներ կը ներկայացընէ. աւելի վար՝ խառնակութեան ու աւերակներու տեսիլ մը կ՚ընծայէ աչքին։ Ամէն կողմ՝ ահագին քարերու կոտրտած ու սրածայր կտորներ կը տեսնուին, որոնք երբեմն ծակոտ ու կէս մը կրացած են, երբեմն ալ վրանին սեւ ու այրածի նշան ունին։ Ծայրերուն ճեղքերը՝ կարմիր, սեւ ու ճերմակ աւազով լեցուն են։ Բայց լեռներուն ձեւացուցած ձորերուն մէջ ընդարձակ ու զուարճալի դաշտեր ալ կը գտնուին. ուր բնութիւնը՝ որն որ իր պատճառաւ աղէտքները միշտ քաղցրութեամբ մը կը բարեխառնէ, հոն գտնուող մարդկան բնակելու ապաստանարան մը տուած է եւ իրենց հօտերուն համար առատ ու շատ փափուկ ճարակ կը մատակարարէ։

Աս կղզւոյն օդաբաժինը՝ գրեթէ Սուետիայի ու Դանիայի օդաբաժինն է։ Ռէգիավիք մայրաքաղաքը՝ որն որ եօթը հարիւր բնակիչ ունի, ամառը դանիացի վաճառականներ շատ կու գան։ Անկէ զատ կղզւոյն մէջ տեղին տեղին քիչ մը մշակութեան ընդունակ տեղերը՝ տներ, կամ աւելի աղէկ ըսելու համար՝ իրարմէ հեռու գետնի տակ ամփոփացած խուղեր կը գտնուին։

Աս վայրենի ու ժայռերով պատած

տեղը՝ մարդը զարմացմամբ լեցընող է գըլխաւորաբար եղեւնին ու կաղնին հակառակութիւնն ու միաբանութիւնը, ամէն կողմ երկիրը ծածկող սառոյցներին ու անկից միօրինակ դուրս բխող բորբոքեալ նիւթերը։ Երկրագնդոյս ուրիշ ամենեւին մէկ կողմը չխառնուիր մի եւ նոյն երկրին մէջ՝ այնչափ բացարձակ խառնուրդներ, այնչափ եռացեալ ջրոյ աղբիւրներ, այնչափ լաւայի հոսանք։ Հեքլայէն, Վէզգերէն, Եղբէլէն, Տրանկայէն եւ ուրիշ ձիւնով ծածկուած լեռներէն զատ՝ Իսլանտայի մէջ ուրիշ տառուցի պզտիկ բլրակներ ալ կը գտնուին, որոնք միշտ իրենց ձեւն ու բարձրութիւնը կը փոխեն։ Հեքլա լեռը՝ որն որ աշխարհքիս երեւելի հրաբուխներուն մէկը կը համարուի, հիմնակուած ատենս Իսլանտայի նաւաց ձոստակար հրաբուխներէն մէկն է Ասիա ԺԴ. դարուն մէջ զարհուրելի ձայներ հանեց. բայց անկէ ետքը հրաշնչութիւնն երթալով քիչցաւ։ Նոյն լերան այցելութիւն ընող ամէն ճամբորդները կը յիշատակեն որ հրաբուխն իր բոլորտիքը լաւայէ 40—70 ոտնաչափ բլրէ պատուար մը շինած է. մէյ մը ալ պատուարին դժուարութեան յաղթելէն ետքը՝ մնացած ճամբան դիւրին է։ Իր բոլորտիքը երկու մղոն հեռաւորութեամբ՝ ոչ խոտ կը գտնուի եւ ոչ տունկ. գետինը հալած քարերու գետակով լեցուն է, ամէն կողմ չէչաքար ու մոխիր կը տեսնուի։ Հեքլայի գագաթը երեք ճիւղ բաժնուած է.

որոնց միջինն՝ ամէնէն բարձրն է․ ծովու երեսէն բարձրութիւնը 4—5 հազար ոտնաչափ է։ Իր գագաթէն երբեմն երբեմն ծխոյ միրիկ մը կ'ելլէ․ երբեմն ալ կողմերը եռացեալ ջրով լեցուն փոսեր կը տեսնուին։

Իսլանտիայի մէջ տաք ջրոյ շատ աղբիւրներ կը գտնուին, որոնք երեք կարգ կըրնան բաժնուիլ։ Ոմանք միջին բարեխառնութիւն մ'ունին, որն որ իրենց տաք տեղերէն անցնելէն կը պատճառի․ ոմանք քիչ կամ շատ մեծ աւազանով աղբիւր ունին, որուն մէջ ջուրն այնպէս կ'եռայ՝ իբր թէ մեծ կրակի մը վրայ ըլլար։ Վերջապէս ոմանք ալ սաստիկ եռալով՝ ջրերնին վեր կը ցայտեցընեն, ոմանք շարունակ եւ առանց կարգի, ոմանք ալ՝ ժամանակ ժամանակ եւ հաստատուն կարգով մը։ Հիւսիսային կողմերը աս վերջին տեսակէն՝ երեք հատ տաք ջրոյ աղբիւրներ կան։ Ասոնք իրարմէ երեսնական կանգուն հեռու են․ ամենուն ջուրն ալ կ'եռայ եւ փոփոխակի վեր կը ցայտէ։ Աս երեք աղբիւրներուն միայն շարժման մշտնջենաւորութիւնն ու կանոնաւորութիւնը չէ որ զմարդ կը զարմացընէ, այլ իրենց յառաջ բերած արդիւնքը։ Թէ որ մարդ մեծ աղբիւրէն՝ շիշի մը մէջ ջուր լեցընէ, նոյն ջուրը մէկ երկու անգամ շիշէն դուրս կ'ելլէ, բայց ամենայնի՝ նոյն ատեն՝ որ ատեն որ աղբիւրն ալ ջուր կը ցայտեցընէ, եւ աս երեւոյթը կը պատահի՝ մինչեւ որ շիշին ջրոյն եռալը դադրի։ Երկու երեք

անդամ եռալէն ետքը՝ կը հանդարտի ու կը պաղի։ Շիշը լեցուելէն ետքը խցուելու որ ըլլայ, առաջին անգամ ջրին ցայտելուն ատենը՝ շառաչմամբ շիշը կտոր կտոր կ'ընէ։ Երբ որ մէկը մեծ աղբեր մէջը որպիոն ծանրութեամբ եւ խցէ բան մը նետէ, նետուածն անմիջապէս տակը կ'երթայ. բայց ջուր ցայտեցուցած ատեն՝ նետուածն ալ քանի մը քայլ հեռու կ'արձակուի։

Այս ամենայն տեսնելէն ու զարմանալէն եւ երկայն ճամբորդութիւն մ'ընելէն ետեւ վերջապէս մեր բարեկամներն իրենց ծննդեան քաղքին աշտարակները տեսան։ Ո՛հ, սրտերնին ինչպէս ուրախութենէն կը զարնէր։ Նաւին՝ Արխանկելի նաւահանգիստը մտած ատեն՝ ծնկան վրայ եկան եւ եռանդեամբ Աստուծոյ շնորհակալ եղան։

Օզարովին ու նաւուղղին կնոջը մանուկոր մարդիկներ խաւրուեցան, որպէս զի անոնց իմացընեն թէ երկայն ատենէ վեր կորսուած ու մեռած կարծածնին՝ դեկենդանի են եւ քիչ մը վերջը իրենց տունը կը հասնին։ Կ'ուզէին զիրենք աս եղանակաւ կամաց կամաց պատրաստել, որպէս զի յանկարծ ուրախութենէն դժբախտ դէպք մը չպատահի։ Քիչ մը վերջը նորէն լուր առին թէ երեք բարեկամները բերող նաւն արդէն նաւահանգիստը հասած է։ Օզարով կ'ուզէր իր որդւոյն ու եղբօրորդւոյն դիմացը վազել, նոյնպէս նաւուղղին կինն ալ՝ իր ամուսնոյն. բայց երթալու

տանիներին՝ Ալեքսի ու Իվան արդէն Օղա-
րովին բաղկաց մէջն էին, իսկ Նաւուղիղն իր ամուսինն ու որդիքը կը գրկէր ։ Իրենց բերնէն խօսք չէին կրնար հանել, եւ զգացածնին՝ միայն արցունքով կը յայտնէին ։

Գլուխնին եկած ամէն դէպքերը պատմած ՝տանիներին՝ մեր ճամբորդները միշտ Աստուծոյ իրենց ցուցուցած զարմանալի բարութիւնն ալ ունկնդրաց առջեւը կը դնէին, միշտ կրկնելով թէ Աստուած՝ իրեն վստահ եղողները երբեք չիթողուր ։ Իվան ու Ալեքսի ամէն առթի մէջ տղոց կը յանձնէին որ իրենց ծնողաց հնազանդ ըլլան եւ ամենեւին անոնց կամացը դէմ բան մը չընեն ։ Կը ցուցընէին անոնց թէ իրենց գլուխն եկած բոլոր դժբախտութիւններն իրենց հօրն անհնազանդ գտնուելուն հետեւութիւններն են, եւ թէ նոյն հօր թափած արտասուաց ամէն մէկ կաթիլը՝ ծանրութեամբ իրենց վրայ ինկան ։

Ամէն մարդ անոնց պատմութենէն շինութիւն կ՚առնէր ։ Կը յուսանք որ մեր ընթերցողք ալ նոյնպէս բարի օրինակ կ՚առնեն. եւ աս երկու դժբախտ յանդուգներուն պատմութիւնն իրենց զօրաւոր ու օգտակար առաջադրութիւններ ընել կուտայ, եւ իրենց սրտին մէջ կը տնկէ Աստուծոյ սէրը մեր բարւոյն համար մեզի տուած տուրք պատուիրանաց յարգութիւնը ։

Օղարով ոչ իր որդւոյն եւ ոչ ալ եղբօրորդւոյն յանդիմանութիւն տուաւ ։ Իրեն

պատճառած տրտմութեան համար՝ իրենց վշտերովը բաւական պատժուած էին ։ Ա-լեքսի հօրը կամացը համաձայնելով՝ անմիջա-պէս ինք զինքը վաճառականութեան տուաւ ու սկսաւ հօրը օգնել . եւ այսպէս անոր ու-րախութիւն ու մխիթարութիւն կը պատ-ճառէր ։ Նաւականն կենաց՝ դժբախտ մասին փորձն առած ըլլալով, իր ծննդեան քաղա-քին մէջ հանգիստ ու հանդարտ բնակե-լը՝ նոյնէն աւելի ընտրեց ։ Իսկ Իվան գլուխն եկած վտանգներով աւելի եւս ինք զինքն որոշեց եւ աւելի միրա առնելով՝ հօր-եղբօրը հաւանութեամբը պատերազմական նաւու մը մէջ ծառայութեան մտաւ ու քաջ նաւապետ եղաւ ։

Իսկ նաւուղիղն իր երկայն ընթացից այնչափ աշխատութիւններէն ու վտանգ-ներէն այնպէս հիւծած էր՝ որ ալ ծովու վրայ չէր կրնար ծառայել ։ Շատ տարի ալ ապրեցաւ, եւ թէ ինք ու թէ իր ընտա-նիքը միշտ Օգոստոսին առատաձեռնութիւնը կը վայելէին ։

